# ՄԽԻԹԱՐԱՅ

# ԲԺՇԿԱՊԵՏԻ ՀԵՐԱՑՒՈՅ

## ՋԵՐՄԱՆՑ

# ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ

ԱՐԴԵԱՄԲՔ ԵՒ ԾԱԽԻՒՔ

ԱԶՆՈՒԱԿԱՆ ԿԱՐԱՊԵՏ ՉԷԼԷՊԻՒ ՏԻՒԶԵԱՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

---

ՅԱՄԻ 1832 ՌՄՁԱ

# ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

Որպէս զյոլովագունից 'ի մերոց արանց բարգաւաճելոց յազգս ազգս առաքինութեանց և 'ի պերճ գիտութիւնս զարգացելոց, նոյն և զմատենագիրս Մխիթարայ որ 'ի Հեր աւանէ՝ զհանգամանս կենացն գաղացաւ 'ի մէնջ վրիպագործ ժամանակս ։ Այլ եթէ բարեկամք առն քաջ երաշխաւորք լիցին վարուց նորա, ո՞ այլ ոք քան զՄխիթարս մեր գովելի հանդիսացի յասպարէզ առաքինութեանց ։ Զի առ ժամանակօք մեծաց Կաթողիկոսացն Ներսիսեանց և Գրիգորեանց կեցեալ սորա, և ընդ նոսա զոլոր սիրոյ բարեկամութեան պնդեալ, զկշիռ փոխարինին առաքինութեանց իւրոց և զիմաստասէր բարոյիցն ընկալաւ զանկեղծ սէր նոցա ։ Որոց կամեցեալ իսկ թողուլ յետնոցս անջինջ արձանագիր զսիրոյ իւրեանց և ըղձարանաց առ այնպիսի այր մեծարոյ, առաջինն զչքնաղ քերդուածն իւր ՅԱՂԱԳՍ ԵՐԿՆԻՑ ԵՒ ԶԱՐԴՈՒՑ ՆՈՐԱ ընծայեաց սմին, ընդ բժշկական ճարտարութեանն և զաստեղագիտութէ ախորժակս նորա դրօշմելով 'ի գլուխ քերդուածին ։ Իսկ երկրորդն, զի մի անյիշատակ եղիցի յաշխարհէ այնն ծայրացեալ յու-

մունս իւրոյ ժամանակին , բռնադատեաց զնա յայս երկասիրութե · որով և ոչ ինքն միայն հայրապետին դիւրանսաց լսողութեն նորա և հայրենասէր բարուցն գտաւ երախտապարտ , այլ և զմեզ զլխովլին ինքեան և քաջի մատենագրիս կալաւ երախտապարտս :

Օ բժշկական ճարտարութե օրինակագրիս թուղումք հմտացելոցն արուեստին զճշգրիտ քննութեն բերել 'ի վերայ զշատաւմճիռ · բայց մեզ ընդ անհնարին մատենայած հմտութե առնն զարմանալ է , որ 'ի վեր և 'ի վայր 'ի մատենին գտանեմք յիշատակեալ զճարտարս արուեստին որ 'ի համազգեաց , որ 'ի Յունաց , որ յարաբացւոց և որ 'ի Պարսից · յոր և օժանդակ լեալ է նմին կատարեալ վարժութե նորա 'ի լեզուս ազգացն այնոցիկ , և անխոնջ փոյթ ընթերցասիրութեանն :

Այլ թէ միանգամ զմտաւ ածեմք թէ յորում ժամանակի բարգաւաճէր այսպէս Մխիթար , մեծ ևս զարմանաց գտանեմք պատճառս : Յայնմ ժամու , յորում բնաւ Եւրոպա , որ այսօր արփիափայլ ջահէ 'ի պայծառութե համօրէն պերճ գիտութեց , և ամ քաղաքական առաւելութեքն ափշեցուցանէ զտեսողս , ծածկեալ կայր հեգաբար 'ի խաւար խոր տգիտութե , առ մեզ չէին թերացեալ ճաճանչք լուսապայծառ գիտութեց : Այլ արդ , աւաղ , փոխանակ փառաց մերոց չգիտեմ զինչ զմեր 'ի յայտ ածեցեն անշէջ լոյս հարցն մերոց : Բայց և այսու ոչ եթէ պարտ ինչ իցէ սրտաբեկ լքանել հարազատ որդւոցս · զի եթէ որ բնաւ խաւարեալն էին , այնչափ պայծառացան՝ զի ծագումն լուսոյ նոցա առ հասարակ ընդտիեզերս ցոլանայ , որչափ ևս դիւրագոյն իցէ զառ-

կայծեալ լուսն 'ի մեզ, կամ զհուրն ծածկեալ ընդ զազախով բազմարկած ժամանակին արծարծանել վերստին. եթէ միայն հին փոյթն նորոգեսցի 'ի մեզ: Այլ սէր հայրենի ձգեաց զմեզ 'ի բանս գուցէ անպարտ, արտաքոյ տեղւոյս և ժամանակի:

Արդ մատենագիրս լաւ համարեցաւ զաշխարհիկ խօսից ժամանակին զոճոյն 'ի գործ արկանել 'ի գիրս յայս, զի դիւրաւ լուր ընթերցողացն յարդարեսցէ զբանսն: Այլ զի յայնմ ժամու բազում այլազգացի խօսք մուտ գտեալ էին առ ռամկին, վասն այսորիկ յաճախ գտանին 'ի մատենիս նորամուտ բանք. բայց սակայն և ոչ սակաւ նախնի հայաստան խօսից նշողքն 'ի սմա վսեմութիւք:

Իսկ պահպանութիւն սորա, և անվթար առ մեզ ժամանելոյ շնորհապարտս գտանիմք, որպէս և յայլումն բազումս, ազգին զաղղիացւոց: Ի յամին 1824 գտաւ գրչագիր օրինակ սորա նօտարացի գրով 'ի մատենադարանին արքունի 'ի Փարիզ, առանց ինչ յիշատակարանի և կամ թուականի ինչ գրչութեան. այլ 'ի գրոցն տարազոյ և յորակէ թղթոյն կարծի գրեալ յեօթնևտասներորդի դարու:

Այս միայն գրչագիր էր առաջնորդ մեզ յայսմ տպագրութեան. զորոյ զյայտնի թուեցեալ մեզ վրիպանսն ոչ ինչ խղճեցաք ուղղել առանց ինչ ազդ առնելոյ. իսկ յորս կարծիք ինչ 'ի մեզ ծնանէին, ըստ մերոյ սովորութեան հաւատարմաբար 'ի ստորեւս իջեցն նշանակեցաք. յորս թերևս ուրեք եղև մեզ առաւել քան զարժանն վարել խղճմտութեան. սակայն թուի թէ ոչ այնչափ ինչ առաւել խղճմտութիւն յայսպիսի սխալեմք, որպէս սովոր է վրիպեցուցանել ձեռներէց

համարձակութիւն․ զոր և խրատեցաք յերկար դեգերմանացս 'ի մատեանս երիցագունից։ Այլ թէ երբեք ըստ անհրաժեշտ պայմանի մարդկային տկարութեան վրիպեալ իցէ յաչաց մերոց ինչ 'ի կարևորաց, դիւրագիւտ ներողութեան յուսամք հանդիպել։

Իսկ այժմ փոյթ առն հայրենասիրի յորդորեցաւ տալ զսա ընդ հանուր յընթերցումն համազգեաց, զի և որդիք նախանձաւորք գտանիցին 'ի տիպ ճշգրիտ կերպարանաց իմաստասէր հարցն առաքինեաց ըստ իւրաքանչիւր չափու լինել պիտանի ազգին և պայծառացուցիչ․ որ այն իսկ խնդութիւն մեծ ազգասէր սրտի հոյակապ առնն և բարերարի, և մերոց քըրտանցս առաւելութիւն տրիտուր։

# ՄԽԻԹԱՐԱՅ ՀԵՐԱՑԻՈՅ

# ԲԺՇԿԱՐԱՆ

## ՎԱՍՆ [1] ԵՐԵՔ ԱԶԳ ՋԵՐՄԱՆՑՆ

Ես Մխիթար Հերացի տրուպս 'ի բժշկաց, որ 'ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան և բժշկական արուեստից, և վարժեցայ 'ի դպրութիւն արաբացւոց, Պարսից և Հելլենացւոց, տեսի յընթերցուածս՝ որ առ նոսա գրոցն, զի ունէին զարուեստ բժշկութեան լի և կատարեալ ըստ առաջին իմաստնոցն. այս ինքն զնախագիտութիւն, որ է իմաստ և վարդապետութիւն բժշկական արուեստից. և 'ի Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն և զիմաստ նախագիտութեան, այլ զստածումն միայն. և այս ոչ ըստ կարգի և լի, այլ համառօտ և ծաղկաքաղ աստի և անտի հաւաքեալ, յայլ և այլ գրչաց և մնաց այլայլած։ Կամեցայ ըստ իմոյ կարողութեանս առնել գիրքս զայս՝ միայն վասն երեք ազգ ջերմանցն համառօտ՝ նախագիտութեամբն և տառածմամբն։ Զբովանդակն որ վասն արուեստի բըժըշկութեանս իմաստութիւն՝ թողի. և զերեք ազգ ջերմանցս միայն հաւաքեցի, և թարգմանեցի 'ի հայ բառ։ Պատճառ ունելով այսմ աշխատութեան և զսէր և զյօժարութիւն սրբոյ և աստուածապատիւ կաթուղիկոսին Հայոց տն Գրիգորի, որ մակակոչի Տղայ։

[1] Յօրինակին այս մակագիր էր յառաջաբանին ,, Բժշկական անուանքն են՝ միայն վասն երեք ազգ ջերմանցն. արարեալ Մխիթարայ իմաստուն բժշկի, որ 'ի Հեր քաղաքէ ծննդեամբ. և վարժեալ իմաստութեամբն հելլենացոց, Հայոց, արաբացոց և Պարսից, օգնականութեամբն Այ ։ ''

Սա որ էր առաջնորդ յաթոռ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին Հայոց. զոր տեսի ամենայնիւ սիրող իմաստութեան և հմուտ։ Նա յաղագս այսորիկ յօժարեցի ՚ի պէտս և ՚ի յօգուտ սորա առնել զգիրքս զայս ՚ի հոռոմ և յարապիկ և ՚ի պարսիկ[1] գրենաց, ըստ իմոյ կարողութեանս և շնորհի՝ զոր ետ ինձ տէր գիտութեան լեզուաց և գրոց նոցա։

Սարգեցի և շարեցի ըստ չորից նիւթոց կարգի. զնախագիտութիւն և զստածումն նորա կարգի և բժշկութեան վասն երեք ազգ ջերմերուն միայն. զօրըռսայինն և զանօրըռոմն, զսուրն և զերկարօրեայն, զնսպայոցն և զամենօպայն. զսեռ նոցա և զտարբերութիւն, զտեսակ և զյատուկ զպատահումն, որք զկնի հիւանդութեանցն լինին։

Զի առին նախ բժշկական վարդապետքն զհինգ ձայն ներածութեանցն Պորփիւրի յաղս Արիստոտէլի իմաստասիրի, եղին հիմն և կանոնք բժշկական արուեստին. նմանապէս և մեք շարեցաք և հաստատեցաք ըստ կարգի հին և նոր վարդապետացն, և արարաք զգիրքս զայս, և անուանեցաք ՋԵՐՄԱՆՑ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ. զի սա մխիթարէ զբժիշկն ուսմամբ. իսկ զհիւանդն առողջութեամբ՝ ողորմութեամբ և օգնականութեամբ արարչագործին այ։ Նա արարի զսա գեղջուկ և արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամ ընթերցողաց, առ ՚ի յիշատակել զմեզ և խնդրել թողութիւն մեղաց ՚ի մարդասիրէն այ։

Թարգմանեցաւ և գրեցաւ գիրքս այս յամի հազարերորդի հարիւրերորդի ութսուներորդի չորրորդի տն մերոյ Յսի Քսի գալստեանն. յորում էր և թուականս Հայոց ՈԼԳ. ՚ի հայրապետութեան սրբազան կաթուղիկոսիս Հայոց տն Գրիգորի որդւոյ Վասիլ բարեպաշտ իշխանի պահլաւունւոյ, որ և պատճառն է գրոցս։

1 Յօրինակին կրկին անգամ գրեալ էր յարապին, և պակասէր ՚ի պարսին։

## ՑԱՆԿ Ի ԳՐՈՑՍ ՎԱՍՆ ՋԵՐՄԱՆՑ



1 Յօրինակին չարճառոտ ։

[1] Ցօրինակին յերիս գլուխս հատեալ էր այս մակագիր, որով և ցանկս ժամանէր 'ի ԽԶ գլուխ. այլ զի 'ի բուն մատենին 'ի մի գլուխ ժողովէ զամենայն մատենագիրն, պատշաճ Թուեցաւ և աստ 'ի մի ամփոփել։

# ՄԽԻԹԱՐԱՅ

## ՀԵՐԱՑԻՈՅ

# ՋԵՐՄԱՆՑ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ

---

## ԳԼՈՒԽ Ա.

*Հաւաքումն համառօտ և պատմութիւն նախագիտութե և ստածումն բժշկութե վասն երեք ազգ ջերմերոյն միայն ասացեալ։*

Պարտ [1] է ա̃մ մարդոյ որ զբժշկական արուեստս 'ի հոգս է առեալ, և ունիցի փոյթ բժշկութե զկատարեալն, որ քննէ աղէկ և իմանայ վասն ա̃մ ցեղ ջերմանցն գիտութե։ Նու զայն պատճառումն որ

1 Յօրինակին՝ գրիչն կամ այլ ոք 'ի հնագունից՝ 'ի սկիզբն բանիս յաւելլու իբրու յառաջաբան իմն զայս օրինակ. „'Ի բանից Մխիթարայ Հերացոյ իմաստուն և ճարտար բժշկի թարգմանեալ ստուգաբան և անսղալ. և ուսուցանէ օրինակօք եթէ զինչ է ջերմն, և որպէս լինի ջերմն. և զպատճառսն թէ ուստի՞ց ընծայի ջերմն։ Նոյնպէս և զնշանսն և զպատահմունսն, որք զկնի ջերմանն լինի. և ապա զստածումն և զբժշկելն, զամենն մէկ ուրիշ ուրիշ օգնականութբն նոյ ցուցանէ։ Նոյնպէս և զերակ մաճասային և զգիտութե նորա, և զտեսութե կարուրային և զքննութե նորա։ Այսպէս և զձեռնալուային գիտութեն. և զբուրհանն, զոր հոռոմք դատաստանի որ ասեն ընդ հիւանդարար նիւթն և ընդ բնութեն, որպէս ընդ երկու դատախազ. իսկ արտաքինք և պարսիկք բուրհան ասեն. և մեկնեն պատերազմի օր նոյնպէս ընդ հիւանդարար նիւթն և ընդ բնութիւնն. զի յայնժմ աւուր կամ յաղթէ հիւանդարար նիւթն բնութեն, նա վնաս գործէ. կամ յաղթէ բնութեն հիւանդարար նիւթոյն, և դուշակէ զառողջութիւնն. և զայլն որք ըստ կարգի են գլուխք եդեալ։ Եւ ուսուցանէ զչորս ժամանակսն, որով նախագէտ լինի բժիշկն զմահուն և զկենացն, ոչ միայն 'ի ջերմերն, այլ և յա̃մ ազգ ախտս հիւանդութեց։ Ուսուցանէ զբժիշկն եթէ քանի՞ դիմօք պարտ է ստածել և բժշկել զհիւանդն։ Սկիզբն առնէ և ասէ համառօտ և գեղջուկ բարբառով այսպէս. եթէ Պարտ է. '' և միահետ շարէ զբանս մատենագրին։

զօտար ջերմն ընծայեն՝ 'ի մարմնոյն 'ի զատ պահէ. և իւր ջանան առաւել 'ի ջերմերոյն բժշկութեանս առնէ, քան վասն այլ ազգ հիւանդութեանց ։ Եւ ոչ մի փոքր 'ի հիւանդութեանց դիպելոց. զի սակաւ հիւանդութիւնն, յորժամ անփոյթ լինի և յամէ, զօրացեալ բազմանայ և յաղթէ մարմնոյն ։

Արդ վասն ջերմանցն գիտութեան առաւել պէտ առնել արժան է յաղագս երից պատճառանաց ։ Իսկ առաջին պատճառն այն է՝ որ ջերմն քան զամ ցեղ հիւանդութիւն 'ի մարդիկ շատ հասանի. և այլ ինքն լինի պատճառ բազում և այլ ցեղ հիւանդութեանց ։ Եւ երկրորդ պատճառն այն է՝ որ ամ ցեղ հիւանդութի 'ի յանդամ մի լինի կամ 'ի յերկուս, կամ 'ի սակաւ մասունս մարմնոյն գործեն զցաւն. իսկ ջերմն բովանդակ ընդ ամ մասունս մարմնոյն լինի ։ Իսկ երրորդ պատճառն այն է՝ որ ջերմանն սկիզբն 'ի սրտէն լինի, և 'ի սրտէն սփռի 'ի ձեռն շնչաւոր երակացն բովանդակ ընդ ամ մարմինն ։ Ապա պարտ է բժշկաց քննել և իմանալ աղէկ, և 'ի միտ առնուլ վասն երեք ազգ ջերմերոյն նախագիտութեան. նոյնպէս և զիւրեանց սատածումն և զբժշկութիւն իմանալ, և անսղալ սատածել և բժշկել ։

# ԳԼՈՒԽ Բ.

*Վասն թէ զինչ է ջերմն և զինչ է սահման նորա, և որպէս լինի ջերմն և ուստից ընծայի ։*

Պարտ է գիտենալ որ ջերմն օտար տաքութիւն է զատ 'ի բնութէն, խառնեալ ընդ բնաւորական տաքութիւնն՝ որ 'ի սիրտն ։ Առնէ սկիզբն 'ի սրտէն, և սփռի 'ի ձեռն շնչաւոր երակացն ընդ ա՟մ մարմինն, որպէս այլ յառաջն ասացաք, և խափանէ զբնութէ գործերն ։ Եւ են բնութէ գործերն այսոքիկ. ցանկութի կերակրոյն և ըմպելոյն, կանգնելն և գնալն և արթնութին, յառնելն և նստելն և մերձաւորութին, և այլ ա՟մ բնութէ գործն որ 'ի մեզ են ։ Որպէս և ասացաք զբնութեան գործերն՝ որ խափանին 'ի ջերմերոյն և 'ի յայլ ա՟մ ցեղ հիւանդութենէ, սակայն ոչ կատարեալ խափանումն, այլ մասնական ինչ. զի մահուամբ միայն խափանին բնութեան գործերն կատարեալ ։

Այժմ պատմեմք զորպիսութի ջերմանն և զիւր գիտութին, որ երեք ազգ են ։ Եւ ասացին իմաստասէրքն թէ վասն այնորիկ եղեն երեք ազգ, որ բովանդակ յամենայն մարմնոյն սկսանի. և մարմինք մարդկան ընդ երեք բաժանին ։ Առաջին բաժինն երեք շունչ են, զոր երեք հոգի անուանեն, որ են հոգի բնութէ, իւր տեղի և բնակարան լերդն է. և հոգի կենդանութէ, իւր տեղի և բնակարան սիրտն է. և հոգի զգայութէ, իւր տեղի և բնակարան գլխոյն ուղեղի փորոքն է ։

Եւ երկրորդ բաժինն գիջութենէրն, զոր հոռոմն էլխ անուանէ, և տաճիկն խլթ[1], որ թարգմանի չորս նիւթ կամ չորս ենթակայ, որ են արիւն և մաղձն, պալղամն և սավտայն ։

Իսկ երրորդ բաժինն չոր և պինդ անդամունքն են, որք են ոսկերքն և ջիլքն, կապքն և լարքն, կակուղ

1 'Ի լուսանցսն խլթ ։

և խռձատամն ոսկերքն, զերդ զխձին գլուխն, և կողերուն ծայրքն, և խռշակին հլունքն, և այլ զոր նման է սոցա ։

Իսկ այն ազգ ջերմն, որ պատճառն յերեք հոգիքն լինի, միօրեայ ասեն. զի իւր թուականն մի օր է ։ Եւ զչորս ժամանակսն հիւանդութեանն, որ են սկիզբն, և յաւելուլն, և կատարելն 'ի լմանն որ դադարի միացեալ, և պակասելն օր ըստ օրէ, և զիւր բուրհանն՝ 'ի նոյն օրն առնէ, և արձակի 'ի քսանուչորս պահն ։

Իսկ այն ազգ ջերմն որ պատճառքն գիճութիքն լինին, որք են չորս նիւթն, բորբոսայինն ասեն. զի յորժամ բորբոսն 'ի ներքս 'ի յերակսն լինի 'ի յարեն՝ 'ի յար և 'ի սուր և այրեցող ջերմանն, հումայի մուհրիղայ կասեն. ապա թէ դուրս յերակացն բորբոսին, այն են նոպայով ջերմերն ։

Իսկ այն ազգ ջերմն որ պատճառն չոր և պինտ անդամունքն լինին, հոռոմն ըխեկծ ասէ, և տաճիկն դէկ, որ թարգմանի հալեմաշ. և այլ ոմանք սեղմ ասեն. և հայք բարակ ասեն ։ Եւ ինքն երեք ցեղ լինի մի քան զմի դժար, և յետինն մահարար. և հատատին նոքա յերեք բնաւորական գիճութիւնքն. զի մարմինք մարդկան չորս բնաւորական գիճութիք ունին. մէկն չորս նիւթն են, և զերեքն այլ 'ի յետոյ պատմեցից օգնականութեամբն այ ։

Այլ Գաղիանոս վասն երեք ազգ ջերմերոյն գիրքն, յառաջին մակալաթն՝ որ է ճառ՝ ասէ, եթէ աղէկ իմացիր և 'ի միտ առ, յորժամ առնուն ջերմն ջուր և արկանեն 'ի հով պուտուկ, անպատճառ տաքնայ հով պուտուկն 'ի ջերմ ջրէն. ապա թէ առնուն հով ջուր և արկանեն 'ի տաք պտուկ, նոյնպէս տաքնայ հով ջուրն 'ի տաք պուտուկէն. օրինակ է պուտուկն չոր և պինտ անդամոցն. իսկ ջուրն գիճութեանցն, որք են չորս նիւթքն ։ Յորժամ տաքնայ չոր և պինտ անդամունքն, տաքցնեն զչորս նիւթն, որ է արիւնն և մաղձն և պալղամն և սավտայն. նոյնպէս թէ տաքնայ չորս նիւթն, տաքցնեն զչոր և զպինտ անդամունքն ։

Այլ այն ցեղ ջերմն որ 'ի յերեք հոգիքն լինին, չունի օրինակ որ 'ի յինքն 'ի նման լինի ըմ դիմօք. բայց վասն այնոր որ երևնայ և ընդ գիտութէ անկա-

նի [1], ա՛ռ 'ի միտ օրինակ զդարբնի փուքսն, որ երբ 'ի յինքն քաշէ զքնիկ տաք օդն, անպատճառ տաքնայ փուքսն 'ի յայն տաք օդոյն ։ Նոյն օրինակ խիստ 'ի նման յայտ իրացդ 'ի բնութեն՝ եթէ 'ի միտ առնուս աղէկ և գիտանաս որ երբ 'ի յայն փուքսն գիճութին լինի արգելած, մանաւանդ տեսանես մոզքդ որ ճանապարհն մտանելոյն և ելանելոյն նեղ լինին, և չկարէ անցանել ընդ ինքն այն արգիլած գիճութիքն որ 'ի փուքն կենայ, բայց հողմն անցանի ։ Այս օրինակս խիստ նման է մարդկային բնութեն գործոյն. զի օդոյն էութին որ խառնեալ է ընդ արեանն և ընդ ամենայն շնչաւոր երակսն, նոյնպէս և սիրտն, զինչ է պակաս քան զդարբնի փուքսն ։

Նոյն բժշկական վարդապետքն նմանեցուցին զմարմին մարդկան 'ի բաղանիսն. զի բաղանիքն յերեք իրոյ կատարի, որ են որմունքն, ջուրն և օդն. նոյնպէս և մարմինք մարդկան յերեք իրաց են շինեալ, մինն չոր և պինտ անդամունքն են, զոր այլ 'ի յառաջդ ասացաք. և երկրորդն գիճութեններն են, զորս չորս նիւթ անուանեն կամ չորս ենթակայ, որք են արիւնն և մաղձն, պալղամն և սաւտայն. և երրորդն երեք շունչ են, զոր երեք հոգի անուանեն. հոգի բնութեն, հոգի կենդանութեն, և հոգի զգայութեն ։

Նոյնպէս և ջերմն երեք ազգ են. մինն բնակի 'ի յերեք հոգիսն. և երկրորդն բնակի 'ի չորս նիւթն. և երրորդն բնակի 'ի չոր և 'ի պինտ անդամունսն. որպէս այլ 'ի յառաջդ ասացաք կարգաւ մի ըստ միոջէ ։ Նմանեցուցին իմաստասէրքն զբաղանեաց շինուածն 'ի չոր և 'ի պինտ յանդամունքն. իսկ զջուրն 'ի գիճութիքն, որք են չորս նիւթն. իսկ զօդն 'ի յերեք շունչն, զոր անուանեն երեք հոգի ։ Զի որպէս բաղանեացն այլ է շինուածն և այլ ջուրն և այլ օդն, բայց յորժամ մինն 'ի նոցանէ առաւել ջերմանայցեն՝ ջերմացուցանէ և զայլ ևս երկուսն. նոյն օրինակաւդ տես և զջերմն 'ի մարմինք մարդկան, և ընդ մարմնոյն շինուածոցն հետևի ջերմն. որպէս շինուածք մարմնոյ այլ և այլ են, նոյնպէս և ջերմն այլ և այլ լինի ։

1 Յօրինակին ընդ Գիտութիւն բժշկանի ։ Ա՛ռ 'ի միտ ։

Այս էր զոր ասացաք կարճառօտ ջերմերոյն զորպիսութի̃ օգնականութեամբն ա̃յ ։

## Վասն թէ ուստի՛ց ընծայի ջերմն ։

Արդ սկիզբն առնեմ օգնականութեա̃մբն ա̃յ և ասեմ կարճառօտ եթէ ուստից ընծայի ջերմն ։ Ընծայի ջերմն յարտաքուստ պատճառանաց․ երբեմն ներքսէ ։ Եւ արտաքուստ պատճառն լինի, զերդ առաւել 'ի ջերմ օդոց, կամ խիստ ցրտոյ, կամ լուանալն ծծմբի ջրով, կամ շպլեղի ջրով, և այլ ո̃մ ցեղ փոթոթային ջուր որ նման են նոցա ։ Իսկ ցներքսէ պատճառն լինի, որպէս տրտմելն կամ 'ի սիրտ ելնելն կամ սրգալն կամ հոգալն կամ ամաչելն կամ ահ և երկեղն կամ ցանկութիւն կամ նախանձն, և այլ ո̃մ ինչ որ նման է նոցա ։ Կամ 'ի տաք կերակրոց և 'ի տաք ըմպելեաց, զոր յաճախեն մարդիկ ։ Եւ այս քաւական է կարճառօտ եթէ ուստից ընծայի ջերմն ։

Այժմ սկիզբն առնեմք օգնականութեամբն ա̃յ և ասեմք զերեք ազգ ջերմերն ուրիշ ուրիշ․ և սկսանիմք 'ի միօրեայ ջերմանէն, զի ինքն շատ լինի, և իւր պատճառն դիւրին է, նոյնպէս և իւր ստածումն և բժշկելն դիւրին լինի․ և այլ որ ինքն լինի պատճառ այլ ևս երկու ջերմերոյն ։

## ԳԼՈՒԽ Գ.

Պատմութիւն և նախագիտութիւն միօրեայ ջերմանն, որ կոչի էֆիմերոս։

ԱՅՆ ազգ ջերմն որ կոչի էֆիմերոս, և տաճիկն հումմայէ եաւմիա ասէ, որ թարգմանի միօրեայ ջերմն, զայս անուանս առին ՚ի ծովային կենդանւոյ միոյ։ Վասնզի ասացին բնութեանց իմաստասէրքն, եթէ կենդանի մի կայ ՚ի ծովն, ՚ի յորում աւուր ծնանի՝ ՚ի նմին աւուր մեռանի. և տեսին բժշկական վարդապետքն զայս ջերմանս զմնալն մի օր, որ է քսանևչորս ժամ, վասն այնորիկ անուանեցին զսա այն կենդանւոյն անուամբն, որ է էֆիմերոս։

## ԳԼՈՒԽ Դ.

Վասն միօրեայ ջերմանն որ պատճառան ՚ի տաք կերակրոց ընծայի։

ՄԻՕՐԵԱՅ ջերմն որ պատճառան ՚ի տաք կերակրոց ընծայի. գիտացիր որ այս պատճառս շատ գլխացաւութիւն բերէ, և բերանոյն չորութիւն և ծարաւ. երեսացն և աչացն գոյնն կարմիր լինի. զի գլուխն ՚ի լի լինի տաք պուխարով, որ է տաք շոգիք։ Ապա պատեհ է տալ մուզ նռան ջուր, և սրքնճուպին որ շաքարով լինի արարած, կամ աղոխի ջրով, կամ ճուլլապ հով ջրով, և արկ ՚ի վերայ գլխոյն ՚ի հով ձիթերոյն։

Իսկ այս հիւանդութիւս շուտ յաղթէ լերդին. զի այս ՚ի ջերմս շատք իմանան սակաւ տաքութի ՚ի լերդն. ապա երբ ջերմն թողու, պարտ է ըմպելիք տալ զոր օգտակար են լերդին, զերդ դդմի ջուրն, և տապաշիրի կուրմն նռան ջրով կամ սրքնճուպինով. և ըզկերակուրն պարկեշտ առնել, զերդ դդում և թախտ

և վլիտօն որ է ծմեռն, խիամրեն և կօղայեն մէջն, և այլ որ նման է այսոց ։

Եւ երբ Թողու ջերմն, և լերդն տաքութեն նայ, ապա 'ի վերայ լերդին սանտալն և վարդի կամ քաֆուրի սպեղանի դիր, պզրկատունի տերևին ջրովն և հնդխպէի ջրովն. և զայս զոր 'ի վերոյ ասացի 'ի ջերման խստութիւն 'ի բան տար, և հոտոտալ տուր 'ի վարդն և 'ի մանուշակն և 'ի նոնոֆարն ։ Եւ այս բաւական է ստածունն միօրեայ ջերմանն որ պատճառն 'ի տաք կերակրոց լինի. և օգտակար է Թէ ա̃ծ կամի ։

## ԳԼՈՒԽ Ե.

Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն 'ի տաք արևէ լինի, կամ 'ի սամում օդէ և 'ի տաք անդեաց ։

ԻՍԿ ուամ այս ջերմն հանդիպի, գլուխն տաքնայ և կաշին գլխոյն. և գլուխն այլ աւելի տաքութի լինի քան յայլ մարմինն. զի այս ջերմն 'ի գլուխն աւելի հասանի քան 'ի սիրտն ։ Այս ցաւուս Թէզով ճար արա, Թէ չէ սքԹայ կանէ ։

Պատեհ է զայս հիւանդս 'ի հով տուն պահել, յոր ցանած լինի հով ջուր. և 'ի հովայեն ծաղկունքն հոտոտալ տալ. և այլ խնծորի ջուր և մնի ջուր և վարդի ջուր և սանտալ և քաֆուր. զայս ա̃մ յիրար խառնէ և հոտոտալ տուր ։ Եւ երբ խաղղի ջերմն, արկ 'ի վերայ գլխոյն եղկ ջուր, յոր եփած լինի չոր մանուշակն և վարդ և բաբունիճ, եղարկեալ ած 'ի վերայ գլխոյն մանուշակի ձէԹ և լիլուփարի ձէԹ, վարդի ջուր. և պատրաստ կալ յա̃մ 'ի տաք և 'ի չաբայեն իրաց. օգտակար է կամօքն ա̃յ ։

Եհաննայ ասէ 'ի նոյն պատճառքդ և 'ի նոյն նըշանքդ, եԹէ երբ մարմինոյն խառնուածքն տաքնայ 'ի տաք օդէ կամ 'ի տաք արևէ կամ 'ի տաք բաղանեաց, իւր նշանն այն է՝ որ մարմինն և իւր շօշափե-

լեզուն տաք լինի, և գլուխն ցաւի, երեսացն գոյնն կարմիր լինի, և մաճասին երակն բարակ և շուտ լինի: Ապա դեղ զայս արա. առ սակաւմն քացախ և վարդի ջուր և վարդի ձէթ, յիրար խառնէ և զգլուխն այնու օծանէ. և առ քթան կտաւ և 'ի դեղդ թաց, և 'ի վերայ գլխոյն դիր. օգտակար է: Եւ երբ ջերմն 'ի վճար գայ, 'ի բաղանիս մտո, և զգլուխն այս ջրովս ծեփէ. զի փորձով օգտակար է:

Նշանք ջրին այս է. առ մանուշակ և լիլուֆար և պապունիճ, յամէն մէկէ մասն մի. զայս ամ՟ անուշ ջրով եփէ՝ մինչև ջուրն զդեղերուն ուժն յինքն առնու. ապա 'ի բաղանիս մտո, և այս ջրովս ծեփէ, և յամ՟ 'ի տաք իրաց պատրաստ կալ, օգտակար է:

Աստուածային որդին ասէ, թէ որ 'ի բաղանիսն ըզմարմինն տաք ջրով լուանայ, և երբ 'ի բաղանեցն ելանէ, գարեջուր խմէ իսպիտակ շաքարով, և կարմիր մաշի մուզաւարայ ուտէ նշի ձիթով, կամ նուան մուզաւարայ դդմի և նշի ձիթով, և յետ կերակրոյն 'ի քուն լինի: Ապա եթէ առնու վարդի ձէթ, ձիւնով կամ պաղով հովացնէ, և 'ի վերայ գլխոյն դնէ, նոյնպէս և զկուրծսն իւրոյն օծանէ: Եւ ջուր զոր խմէ, հով թող խմէ. ապա թէ 'ի բաղանիսն եղկ ջրով աւազան մտէ և շուտ ելանէ, խիստ օգտակար է. մանաւանդ թէ զմարմինն վարդի ձիթով և մանուշակի ձիթով հովցուցած օծանէ, և 'ի տաք կերակրոց պատրաստ կենայ, 'ի հով և 'ի գիճային կերակուրքն յարենայ, և ամենևին 'ի դատմանէ պատրաստէ, և զմարմինն հանգիստ պահէ. և այս բաւական է և օգտակար օգնութեանն այ՟:

## ԳԼՈՒԽ Դ.

Վասն միօրեայ ջերմանն որ պատճառան 'ի ցրտոյ լինի ։

ԻՍԿ այս ջերմն որ ընծայի 'ի խիստ ցրտոյ, ցամաքեցնէ զմարմինն, և խիստ չորացնէ. և այս ջերմանս տէրն 'ի գլուխն ծանրութիւն իմանայ, և իւր մաճասունն երակն փոքր և 'ի յար լինի, և գոյլն գոյնն դէպ 'ի սպիտակ լինի. զի ցուրտն 'ի գոյլն եփելոյ տեղին լենի հասել. և երեսացն գոյնն չիլինի կարմիր, մանաւանդ դէպ 'ի սպիտակն լինի. ապա աստ չէ պարտ շտապել, և ձիթերոցն զնորա գլուխն և զմարմինն օծանել. քայլել յետ այն՝ որ խաղաղել լինի ջերմն. բայց զգլուխն 'ի վերայ այս շոգւոյս [1] ունել պարտ է. ոռ. մարզանկուշ և բաբունիճ և նամամ. զայս զամէնս եփէ ջրով, և զգլուխն 'ի վերայ շոգւոյն կալ ։ Բայց յորժամ խաղաղի ջերմն, ապա 'ի բաղանիս մտց, և տես որ չօծանես զմարմինն ձիթով, որ չխցկի զաղտ շնչահանքն, ձիթէն ոլորկութեամբն չիբռնես. և երբ քրտնի, ապա օծէ զմարմինն խիրի ձիթով, և մարձէ աղէկ. կամ օծնէ կասլի ձիթով կամ բաբունիճի ձիթով, կամ մէկ մի 'ի յայն ձիթերոյն որ բանան զգաղտ շնչահանքն. և ապա մտց յաւազան որ ջուրն քաղցր լինի և եղկ, և յամեցո պահ մի ։ Բայց տես աղէկ որ չխլատուժի հիւանդն ։

Եւ երբ ելանէ 'ի բաղանեացն, սակաւ մի համբերէ, և ապա տուր կերակուր խաշոյ՝ որ յուլոյ մնէ լինի զուգած, կամ գէր հաւու ձագ մատղաշ. և տուր ըմպելոյ անուշահոտ գինի, կամ այլ ըմպելի որ զգինւոյ գործն կարէ առնել. և հանդերձով և ծածկելով տաք կալ զինքն, և հոտոտալ տուր 'ի յանուշահոտ ծաղկունքն, զերդ խիրին և նռճէսն և մարզանկուշն և թուրինճն. եղկալէ [2], օգտակար է օգնութեամբն այ ։

Պաղիանոս ասէ 'ի նոյն պատճառք և 'ի նոյն նըշանք, երբ խիստ ցուրտն յաղթէ մարմնոյն, հանէ

1 Յօրինակին շոգւոյս. և այլ բաղում ուրեք ։ 2 Յօրինակին Էկղալէ ։

զմարմնոյն խառնուածքն 'ի միջավայր չափաւորութէ. և այս լինի 'ի ցուրտ օդէ, կամ 'ի ցուրտ ջրոյ լուանալոյ զմարմինն: Եւ իւր նշանն այս է՝ որ մարմնոյն կաշին խոշոր լինի, և տաքութիւն 'ի մարմնոյն շօշափելիքն պակաս լինի, և մաճասին երակն շոյտ լինի, և լինի որ գոյն սպիտակ գայ:

Եւ իւր ստածումն այն է՝ որ զմարմինն աճրուել տաս մինչև ջերմանան սրութիւն խաղաղի. ապա 'ի բաղանիս մտէ որ քրտնէ. և առնու խիրի ձէթ և պապունիճի ձէթ, և զմարմինն աղէկ օծանէ. և յետ այնոր զեղկ ջուրն 'ի վերայ մարմնոյն չափէ, և ապա սաւանով ծածկէ և 'ի դուրս գայ, և պառկելով հանգչի: Յետ այնոր կերակուր թեթև և պարկեշտ կերակրի, զերդ հաւու ձագ որ պարկեշտ համեմով եփած լինի. տուռայճ և թորու, որ է ափասխանոս, և այլ զոր նման են սոցա. և ըմպելոյ[1] պարզ և անուշահոտ գինի տուր: Ապա թէ չօգտէ, զնոյն ստածումն դարձեալ արա. օգտակար է աստուծով:

'Ի նոյն պատճառ և 'ի նոյն նշանքդ Մասարճուայն ասէ, եթէ իւր առաջի ստածումն այն է, որ տաք հանդերձով զմարմինն աղէկ ծածկէ, մինչև մարմինն աղէկ քրտնի. ապա 'ի բաղանիս մտէ, և զմարմինն տաք ջրերով լուանայ. ապա թէ առնուս մարզանկուշ և սամիթ և սիսամբար, ջրով եփես, և զմարմինն եղկացնելով[2] լուանաս, շատ օգտակար է: Եւ երբ 'ի բաղանեացն ելանէ, առ սամթի ձէթ և խիրի ձէթ կամ պապունիճի ձէթ, և զգլուխն օծանէ, շատ օգտակար է: Եւ երբ 'ի բաղանեացն ելանէ և 'ի անուշահոտ իրվլին հոտոտայ, և ըմպելին սպիտակ և անուշահամ գինի ըմպէ, օգտակար է:

Ապա եթէ պատճառն ցուրտ ջրոյն լուանալոյն լինի, իւր ստածումն այն է՝ որ 'ի տաք ջուրն աւազանն մտանէ. և յորժամ ելանէ, զմարմինն աղէկ ծածկէ, և 'ի քուն լինի որ քրտնի. և զմարմինն տաք ձիթերով աղէկ օծանէ, և 'ի հովայէն կերակրոյ պատրաստ կենայ. և այդ բաւական է, և օգտակար է կամօքն այ:

1 Օրինակին ըմպելոյ անուշահոտ, պարզ և: 2 Օրինակին եղկացնելով.

## ԳԼՈՒԽ Ե.

Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն ՚ի փոթոթ ջրոյ լուանալոյն լինի:

Այս ջերմն լինի յորժամ ՚ի մարդն լուանվիլ ծծմբի ջրով, և իւր կաշին խիստ չորանայ, աւելի քան զայն որ պատճառն ՚ի ցրտոյ լինի: Այնոր եղև նորա մարմնոյն չորութիւն, որ բնական մարմնոյն տաքութիւն փախեալ է ՚ի ցրտոյն և ՚ի ներքս հաւաքեալ: Իսկ սորա կաշուն չորութիւնն վասն այնոր եղև, որ գործեցաւ տրտպելով, զերդ զգործած կաշին գխտորով կամ նուան կեղևով. և երբ զձեռդ ՚ի վերայ մարմնոյն դընես, մինչև շաղնայ, ապա յարձակի և բացւի գաղտ շնչահանքն, և ելանէ իւրմէն մասն ինչ շոգի, զոր աղգեցաւ ջուրն՝ իւր տտպայորութեամբն զգաղտ շնչահանքն խցկելով: Եւ իւր երակն ՚ի թաշմնուճի նման լինի, և քան զնոցա երակն՝ որ պատճառն ՚ի ցրտոյ լինի, այլ փոքր և այլ սուր լինի ՚ի փոթոթային ջրոյն խիստ տրտպելոյն [1]. և իւր գոզոյն գոյնն սպիտակ լինի և նօսր:

Ապա թէ ասէք, թէ էր լինի մաճասն փոքր և սուր, կամ գոզին գոյնն սպիտակ. մանաւանդ պատեհ էր որ մաճասին երակն մեծ լինէր և լայն. և գոզին գոյնն խիստ դեղին և եփած, զի տաքութիւն ՚ի ներքս հաւաքեցաւ և վառեաց զջերմն: Տամք այնպիսուն պատասխանի այսպէս. եթէ մաճասին երակն վասն երկու պատճառաց լինի փոքր և սուր. մէկն պատճառն այն է՝ որ ներքսի անդամունքն որ զմաճասին երակն այրնեն տետպինտ ՚ի դրուց անդամոցն տետպելովն. և երկրորդ պատճառն այն է՝ որ բնական տաքութիւն ՚ի գաղտ շնչահանացն ՚ի խցկելոյն ՚ի ներքս լինի արգելած, և չունի տեղի որ ընդարձակի: Ապա արգիլը բնութիւն, ՚ի ներքս հաւաքի և չկարէ սփռել ըստ սովորութեան իւրոյ:

Նոյնպէս և վասն գոզին սպիտակութեանն երկու

[1] Յօրինակին տտպելոյն:

պատճառք են . մին այն է՝ որ բնութին արգիլեցաւ 'ի շոգերոյն 'ի ներքս արգիլելոյն , նա բնութին զբաղեցաւ ընդ այն , և մնաց 'ի գողոյն եփելոյն և 'ի գոյնն տալոյն . և երկրորդ պատճառն այն է՝ որ երբ խցկին մարմնոյն գաղտ շնչահանքն ջրին փոթոթութեամբն , նա բազմանան գիճութիքն , և չգտանեն ելք ոչ քըրտամբք և ոչ դրուց օդոյն առնելովն . ապա շատանայ գողն և ոչ կարէ բնութին եփել և ոչ գոյնն տալ և ոչ գալ 'ի յայն տեղին . զի անպարապ էր 'ի շոգերոյն յարգիլմանէն և 'ի գողին շատութենէն : Օի զնոյն տեսանեմք 'ի ձմերանի աւուրքն երբ խիստ ցուրտ լինի , որ բնական տաքութին 'ի ներքս լինի արգիլած , 'ի խիստ ցրտուն կամ ընդ շնչոյն առնուլն լինի այդ : Ապա հիւանդանայ և ներքսի անդամունքն և զնոյնդ առնեն , որպէս ասացաք :

Այլ իշխան անդամունքն , զի սիրտն ևս և լեղին և լերդն վտանկին 'ի յայդ ջերմանդ 'ի գոլոշեացն , որ 'ի վեր ելանէ կամ 'ի ներքս հաւաքի , առաւել քան 'ի յայն ջերմանն՝ որ պատճառն 'ի ցրտոյ լինի . մանաւանդ ուղեղն , զի շոգիքն լինքն վերանան . ապա պատեհ է մեզ այսպէս այրնել իւր ստածումն և բժշկութին : Եւ իւր ստածումն և բժշկութի զերդ այն ջերմանն լինի , որ պատճառն 'ի ցրտոյ եղաւ :

Բայց այս ջերմանս տէրն պատեհ է որ 'ի բաղանեացն յօդն այլ աւելի յամէ քան զմէկայլ ցեղ ջերմանս տէրն որ 'ի ցրտոյ եղաւ . այլ 'ի յաւազանն թող չյամէ շատ , զի գիճութեներն արգիլած են 'ի ներքս 'ի մարմինն . և այլ որ չունի խնք կարիք 'ի յաւազանն քան զկաշոյն մեկնելն միայն , զոր 'ի յիրար զսպեցաւ 'ի փոթոթային ջրոյն : Իսկ չորային ձիթերովն մի օծաներ զմարմինն , և զկերակուրն պակաս տուր և պարկեշտ և միջավայր՝ որ է մհղթսիլ , որ են յաւելուածք . զի փատլան 'ի ներքս 'ի մարմինն արգիլած կան , որ չելանեն 'ի գլուխն և ահոկեն ուղղոյն : Եւ այդ կարճառօտս բաւական է :

Այլ Գաղիանոս ասէ 'ի նոյն պատճառքդ , եթէ այս ջերմանս պատճառն 'ի մարմնոյն գաղտ շնչահանացն լինի , կամ 'ի յաղտէ կամ յանլուացութենէ կամ 'ի յարեգականն 'ի յայրելոյ և կամ փոթոթայ-

ին ջրով լուանալոյ զմարմինն , կամ 'ի հաստ յաւելուածոց որ ընու զմարմինն ․ և իւր չարութիւն 'ի հոգի զգայութեան հասանի ․ և այս ջերմն ընծայի և յառաջ գայ ։ Նաև իւր նշանն այս է՝ որ մաղձասին երակն փոքր լինի , և քիրտն չլինի , և անդամունքն քաշած լինի ։ Նաև այնոր նշանն որ 'ի հաստ նիւթէ լինի այս է՝ որ ամէն մէկ 'ի չորից նիւթիցն զիւր նշաննին 'ի մարմինն ցուցանեն ․ զոր լինի այս որ յիշել կամիմք զչորս նիւթն , որք են արիւնն , պալղամն , մաղձն և սաւտայն ։

Իսկ այն պատճառն որ 'ի մարմնոյն լիութենէն լինի , իւր ստածումն այս է՝ որ յառաջ երակ առնու , և հետ այնոր 'ի բան տանել զայն իրվին՝ որ զմարմնոյն զգաղտ շնչահանքն բանան , և զերակն սրբեն , զերդ որքնձուպինն հնդամօք եղրդական ջրով , և բաղխանի ջրով խառնեալ խմելոյ տուր , և կերակուր փերձոկած գարի եփած տուր շաքարով ։ Ապա հետ այսոր տես եթէ ջերմն եփեցաւ և պակասեցաւ , եթէ ոչ ․ ապա թէ եփեցաւ , և իւր նշաննին երևեցաւ 'ի գօշն և 'ի մաղձասին երակն , դարձեալ զնոյն ստածումնդ 'ի բան տար ։

Նաև երբ իմանաս որ ջերմն 'ի վճար երեկ , զհիւանդն 'ի միջավար բաղանիս տար , որ ոչ տաք լինի և ոչ հով ։ Ապա առ բակլայի ալուր , և շուշան ծաղկի տակ , և զրևանդ ․ զայս ամէնս աղա՛ և մաղէ և ընդ մարմինն շփէ յուշիկ յուշիկ ։ Ապա թէ գիտենաս որ բաղանիսն ահոկեաց , և զիւր ահոկն ցուցանէ առ հիւանդն , շուտով հան 'ի բաղանեացն զհիւանդն ։

Նաև երբ գիտենաս որ հիւանդութեան գլուխքն չէ 'ի յայն իրացն որ բաղանիքն արձակէ , մի տաս կերակուր քան զփերձոկած գարին եփած նօսր , և ընկեա՛ 'ի յինքն կարօսի հունդ ։ Ապա յետ երկու աւուրն դարձեալ 'ի բաղանիս[1] մտո ․ և տես եթէ բաղանիքն օգտէ , գիտացիր որ հիւանդութեան գլուխքն կայ և արձակի , և ցուցանէ հիւանդին առողջութիւն և բարւոյ նշան ։

Ապա թէ դարձեալ բաղանիքն ահոկէ , գիտացիր

1 Յօրինակին յայդեալ չէ բաղանիս ։

որ հիւանդութեան գլուխքն կայ և արձակէ, բորբոսայլն է. ապա տես թէ որ և 'ի չորից նիւթոցն որն բորբոսեցաւ և զհիւանդութիւն արար. և զայն սրբէ 'ի մարմնոյն լուծմամբ, զերդ որ զկնի այսոր յիշել կամիմք զամէն մէկ ուրիշ ուրիշ օգնականութիւնն իւր :

## ԳԼՈՒԽ Ը.

Վասն միօրեայ ջերմանն որ պատահանն 'ի յերկք հոգւոյն զառամանէն լինի :

Որ է՝ հոգւի բնութեան և հոգւի կենդանութեան և հոգւի զգայութեան, և իւր նշանն այս է որ մարդն ինքն ընդ ինքն զրուցէ, ցնորի և թուագարի[1] : Եւ այլ լինի պատճառ հոգալն և տրտմելն, ահ և երկիւղն, և սիրտ եռնելն, և նախանձն և ցանկութիւն : Ապա պատեհ է հարցանել զհիւանդն և գիտենալ եթէ 'ի յայս պատճառանացդ, զոր յիշեցաք, յորո՞յ եղաւ ջերմն. և իմանաս զնշանքն զամէն մէկ ուրիշ ուրիշ, և բժշկէ :

Որ 'ի սիրտ է եռելն՝ անուշացո և հանդարտացո. և որ տրտմել է՝ սրտահեշտացո և ուրախացո. և որ հոգս ունի՝ փարատէ զհոգսն և անհոգացո. և որ վախեալ է և երկիւղ ունի՝ ամեհէ[2] և աներկիւղացո. և զամէն մէկի պատճառ իւր հակառակաւն բժշկէ : Զերդ որ մեծ իմաստասէրն Բուզարատ ասաց, եթէ հիւանդութիւն՝ իւր հակառակովքն բժշկի. իսկ ողջնութիւնքն՝ իւր նմաններովքն պահի : Այլ մեք ցուցանեմք զամէն մէկի բժշկութիւն ուրիշ ուրիշ օգնականութեամբն իւր :

1 Յօրինակին բռնափարէ : 2 Յօրինակին ամէհէ :

## ԳԼՈՒԽ Թ.

*Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն 'ի սիրտ եռնելոյն լինի։*

Իւր նշանն այն է որ երեսն կարմիր լինի, մէջ ընդ մէջ և ժամ ժամ դեղին դառնայ։ Կարմրութեան պատճառն արեանն եռալն է՝ որ շուրջ զսրտովն կայ. և արեանն եռալոյն պատճառն քինախնդիր լինելն է առ տրտմեցուցիչն։ Իսկ դեղնութե̃ պատճառն այն է՝ որ արիւնն 'ի ներքս հաւաքի 'ի սիրտն, ոխս և սուգ առնէ վասն քինախնդիր լինելոյն. և վասն այդր պատճառանացդ արիւնն վայր մի եռայ և 'ի դուրս գայ, և վայր մի 'ի ներքս հաւաքի։ Եւ իւր նշանն այս է՝ որ աչքն կարմրի և բարձրանայ. և մաճասին երակն մեծ լինի և պինտ. մեծութե̃ն պատճառն ուժն է որ աղէկ կայ. և պնդութե̃ն պատճառն որ բնական տաքութիւն 'ի դուրս ելանէ և պնդի։

Եւ իւր ստածումն այս է, որ ա̃մ դիմօք անուշացնես և խաղաղես զսիրտն. և 'ի գինւոյ պատրաստել, մանաւանդ 'ի հին գինւոյ, զի շուտ ելանէ 'ի վեր 'ի գլուխն. և նոյնպէս 'ի յամենայն ցեղ տաք կերակրոց պատրաստ պահել, որ չվառի բնական տաքութիւնն. և 'ի բաղանեաց պատրաստ կալ, որ չքորքսի յաւելուածքն 'ի մարմինն, որ է նիւթն. զկերակուրն հով և գիճային տուր։ Ապա թէ գինի տաս, սակաւ և շատ ջրախառն տուր. և գ̃քս զա̃մ ջանք վասն սրտին արա՝ որ անուշացնես զսիրտն և խաղաղեցնես զտրտմութի̃, խօսիւք և կատակով[1] և այլ ա̃մ դիմօք զբաղեցո. օգտակար է օգնականութեամբն ա̃յ։

Մարճուայն ասէ 'ի նոյն պատճառքդ, թէ այս ջերմն ընծայի 'ի հոգւոյն առաւել շարժելոյն ցներքսի մարմնոյն դէպ 'ի դուրս՝ վասն բնութե̃ զօրութե̃ն. զի գումարի 'ի ժամ տրտմութե̃ն։ Եւ իւր նշանն այս է, որ աչքն 'ի յիր բնական գոյնէն փոխի և 'ի դուրս բարձրանայ. և երեսացն գոյնն խիստ կարմրի. և լինի որ երեսն այտոյց առնու. և գոյն կարմիր դառնայ։

1 Ցօրինակին չոհաչով, եգաք ըստ լուսանցիցն։

Նաև իւր ստածումն այն է, որ եղկ ջրով՝ ի յաւազանն մտէ, և ձուլապ հով ջրով խմէ։ Ապա ա՛ռ սպիտակ սանտալ և քաֆուր և վարդի ջուր. զայս ամէնս յիրար խառնէ, հա՛ր աղէկ, և 'ի վերայ գլխոյն դիր։ Խմելու քաղցր և թթու նռան ջուր տուր. և կերակուր հով և գէձ տուր, նշի ձիթով և շաքարով. և ամենևին գինի մի տար. և զբաղեցո կատակով և ուրախարար խօսիւք. օգտակար է։

Մուհամատ Զաքարիայն ասէ. յորժամ 'ի յեղկ ջրոյն ելանէ 'ի հով ջուր նստի, և ընդ մտեղն՝ շուտով ելանէ, և զայլ ստածումնդ զոր ասացաք 'ի բանի պահէ. և հանապազ 'ի վարդի ջուրն և 'ի քաֆուրն հոտոտալ տուր, և 'ի յար ընդ քուն լինելն զբաղլ, զի օգտակար է։

Սահակ ասէ, թէ իւր ստածումն այն է՝ որ երբ 'ի տրտմութեն սրտութենէն համզչէ, 'ի բաղանիս մտո և 'ի կիսեղկ ջրով յաւազանն մտէ, եթէ ձմեռն լինի. ապա թէ ամառն լինի և օդն տաք, զմարմինն հով ջրով աղէկ լուա՛։ Նաև 'ի յանուշահոտն հոտոտայ, մանաւանդ եթէ հով և գէձ լինի, զերդ զմանուշակն և 'ի նինոֆարն և քաֆուրն, և այլ ամ իրք որ նման է նոցա։ Նաև խմելու ձուլլապ տուր սառամբ հովցուցած. և կերակուր հով և գիձային տուր, զերդ դդմով մուզաւարայն ազոխի ջրով և նշի ձիթով, և նռան մուզաւարայ, և մանտր ձուկն թաժայ՝ նշի ձիթով տապկած. և զայդ կերակուրդ յար 'ի բան պահէ. և 'ի տաք կերակրոց և 'ի չորային և 'ի գինւոյ պատրաստ կալ. և շատ քուն լինելն օգտակար է, եթէ ած կամի։

# ԳԼՈՒԽ Ժ.

Վասն միօրեայ ջերմանն որ պատճառաւ հոգւոյն և տրտմութեն լինի ։

Պարտ է գիտենալ որ հոգսն և տրտմութիւն յայլ և այլ տեղեաց լինի․ զի միօրեայ ջերմն՝ որ պատճառաւ ՚ի հոգալոյն լինի, այն ՚ի զգայական հոգւոյն ընծայի ։ Իսկ որ պատճառաւ ՚ի տրտմութենէ լինի, այն ՚ի հոգւոյ կենդանութենէն ընծայի․ թէպէտ և ընկերութիւն ունին ընդ իրար ։ Այլ հոգսն լինի երբեմն յահէ և երկիւղէ, և երբեմն յուրախութենէ և խնդալոյ ։ Ապա այն հոգսն որ ՚ի յահէ լինի և յերկիւղէ, իւր նշանն այս է՝ որ չորացնէ զմարմինն, և զգոյն կարմիր առնէ․ և այն որ զուրախութեն հոգայ և խնդալն, ոչ առնէ զայդ ամենևին զոր ասացաք ։

Եւ այլ ասեմ որ հոգսն երկու դէմս ունի․ մէկն որ հոգայ մարդն վասն բարւոյ և առաքինութեն, զերդ վասն հաւատոյ և ուսմանն և այլ ամ բարեգործութեն․ և մէկայլ հոգսն ամ իրօք առաջնոյդ հակառակ լինի, զերդ տգիտութեն և արձակութիւն սրտին յօժարութեն յամ ՚ի չար և ՚ի պիղծ իրս ։ Արդ այն հոգսն որ վասն բարւոյ լինի, զօրաւոր առնէ զհոգին, և տկարացնէ զմարմինն․ իսկ այն որ տգիտութեն զգեշն հոգայ, զօրացուցանէ զմարմինն, և տկարացուցանէ զհոգին ։

Եւ իւր ստածութիւն այս է, որ զամէն մէկ իւր հակառակովն բժշկես, որպէս մեծ իմաստասէրն Բուգարատ ասէ, թէ մտաւ վարժիլն հոգւոյն ահօկէ․ զի հոգին ընդ մարմինն խառն է միաւորեալ․ վասն այնոր է պատեհ հանգիստ առնել իւր դատելոյն ամ ցեղ դիւրեօք և ուրախութեմբ, որ դառնայ դարձեալ ՚ի յիւր որպիսութիւն ։ Եւ զայդ ցեղ հիւանդին ըզ մարմինն պարտ է գիձացնել, նստելով յաւազան ՚ի եղկ և ՚ի յանուշ ջուր․ ապա օծանել զմարմինն հով և գիձային ձիթերով, զերդ մանուշակի և լըլուփարի և դդմի ձէթ․ և կերակուր խաշուի ջուր տալ ՚ի թեթև մսէ և ՚ի գիձային, զերդ ուլի ոտներ և ար

տալայնի. և 'ի բանձարոց և 'ի մրգաց զհօճն և դիձայինն տալ. և ըմպելի՝ սպիտակ գինի և նօսր ընդ յոլով ջրոյ խառնել և տալ. և պատրաստ կալ յամ 'ի տաք և 'ի չորայինն իրաց, որ չփոխի 'ի բարակ ջերմն, որ է դեկ. զի յար[1] են և 'ի մօտ այդ ջերմերդ՝ որ 'ի դեկն[2] փոխին, որ է հալեմաշ. և այդ բաւական է օգնականութիւն նոյ:

Մուսավայինն որդլին ասէ, թէ՝ եթէ այս ջերմն ընծայի 'ի բնական տաքութենէն, և հողւոյն որ ներքս 'ի սիրտն հաւաքի, և հօն 'ի բազում տրտմութենէն դաղդարի և արմատ առնու: Իւր նշանն այս է՝ որ աչքն ցածանայ և 'ի գուբն անկանի. և լինի որ աչացն գոյնն պղտորի. և մաձասինն երակն բարակ և մանտր լինի. և գոյն 'ի կարուրայն կարմիր ցուցանէ:

Եւ իւր ստածումն այս է, որ ընդ խաղ և ընդ կատակ և ընդ ամ իրք ուրախութիւն բերէ և զըմբաղի. և որչափ կարէ՝ գուսանի և լարի և անուշ եղանակաց ձայն լսէ. և 'ի յայն իրմէն զըմբաղի՝ որ ցներքսէ ուրախութիւն բերէ: Եւ երբ ջերմն 'ի վճար գայ, 'ի բաղանիս մտէ և 'ի կիսատաք ջրով յաւազանն նըստի. և կերակուրք միջավայրք և պարկեշտ տուր, զերդ գառի միս և ուլու, թաժայ և մանտր ձուկն նշի ձիթով տապկած: Ապա թէ ամառն լինի, հով տուն նստի. իսկ եթէ ձմեռն լինի, 'ի տաք տունն կենայ. և շատ 'ի քուն մի տաս լինել:

Սահակ ասէ, թէ իւր ստածումն այն է, որ 'ի բաղանիս կիսատաք ջրով յաւազանն մտէ, և զմարմինն մանուշակի ձիթով օծանէ, և համապաղ 'ի հով և 'ի գինձայինն ծաղկունսն հոտոտայ, զերդ մանուշակն և 'ի նոնոֆարն, և այլ զոր ինչ նման են սոցա. և զմնուփառեհ մաձունն, որ է խնդացնող, որ քաֆուրիայ ասեն, յար 'ի բանի պահէ. և հով լուսանոճն զկուրծքն օծանէ, զերդ պզրկատունի լուղայն: Ապա թէ զառնալեզուի ջրով և չնխաղողի ջրով զկուրծքն օծանէ, շատ օգտէ: Գինի անուշահամ և անուշահոտ տուր, բայց սակաւ. և 'ի յամ կերակրոց՝ որ զսավտայն շարժեն և զսավտայն ընծայեն, որ է սև

1 Յօրինակին սոր:  2 Յօրինակին 'ի դին:

մաղձն, պատրաստ կալ, և 'ի պարկեշտ կերակուրք յարեցո։ Ապա թէ ստամոքսն տկար լինի, սերկևիլն շարապ և խնծորի խառնեալ տուր 'ի յար։

Ապա այն ջերմն որ 'ի ցանկութենէ և 'ի թուաղարանց[1] և 'ի բազում հոգոյ ընծայի, իւր ստածումն նոյն խորհուրդն և նոյն դեղերն է զոր յիշեցաք։ Բայց պիտի որ ամ ստածումն ըստ հիւանդութեն որպիսութեն և ըստ հիւանդին զօրութեն լինի, որ հիւանդութին շուտով արձակի օգնականութքն այ։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն 'ի տքնութենէ լինի։

ԱՅՍ ջերմս 'ի զգայական հոգւոյն հանդիպի[2] լինել. և իւր նշանն այն է, որ երեսացն գոյնն դեղին լինի. և իւր դեղնութէ պատճառն այն է՝ որ տքնութիւնն արգիլէ զբնութին 'ի կերակրոյն յեփելոյ. զի բնութեամբն հալին կերակրոյն ընդ քունն լինի. և աչքն խորնայ, զի այն գիճութի որ 'ի քնոյն ընծայի, պակասեցաւ. և մաջասն փոքր և յոյլ լինի, զի զօրութիւն վատուժել լինի, և արեանն 'ի դուրս սրփռիլն։ Իսկ այս ջերմս 'ի զգայական հոգւոյն հանդիպի. ապա վասն այդր պատճառանացդ 'ի յիւր բժըշկութիքն պարտ է ջանք դնել որ 'ի քուն լինի. զձեթն և զոտսն աղէկ աճռել տալ, որ շոգիքն 'ի վայր իջանին. զկերակուրն պարկեշտ տուր և շուտահալ. և 'ի մերձաւորութենէ պատրաստեցո զնիկ, մինչև իւր առաջին բնութին դառնայ։

Նաքարաս ասէ 'ի նոյն պատճառքդ, եթէ միօրեայ ջերմն որ 'ի տքնութենէ լինի, 'ի ստամոքսացն լինի՝ որ զկերակուրն պակաս եփէ. կամ 'ի կոծանաց և 'ի հալածանաց, որ զմարմինն դատել լինի տքնու-

1 Օրինակին 'ի թուատաքարանց։ 2 Օրինակին հանդէպ։

թեամբ, և կամ 'ի զգայական հոգւոյն հասեալ լինի դատումն ։ Եւ իւր նշանն այս է, որ աչքն խորանայ, և զերդ 'ի գուբն անկանի, և աչքն ծանրանան, և 'ի յերեսն այտոց երևնայ, և գոյնն սպիտակ լինի, և մաձասին երակն բարակ լինի ։

Եւ իւր ստածումն այս է ։ Ա՛ռ դդմի կտի ձէթ, որ ընդ մանուշակն մնուցած լինի, և հեղ մի քանի 'ի քիթն կաթեցո ։ Եւ այլ առ մանուշակ և նինոֆար, և խաշխաշի կոնկոմ, և գարի փերձոկած. զայս զամէնս անուշ և քաղցր ջրով եփէ, և 'ի վերայ գլխոյն դիր. յառաջ իւր ջրովն ծեփէ զգլուխն. օգտակար է ։

Եւ երբ ջերմն պակասի և վճար գայ, 'ի բաղանիս մտո, և կիսատաք ջրով ծեփէ զմարմինն, և մանուշակի ձիթով օծանէ. և երբ 'ի բաղանեացն ելանէ, հետ պահու մի կերակուր տուր՝ գէր հաւ պարկեշտ համեմնով և նշի ձիթով եփած ։ 'Ի տաք և 'ի չորային կերակրոց և 'ի մերձաւորութենէ պատրաստ կալ, և շատ 'ի շուրջ գալոյ, և զմարմինն 'ի դատելոյ, և յա̃մ իրաց՝ որ չորութի̃ ընծայեն՝ պատրաստ կենայ ։

Մուսավայլին որդլին ասէ, եթէ իւր օգտակար ստածումն այն է, որ շատ 'ի քուն լինի ։ Եւ առ պապունաճ և մանուշակ, նոնոֆար և խաշխաշ. զայս ամէնս ջրով եփէ աղէկ, և զգլուխն այդ ջրովդ 'ի յար ծեփէ, զի օգտակար է և քուն բերէ, և զջերմն արձակէ ։ Զձեռն և զոտն մանուշակի ձիթով օծանէ մարձելով. և հաւու ձագ և տուռաճ և տէհուճի միս ուտէ. և գինի տուր սակաւ սակաւ. 'ի հով և 'ի գիճային կերակուրք յարեցո. և ա̃մ բանէ որ զմարմինն դատէ, պատրաստ կենայ, և 'ի մերձաւորութենէ այլ. և ցերեկով 'ի քուն չիլինի. զի գիշերուն քունն հանգիստ բերէ, և զկերակուրն հալէ, և 'ի մարմինն հովութի̃ և գիճութի̃ ընծայէ ։ Ապա թէ ջերմն զօրաւոր լինի, զհով և զգիճային ձիթերն յար ընդ գլուխն օծէ. որպէս մանուշակի ձէթ, և դդմի կտի ձէթ, և նոնոֆարի և կամ նշի, և այլ սոցին նմանն. օգտակար են օգնութի̃նք ա̃յ ։

# ԳԼՈՒԽ ԺԲ.

*Վասն միջակայ ջերմանն որ պատճառն 'ի արտաքս լինի, որ ցայլսն ելանէ, կամ 'ի ցաւէ մի՛ որ յայլ անդամսն լինի :*

ԸՆԾԱՅԻ այս ջերմն հոգւոյ կենդանութենէն : Իսկ յառաջ զցայլսն յիշեցաք, զի 'ի նոա այլ աւելի լինի ելունդ և այտոց, քան 'ի յայլ անդամս մարմնոյն. լինի 'ի հոն այտոց 'ի յայս պատճառաց :

Յորժամ թահըրի մարդն, և ոտն 'ի քարն դիպի, կամ 'ի յոլոքն և 'ի յանդամն ելունդ ելանէ, կամ այտոց լինի, կամ զարկս առնու, նա ջանայ բնութիւն որ արիւն յղարկէ անդ, ողջացուցանել զտեղին : Իսկ երբ այն արիւնն ընդ ցայլսն ելանէ, նա 'ի ցայլսն խուլյին մարմինն կայ, առնու 'ի յարենէն և ուռչի : Ապա տաքնայ արիւնն 'ի հոն՝ և տաքցնէ զերակսն, և վերանայ յիրմէն շոգի, և երթայ 'ի սիրտն՝ և տաքցնէ զհոգի կենդանութենէն, որ ընծայէ զջերմն : Նոյնպէս և ձեռքն և բազուկն յորժամ այտչի և ելունդ ելանէ կամ զարկք առնու, ուռենայ 'ի յանթքն խուլյին մարմինն, և առնէ զջերմն, որպէս 'ի ցայլսն ասացաք : Ապա թէ յայլ անդամունս ելանէ ելունդ, նոյն պատճառքդ են և նոյն օրինակքդ, որպէս 'ի ցայլքն և 'ի յանթն ասացաք :

Բայց այս ջերմանս մաճասին երակն ահաւոր և սուր լինի. ահաւորութե պատճառն 'ի յարեան շատութենէն լինի, և հոգւոյ կենդանութեան զօրութիւնն. և սրութե պատճառն սրտին կարիքն լինի՝ որ խաղաղեցնէ և անցնէ զտաքութիւն՝ զոր 'ի յինքն հասաւ. և զշոգիքն վարէ և հանէ յիրմէն : Իսկ երեսացն գոյնն կարմիր լինի, զի արիւնն ժխորած լինի և շարժած. և գողին գոյնն իսպիտակ լինի, զի արեան տաքութիւն և մաղձին 'ի ցաւած յանդամն երթայ : Ապա երբ ջերմն 'ի վճար գայ, գտանի 'ի մարմինն եղկ գիճութի. և իւր պատճառն այն է՝ որ փատլայն աղգիլած լինի 'ի մարմինն, որ է յաւելուած : Իսկ յառաջ ելընդին բժշկութեան պէտ առնել պատեհ է.

զի ինքն լինի պատճառ ջերմանն. և յորժամ զպատ-
ճառն կտրեն, նա ջերմն թողու և ողջանայ:

Ապա թէ ասէ ոք, եթէ յամեցնէ այս պատճառ-
նիս զօրքն, և ջերմն 'ի յար մնայ, դու ընդ էր անուա-
նեցեր զսա միօրեայ ջերմն. տամք պատասխանի և
ասեմք այսպէս, եթէ յոր օր ընծայի ցաւն, նոյն 'ի
յօրն այն լինի ջերմն. և 'ի յոր օր ողջանայ ցաւն, 'ի
նոյն օրն արձակի ջերմն:

Իսկ իւր բժշկութի՛ն այն է՝ որ 'ի բաղանիս մտէ, և
յամէ 'ի բաղանիսն՝ որ փափլանելն եղանեն 'ի մարմ-
նոյն. աճռէ և մարձէ զմարմինն առանց ձիթերոյ,
որ չխծկէ զգաղտ շնչահանն մարմնոյն: Ապա թէ
յաւազան նստի, թող չյամէ շատ՝ որ չշատնան գի-
ճութիւն իւր: Նոյն զկերակուրն թեթև և շուտա-
հալ ուտէ, որպէս հաւձագ և տուրաճ և տեհուճ,
և որ նման սոցա. խիստ ջրախառն գինի տուր:

Նոյն ասէ մեծ իմաստասէրն Սինայի որդին, եթէ
երակ առ, և զմնութիւն լուծէ. և բժշկեա՛ զայտոցն
և զեղունգն իւր բժշկութն, զոր գրած է իւր դուռն.
զիւր ծմ թպտիրն պարկեշտ արա. գինի մի՛ տար և
ոչ ծանր կերակուր, մինչև վճարի ջերմն: Բայց 'ի
վերայ ցաւցած տեղացն անճար սպեղանի դիր. հով
և գիճային ձիթով հովցուր՝ որ անցնէ զտաքութիւն.
բայց համց ջանա՝ որ ընիկ չիհովցնես զտեղին, որ չխա-
փանէ զցաւն յեփելոյն, և իւրն հմութի տայ: Նոյն
զճանապարհն՝ որ ընդ ինքն և ընդ սիրտն 'ի մէջ կայ,
հովացո խիստ, մինչև իւր հովութիւն խորու և ներսի
յատակն հասնի. և այդ բաւական է կամքն այ:

Մահմատ Իպլին Զաքարիան ասէ, թէ այս ջեր-
մանս, որ պատճառն 'ի յայտոցէ լինի, ջերմանայ այն
հոգին՝ որ մօտ 'ի յայտոցն լինի. և այն ջերմն տեղացն
տաքութիւնն և արիւնն մինչև 'ի սիրտն հասանի, և
'ի սրտէն սփռի ընդ շնչաւոր երակսն յամ մարմինն:
Նաև իւր նշանն այս է՝ որ երեսացն գոյնն կարմիր լի-
նի, և միճասին երակն մեծ և շոյտ և յար լինի, և
դօղն սպիտակագոյն:

Իսկ իւր ստածումն այս է, որ երակ առնու իւր
դիմացի հակառակէն. և ըստ հիւանդի ուժոյն՝ եր-
կու երեք հեղ: Նաև զհիւանդին խառնուածքն հովա

ցուր գարեջրով և որքնձուպինով, և քաղցր և թթու նռան ջրով. և զփրփրեմին հնտին ջուրն որքնձուպինով համակ 'ի բան պահէ ։ Ապա թէ բնութիւն կապ լինի, մրգաջրով և լոլուֆարի շարապով կակղացո. և հետ այսոր զայտոցն հովացո հովային դեղերով և օծանելով և 'ի վերայ դնելով զերթ զսանտալն և զշաֆիմամիսան և զառնալեզուն և վարդի ջուրն և քաֆուրն, և այլ զոր ինչ նման են սոցա. 'ի տաք կերակրոց և շատ 'ի ժուռ գալոյ և 'ի բաղանիս մտանելոյ պատրաստէ. այլ զմարմինն հանգիստ պահէ. և ամենևին գինի չխմէ ։

Մատային ասէ, թէ իւր ստածումն այն է՝ որ երակ առնէ և գարեջուր խմէ, քաղցր և թթու նռան ջուր ։ Ապա թէ աւուրքն ամառային լինի, 'ի հով տեղիք նստի, և հով կերակուրք ուտէ, և հովային ըմպելիք խմէ, որպէս պզրխաթունն ձուլապով, և փըրփրեմի հնտի կաթն որքնձուպինով, և խաւարտ և հազար, և հնդիպայ ուտէ, մանաւանդ խաղողի քացախով ։

Ապա թէ այտոցն պինտ լինի և խոցտէ զերթ նետով, առ սանտալ և վարդեջուր և զառնալեզուի ջուր. զայս ամենս յիրար խառնէ, հին քթան կտաւով 'ի վերայ այտոցին պահէ, շատ օգտէ ։ Նաև կերակուր դդմով մուզավարայ և ազոխի ջրով տուր և կամ նռան ջրով, և մաշի մուզավարայ սպանախով, որ նշի ձիթով եփած լինի. և ամենևին 'ի բաղանիս թող չմտէ ։ Նաև 'ի շատ ժուռ գալու պատրաստէ, մինչև այս ջերմն 'ի կատար գայ և ողջանայ կարողութեամբն ամենազօրին այ ։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

*Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն 'ի շատ կերակրոյ լինի և 'ի թուխմայէ ։*

ՄԱՀԱՄՄԱՏ Զաքարիայն որդին ասէ, թէ այս ջերմանս պատճառն որ 'ի շատ կերակրոյ լինի, և 'ի ստամոքին 'ի վատուժութենէն, որ զկերակուրն հալել չիկարէ, և լինի որ աւիրէ զկերակուրն ։ Եւ իւր նշանն այս է՝ որ ձգեւումն հոտած գայ, և ծարաւն շատ լինի. և լինի որ բնութին լուծանի, և անդամքն ծանրանայ ։

Իւր ստածումն այս է, որ շատ 'ի քուն լինի. և երբ ստամոքն յիստկի, և նեխած ձգեւումն 'ի յաղէկ փոխի, և երբ մարմնոյն գոյնն դեպ 'ի կարմիրն լինի, և մաճասին երակն 'ի լի լինի, պատեհ է երակ առնել. և օր մի երկու՝ շաքարով փոխինտ ուտէ. և 'ի յայս ջերմանս յըստածումն չէ պարտ յուլութիւն անել, զի լինի որ յերկար քաշէ ։ Զերթ զարեան ջերմն 'ի յար լինի համապազ տաքութին ։ Եւ իւր թպտիրն այն է՝ որ շուտով զմարմինն սրբէ մէկ քանի հեղ մըրգաջրով և սրքնձուպինով. և զգարէջուրն 'ի բան պահէ իւր հաւիճնոյն, օգտէ ։ Եւ երբ ջերմն թեթեւանայ, 'ի բաղանիս մտէ և շատ նստի, և կիսատաք ջրով զմարմինն լուանայ, և թեփով զմարմինն շփէ ։ Ապա թէ բաղանիքն հով լինի, շուտ 'ի դուրս ելանէ. զի եթէ շատ նստի, երկիւղ կայ որ ջերմն բորբոքայլին դառնայ. ապա երբ 'ի բաղանեացն ելանէ, 'ի քուն լինի և հանգիստ կենայ ։

Որիբաս ասէ, թէ պատճառն այս ջերմանս որ 'ի թուխմայէ լինի, իւր ստածումն այն է՝ որ վերաբերութին այնէ եղկ ջրով և սրքնձուպինով, և հետ այնոր զբնութին կակղացուր թմրհնդով և սրքնձուպինով և դամոնի ջրով, թթու և քաղցր նռան ջրով ։ Ապա թէ բնութիւնն խիստ կակուղ լինի, հանց որ դառնէ զհիւանդն, զստամոքն զօրացուր նռան ջրով. և սերկեւիլ ջրով. ապա թէ զսերկեւիլն եփէ, և սա-

կաւ մի տապաշուր խառնէ և ուտէ, խիստ օգտակար է։ Ապա թէ գոյն կարմիր լինի, և ջերմն ուժով, և հիւանդն տկար չիլինի, պատեհ է որ երակ առնես։ Ապա թէ ծարաւն շատ լինի, նուան ըռուպ հով ջրով 'ի բան տար. և երբ ջերմն պակասի, 'ի բաղանիս մտէ, և եղկ ջրով լուացվի, և 'ի բաղանեացն յետև 'ի քուն լինի. և կերակուր նուան մուզավարայ ուտէ. ապա թէ հիւանդին զօրութիւն տկար լինի, հաւձագ կեր, օգտակար է։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

*Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն անօթի կենալոյն լինի։*

ՄՈՒՃԱՐԵՀՆ ասէ, թէ այս ջերմանս պատճառն որ սովոյ և 'ի յանօթի կենալոյ լինի, իւր պատճառն այս է՝ որ գոլորշիքն ամ̃ մարմնոյն ջերմացեալ սրանան, վասն ան պատճառին՝ որ կերակուրն յիւր ժամն չիհանդիպեցաւ։ Եւ իւր նշանն այս է՝ որ ամ̃ անդամքն թուլանան, և մաճասին երակն վատուժ և բարակ լինի. և երբ երակն բռնես, ներքև մատին պինդ լինի։

Եւ իւր ստածումն այս է՝ որ երբ 'ի ջերմանն 'ի նոպայն լինի, հարիրայ տաս գարու ալուրով և նշի ձիթով. և յետ այնոր կերակուր այլ ուժով կերակրի, զերթ սիսեռն մուզզաւարայ նշի ձիթով, կամ հաւձագ տապկած։ Եւ յորժամ ջերմն յանգահի, 'ի բաղանիս մտէ, և եղկ ջուր 'ի վրան լնէ, և եղկ աւազան առնէ, և զմարմինն մանուշակի ձիթով օծանէ. և վարդի և դդմի ձէթ հանապազ 'ի բան տար, շատ օգտակար է աստուծով։

Մահամատ Զաքարիայն որդին ասէ, թէ այս ջերմն որ 'ի սովոյ և յանօթութէ̃ լինի, պարտ է երակ առնել որ տաքութիւն պակսեցնէ. և հետ այնոր փութով գարեփոխինտ կերակրի շաքարով, և գարեջուր խմէ. հով և դիճայլին կերակուրք 'ի բան տանի։

Ապա ջերմն հանդարտի, նա սակաւ սակաւ հով ջուր խմէ, և ամենևին չիդատի զանձն. 'ի ծանր և անհալ կերակրոց պատրաստէ. Թեթև և պարկեշտ կերակուր թող ուտէ: Ապա թէ ջերմն և ծարաւն թէ խիստ լինի, իւր ստածումն այն է՝ որ հով ջուր խմէ, և զմրգանց ջուրն 'ի բան պահէ. որպէս դամոնջուր և մշմշի և նռան հատի ջուր և յունապի, և որ նման սոցա: Ապա թէ ամառն լինի, հով ջրով լվացվի. ապա 'ի բաղանիս մտէ, և եղկ ջրով լվացուի. և զմարմինն հով և գինձային ձիթերով օծանէ, որպէս այլ յառաջն յիշեցաք, օգտէ կամօքն Այ:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

*Վասն միօրեայ ջերմանն որ շատ դատելոյն լինի, կամ 'ի ծանր և դժար բանէ:*

ԴԻՒԱՒՃԷՆՆ ասէ, թէ այս ջերմանս պատճառն այս է՝ որ 'ի շատ դատելոյն հոգւոյն տագնապեր է և տաքցեր է, և իր տաքութենէն զայս ջերմն յերեւան է բերել: Իւր նշանն այս է՝ որ ամ մարմինն տաք լինի և խոնձի և թմրի մարմինն. և մաճասւն երակն վատուժ և բարակ լինի. և զոյն դեղին և նօսր:

Եւ իւր ստածումն այս է՝ որ զմարմինն հանգիստ պահէ, և գարեջուր սըքնձուպինով խմէ. և համապազ քաղցր և թթու նռան ջուր խմէ. և երբ ջերմն պակասի՝ 'ի բաղանիս մտէ, և եղկ աւազան նստի, և զմարմինն օծանէ մանուշակի ձիթով: Ապա թէ ձմեռն լինի ու խիստ ցուրտ, օծանէ զմարմինն խիրու ձիթով և պապունաձի ձիթով: Եւ երբ բաղանեացն ելանէ, կերակուր՝ նռան մուզաւարայ ուտէ նշի ձիթով. և յետ այնոր եղերդակն և փրփրեմ 'ի բան տանելն: Եւ երբ ջերմն վճար գայ, հաւձաւգ կերակրի համեմնով, և 'ի չորային կերակրոց պատրաստէ. և գինի ջրախառն խմէ. և յետ այնոր 'ի քուն լինի:

Մահամատ Օ աքարիան ասէ, թէ իւր ստածումն այս է՝ որ եղկ ջրով լվացվի, և մանուշակի և նոնոֆարի ձիթով զգլուխն օծանէ, նոյնպէս և զմարմինն, մանաւանդ զշնեցն զկաշին: Երբ 'ի բաղանեացն ելանէ, կերակուր հով և գիճայինն ուտէ, որպէս սպանախ և թախթ, որ լինի նշի ձիթով, և հաւու միս և ուլու. և ըմպելի հով ճուլապ խմէ, և շատ 'ի քուն լինի. ապա թէ այսով չէյաջողի[1], այլվի 'ի բաղանիս մտէ, և զնոյն թպտիրս 'ի բան պահէ. և նոնոֆարի ձիթով համապազ զմարմինն օծէ. մէկ քանի հեղ եղկ աւազան առնէ. շատ օգտէ, մանաւանդ եթէ ձմեռն լինի:

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Վասն միօրեայ ջերմանն որ 'ի խռնձենալոյ լինի կամ ձիով կամ հետեւակ:

ՌԱԳԱՐԱՍ ասէ, թէ շատ տապելոյն և խռնձելոյն՝ հոգւոյն տաքութիւն իւր չափէն անցնի, և հոգի կենդանութէ և հոգի զգայութէ դատրին և ահոկին: Իւր նշանն այս է՝ որ ջիղք մարմնոյն զերդ լար քաշած լինի, և 'ի մարմինն չորութի երևայ. և մաճասին երակն ծանտր և տկար երևի. և զողն նօսր և տկար, վասն շարժելոյ մարմնոյն և արձակելոյ զօրութեն:

Իւր ստածումն այս է, որ համապազ 'ի բաղանիս մտանէ, և եղկ աւազան առնէ, և զմարմինն եղկ ձիթերով օծանէ, և կերակուր պարկեշտ ուտէ, զերթ հաւձագ և ուլլի միս, թաժայ և մանր ձուկն որ 'ի քաղցր ջրէն կալած լինի: Բայց պակաս կերակրի վասն այն պատճառին՝ որ ստամոքն 'ի յուժի չէ, և կարողութի չունի որ զկերակուրն եփէ. յետոյ ձվի դեղնուց թերխաւրով ուտէ. և զմարմինն հանգիստ պահէ. 'ի ծանր կերակրոց պատրաստի, օգտակար է:

1 Յօրինակին չէյաջէ:

Մասրձուէն ասէ, թէ իւր ստածումն այս է՝ որ յանօթուց ճուլլապ խմէ. ապա թէ գինւոյ սովոր է, ջրախառն թող խմէ. և զմարմինն մանուշակի ձիթով օծէ, և նոնոփարի. և ուշիկ ուշիկ զմարմինն մարձէ. և եղկ աւազան մտէ, որ զգիճութիւն յաւելցնէ. նոյնպէս զգլուխն և զչլիքն և զհլունսն ողոշարին մանուշակի ձիթով լաւ օծանէ. մանաւանդ յորժամ 'ի բաղնեցէն ելանէ, կակուղ և հանգիստ տեղ պառկի, և անուշ հոտեր՝ որ զըղեղն հոտացնեն՝ նա հոտայ, որպէս նոնոփար և մանուշակ. և որ սոցին նման են, շատ օգտեն:

Մատային ասէ, թէ ձմեռն լինի կամ օդն ցուրտ, յորժամ 'ի բաղնեց ելանէ, զմարմինն պապունաճի և սամթի ձիթով օծնէ, և պարկեշտ կերակուր ուտէ, որպէս զալիայ դդմով և սպանախով և փերճկոտած մաշով: Ապա թէ չորութիւն երևայ 'ի մարմինն, զարեջուր տուր նշի ձիթով և պըղղատունի լուապով խսպիտակ շաքարով. օգտէ աստուծով:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Վասն միօրեայ ջերմանն որ պատճառն ղուղամ և նուզլայ և հաղ լինի:

Փոլոս ասէ, թէ այս ջերմանս պատճառքն և զնշանքն որ 'ի տաքութենէ լինի, զոր 'ի հովէ լինի, գրեցաք իւր դուռն 'ի լման, որ զգուզամն և զնուզլան յիշեցաք յայլ գիրք. և աստ գրենք զիւր ստածումն՝ որ է այս: Ի սկիզբն հիւանդութեն երակ առնու կամ ապիկիս արկանէ. 'ի մնէ և 'ի քաղցրէ և 'ի գինւոյ պատրաստէ. մնուցած մանուշակ և գարեջուր խմէ. զիւր ստածումն չկյուլանաս, զի լինի՝ որ իւրմէն սարսամ հիւանդութի ընծայի, և խիստ հիւանդութին դժարանայ:

Մասրձուէն ասէ, թէ իւր ստածումն այս է՝ որ

'ի կնֆալէն երակ առնես . 'ի մսէ և 'ի քմղցր իւրոց պատրաստէ . և կերակուր մաշի մուզավարայ տուր , և սպաննախ նշի կաթով կամ ձիթով , և գարեջուր խմէ նշի ձիթով և խաշխաշի շարապ , և ձուլապ հով֊ ցուցած 'ի բան տար . և բակլայի ջուր նշի ձիթով , օգտակար է . հարիրայ թեփով և նշի ձիթով կերակ֊ րի , զի խիստ օգտակար է ։ Ապա թէ ջերմն հետ շատ հազին լինի , իւր ստածումն այն է՝ որ գարեջուր տաս նշի ձիթով , և մաննուշակի շարապ , և փրփրեմի հըն֊ տըն կաթն , և սերկևիլի կտի լուապ , և պզըրղատունի լուապ , խաշխաշի շարապով 'ի բան պահէ , և աղցած բակլայ նշի ձիթով 'ի բան տար ։ Եւ յորժամ ջերմն պակասի , սպաննախ և մաշ նշի ձիթով մուզավարայ ուտէ ։ Ապա թէ հետ ջերմանն ծարաւ խիստ լինի , զհով և զգիձայինն իրվէն 'ի բան պահէ . և 'ի վերայ լերդին հովային սպեղանիք դիր , օգտէ ։

Նհամնան ասէ , թէ իւր ստածումն այս է՝ որ գա֊ րեջուր տաս , որ խաշխաշի շարապով և նոնոֆարով լը֊ նի եփած և նշի ձիթով . և հետ այնոր խաշխաշի շա֊ րապ և մաննուշակի շարապ տուր . և առ ափիոն և վարդէջուր , տրորէ , և զականջթոռն և զքներն օծ֊ նէ , որ 'ի քուն լինի ։ Ապա թէ 'ի ստամոքն գէշ և աւեր խառնուած լինի , իւր ստածումն այս է՝ որ սրքնձուպինով և տաք ջրով վերաբերութի այնէ . և այլ զամ ցեղ դեղորանք , որք գրած են 'ի զուգամին դուռն և 'ի նուզլային և 'ի հազին , զամէն մէկ իւր տեղն 'ի բան տար . օգտէ աստուծով ։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

Վասն այն ջերմանն որ զկնի փորացաւութեն լինի ։

ՍԻՆԱՑԻՆ որդւին մեծ իմաստունն ասէ, թէ այս ջերմանս պատճառն ՚ի հոգւոյն շատ շարժելոյն և ՚ի դատելոյն լինի ՚ի ձեռն բնութեան զօրութեն, վասն լուծմանն որ արտաքս հանէ. և ՚ի ձեռն այդր պատճառանացդ այս ջերմն ընծայի ։ Իւր նշանն այս է՝ որ երեսաց գոյնն դեղին լինի, և մարմինն թուլանայ, և աչքն խոր անկանի, և մաճասին երակն բարակ և վատուժ լինի ։

Իւր ստածումն այս է՝ որ զփորացաւութե դեղերն ՚ի բան պահես, զոր փորացաւութեան դուռն յիշեր եմ. և ջանաս ամ գլխոյ՝ որ զփորն կապես. և կերակուր փոթոթ և կապող տաս, որպէս աղտորի մուզավարայ և նռան, և որ սոցին նման են. և ՚ի վերայ ստամոքացն սպեղանի դիր, որ ստամոքացն զօրութե տան ։ Երբ լուծումն դադարի և ջերմն յանկահի, ՚ի բաղանիս մտանէ և զմարմինն եղկ ջրով լվանայ. և կերակուրք հով և չորային ուտէ, որ զբնութին կապեն. զի թէ լուծումն դադարի՝ զկնի և ջերմն արձակի ։ Ապա թէ մնայ ջերմն, տես ո՞ր ազգէ է. ՚ի նոպայո՞վ և ՚ի բորբոսային ջերմերուն են, թէ ՚ի յանընոպայ և յանբորբոսային ջերմերոյն. և բժշկէ իւր բժշկութեն, որպէս ՚ի գիրքս գրեալ եմ մի ըստ միոջէ կարգով զպատճառն, զնշանն և զստածումն, օգնութեամբն այ ։

Իսկ այլ ամ ցեղ հիւանդութի որ ՚ի հետոյն ջերմն լինի, յորժամ հիւանդութին բժշկի, և ջերմն արձակի ։ Ապա թէ ոչ՝ նոյնպէս տես զջերմն թէ յորո՞յ ազգէ է և ո՞ր ցեղ և ո՞ր տեսակ է, և զի՞նչ ունի պատահումն. ՚ի բորբոսային ջերմերո՞յն է թէ անբորբոս, ՚ի նոպայո՞ւն է թէ աննոպայն, ՚ի սուրն է թէ յերկարօրեան. և ստածէ զամէն մէկ իւր բժշկութեն, որպէս յիշել եմ, և յիշել կամիմ ՚ի գիրքս ուրիշ ուրիշ կամօքն այ ։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Վասն այն ջերմանն որ զկնի մանկատարաժամութեան է պատահած :

ՊԻՎՃԱՆԻՍՆ ասէ, թէ այս ջերմն լինի 'ի յօդոյն աւերմանէն՝ որ զմարմնոյն խառնուածքն 'ի չափէ հանէ և աւիրէ 'ի ձեռն պիղծ և մահաբեր օդոյն : Իւր նշանն այս է՝ որ հիւանդն հանապազ նուաղի, և սիրտն տապի, և միջասին երակն զօրաւոր լինի և 'ի ժիր խաղայ. և ծարաւն շատ լինի, և շունչն կարճ. և այլ լինի որ վերաբերութեն դիպի :

Եւ իւր ստածումն այս է. որ տեսանես թէ արիւն յաւելցեր է, երակ բաց 'ի սրտէն. ապա թէ մաղձն յաւելի լինի, զհալիլային մատպուխն մրգաջրով 'ի բան պահէ. ապա թէ պալղամն յաղթող լինի, հապի յայեարիճ տուր՝ թրպութով և շահմի հանդալով, և որ սոցին նման են. և զփոթոթային ռուպնէն 'ի բան պահէ, որ ստամոքն զօրանայ. որպէս ազոխի ռուպ և սերկևիլի և նռան և խնձորի. և 'ի մրգանց տանձ և խնձոր, նուռ և սերկևիլ ուտէ : Եւ երբ տեսանես որ հետ այս ջերմանս տաքութեն նշան լինի, թմրհնտոյ ջուր և նռան շարապն[1] 'ի բան տար, և փրփրեմի հնդտի կաթն՝ քաղցր և թթու նռան ջրով տաս. և առաւօտուն քաֆուրի ղուռս տուր թուրինճի ջրով խառնած. ապա ա՛ռ սանտալ և քաֆուր և 'ի վարդէջուրն խառնէ, և յար 'ի վերայ կրծոցն պահէ. և 'ի հով տուն կենայ, և ուռի տերև սփռէ 'ի տունն. և կերակուր աղտորով և նռան ջրով ուտէ՝ որ մուղ լինի. 'ի բաղանեաց 'ի զատ կենայ. 'ի տաք կերակրոց պատրաստի :

Մասուային որդին ասէ, թէ իւր ստածումն այս է՝ որ հանապազ սրտին ուժ տաս, և անուշահոտ հոտեր և հովային ծաղկներ հոտայ. և զհովային ծաղկունքն 'ի վերեն և 'ի բոլորն շարեն, և 'ի նստած տանն յորմունքն օծեն քաֆուր, սանտալ, վարդէ-

1 'Ի լուսանցան օշին :

ջրով և քացախով խառնած լինի, և տուեն այլ ցա-
նեն, որ այն հոտն 'ի յար 'ի յինք հանի, զի շատ
օգտակար է։ Նաև ա՛ռ քթան կտաւ, վարդէջրով քա-
փուր տրորէ, 'ի յայդ տրորածտ խառնէ և թաթխէ
զկտաւն, և 'ի վերայ կրծոցն և սրտին դիր. և ջուր
հով խմէ, և նուան շարապ և ագոխի ջուր 'ի բան տար։
Ապա թէ այս դեղս չօգտէ, 'ի հով ջուրն քացախ
խառնէ և խմէ. և կերակուր հաւձագ խորված, և
ձուի դեղնուց, և խապխտակ գինի անուշահամ՝ որ
նօսր լինի, և ամ ինչ՝ որ պարկեշտ են և փոթոթ,
օգտեն աստուծով։

## ԳԼՈՒԽ Ի.

Վասն այն ջերմանն որ զկնի նուաղին և թալանան։

ՍԱԳԻԹ Կոււան ասէ, թէ 'ի հում պալղամէ լի-
նի. և այն հում պալղամն 'ի շատ թուխմայէ լինի
հաւաքեալ 'ի ստամոքն և 'ի փորոքն, զի զօրութիւն
ընկղմեալ լինի, և բնութիւն յիւր եփելուն ձանձրա-
ցեալ լինի։ Իւր նշանն այս է՝ որ 'ի նոպայեն ժամն,
և կամ զկնի նոպայեն, հիւանդն նուաղի պահ մի
կամ այլ աւելի. և երեսաց գոյնն 'ի յարձիձի գոյն
'ի յար լինի, և 'ի յերեսն այտոց անկանի։
Նաև իւր ստածունն խիստ դժար է վասն այն՝ որ հի-
ւանդութեան գլուխն բնութեանն յաղթեալ լինի։
Բայց իւր ստածունն այս է՝ որ չիշտապի, այլ քիչ քիչ
զհիւանդութեան գլուխն պարկեշտ դեղերով լուծ-
մամբ 'ի մարմնոյն յարտաքս հանէ։ Ապա թէ հի-
ւանդն լուծման դեղ չիկարէ առնուլ, կակուղ հոկ-
նայով զբնութիւն կակղացուր. և յետ այնոր զմար-
մինն ուշիկ ուշիկ մարձէ, որ թէ մնացորդ ունի հի-
ւանդն, աձռելով զմարմինն՝ յարտաքս հանէ զինքն։
Բայց պիտի որ աձռելուն սկիզբն 'ի ձռանցն այ-
նեա, մինչև 'ի վայր երթաս. և ապա յետ այնոր թի-

կանգն արա, մինչև 'ի ձեռացն 'ի մատունքն․ ապա յետ այնոր զկողքն և զկուրծքն նոյն նշանօքդ։ Ապա առ զուֆայ կամ կարօսի հունդ, աղա և մաղէ, և տուր մեղրաջրով, օգտէ։ Ապա թէ այս ջերմն յամառան աւուրքն լինի, հով ջուր տուր խմել․ թէ ձմեռն լինի՝ տաք ջուր թող խմէ․ ապա թէ ջերմն ուժով լինի, մեղրով սրքնճուպին տուր․ մանաւանդ՝ թէ հիւանդն ալևոր կամ ծեր լինի։

Նագարատ ասէ, թէ պարտ է բժշկին որ ամէն օր զմաճասին երակն տեսանէ․ և երբ իմանաս որ օր քան զօր երակն կուտկարանայ, ապա զհացն 'ի դեղերն թաց, և տուր այն նշանօքդ՝ որ այլ յառաջդ յիշեցաք։ Այլ ում օր երկու հեղ զմարմինն օծնէ․ և զհացն 'ի ճուլապն թանալ և տալ օգտէ․ և բաղանիան շատ աղէկ է և զէն։

Ապա զկնի այս ջերմերուս պատեհ է յիշել զհալումաշ ջերմերն այսպէս։ Այլ զայս գիտեա, եղբայր, որ զի միօրեայ ջերմն յորժամ յամենայ առ մարդն, փութով փոխի 'ի հալևմաշ ջերմն, մանաւանդ որ պատճառն յերեք հոգւոցն լինի․ և այլ որոյ մարմնոյն խառնուածքն տաք և չորային լինի, և բնութին այս պատճառնոյս լինի, նա շուտ ընդունի զհալևմաշ ջերմն։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Պատմութիւն և նախագիտութիւն վասն երեք տեսակ հալեւմաշ ջերմանն :

Զայս գիտացիր եթէ քանի տեսակ են և ընդ քանի ցեղ բաժանին, և զիւրեանց պատճառն և զնեղիքն, եթէ ուր և որպէս լինի : Զայս ջերմս անուանել հոռոմն էքթիկոն, զոր տաճիկն դիք, որ թարգմանի հալեւմաշ : Իսկ զայս ջերմս վասն այնոր անուանեցին այդ անուամբդ, որ հաստատի 'ի մարմնոյն 'ի չոր և 'ի պինտ յանդամոցն, որպէս յոսկերքն, և 'ի ջիլքն, և յայլն՝ զոր այլ յառաջ ասացաք . և հալէ զճրագուն, մաշէ և հատցնէ զմիսն, վասն այդր պատճառանացդ անուանեցին զնա հալեւմաշ :

Արդ պարտ է որ իմանաս բժիշկն զայս ջերմանս զպատճառն՝ որ ընծայեցնէ զինքն . զի զերդ զմիօրեայ ջերմանն զպատճառնին լինի : Բայց միօրեայ ջերմանն պատճառնին սակաւ լինին, և շուտով աղձակին . բայց երբ այն պատճառնին յամէ առ 'ի մարդն և յերկարին, նա մտանէ մէկ մի յայն պատճառնոյն խորու 'ի մարմինն, և ընծայէ զայս ջերմն՝ որ կոչի հալեւմաշ : Եւս առաւել պատճառ այս լինի՝ որպէս սուգն և հոգսն և մտավարժութիւն, ահն և երկիւղն, ցանկութիւնն և ղիպն, տքնութիւն և շատ կարդալն, և ցարեկին անօթի կենալն և պակաս կերակրիլն, և որ սոցին նման են, որ չորացնեն և տաքցնեն զմարմինն զերդ յերկարօրեայ ջերմերն, և յերկարօրեայ եղընդնին, և տաք հիւանդութեներն, որ յիշխան յանդամուցն լինի :

Այլ գիտացիր որ այս ջերմս երկու տեսակ են . մէկն այրեցող տաքութի ունի և բարակ ջերմն . իսկ մէկայլն առանց տաքութէ լինի, զի բնական տաքութիւն հատեալ լինի, զերդ 'ի յալևորաց մարմինս : Եւ այս ցեղս լինի՝ յորժամ 'ի յիւր յառաջքն խիստ չորութի լինի հանդիպել . հանց որ զմարմինն բնիկ դատել լինի ամէն ցեղ լուծմամբ . զերդ փորուն լուծելն, և վերաբերութիւնն, և երակ առնուլն և ապիկիքս, և

այլ դիմօք արիւնն՝ որ 'ի մարմնոյն ելանէ, քրտինքն, և խօխն՝ որ հետ հազին գայ, և բաղանիսն, և մըրձաւորութիւն, և որ սոցին նման են, ամէնքն լուծումն են մարմնոյն և պակասութիւն գիճութեան ։

Այլ Փիլիպպոս բժշկապետն անուանեաց զայն ազգն՝ որ չունի տաքութիւն ծերոց հիւանդութիւն ։ Բայց մենք տեսանեմք շատ մարդիկ՝ որ կայ և դիպի այդ չորութիւնդ, ոչ եթէ ծերոց միայն, այլ և երիտասարդաց և միջահասակաց, երբ իւրեանց բնաւորական տաքութիւնն հատեալ լինի 'ի յերկար հիւանդութենէն և յար ցաւելոյ տեղաց մի մարմնոյն ։

Վասն առաջին ջերմանն, զոր հալեմաշ ասացաք ։

Նաև եթէ այրեցող ջերմ ունի և 'ի յերակն տաքութիւն, այս ջերմս բաժանի 'ի յերեք ցեղ. և անուանեն զառաջինն թառմէցնող, և զերկրորդն բարակ, և զերրորդն քակող ։ Նաև այս երեք ցեղ հալեմաշս ընծայի 'ի բնական երեք ցեղ գիճութենէն. զի 'ի մարմին մարդոյս բնական չորս գիճութիւն կայ, և են նոքա կարգած մէկ հետ մէկի ։ Առաջինն՝ մարմնոյն ընդ ամ երակսն լինին, որ են չորս նիւթն. երկրորդն՝ 'ի տեղեստանն, որ յերակացն փարիտուտ են, և ընդ յերակսն 'ի մէջ են, զերդ քօվքն և այլ տեղեստանն՝ որ 'ի զատ են յերակացն. և երրորդ՝ բնաւորական գիճութիւնն՝ որ լինի 'ի մարմնոյն միսն և 'ի փորոտիսն. որպէս լեարդն և փայծաղն, թոքն և ստամոքն, և այլ ամ փորոտիքն. և չորրորդն՝ 'ի յօդուածսն լինի, որ զամ անդամս մարմնոյն պինտ ունի և բռնած ։

Այժմ ասեմ եթէ յորժամ ջերմանայ առաջին գիճութիւնն՝ որ 'ի յերակսն լինի, որ են չորս նիւթն, նա տաքութիւ միայն ընծայէ 'ի մարմինն ։ Արդ երբ աւիրէն և բոլորոսէն, նա մէկ մի 'ի բոլորոայէն ջերմերոյն ընծայեն, զոր այլ 'ի յետոյ կամիմ յիշել ։ Արդ թէ հասանի այն տաքութիւն 'ի յերկրորդ գիճութիւն, որ երակացն փարփութն են՝ զատ 'ի յերակացն, նա ցամաքեցնէ զայն գիճութիւն, կամ մասն ինչ 'ի յիւրմէն ։ Արդ այն երեքէն առաջին ցեղ հալ-

ևմաշն ընծայի, որ կոչի Թառամեցնող. և այս ցեղիս ստածումն հեշտ լինի և շուտ: Ապա Թէ հասանի այն տաքութին 'ի յայն երրորդ դիձութին, որ 'ի միսն և 'ի փորոտիսն լինի, նա ընծայէ երկրորդ հալե-մաշն, զոր անուանեն բարակ, և իւր ստածումն և բժշկութին դժար լինի: Ապա Թէ այն տաքութին, որ 'ի չորրորդ դիձութին հասանի, որ զողվածն և զնմ անդամս մարմնոյն պինտ ունի, նա ընծայի եր-րորդ ցեղ հալումաշն, զոր անուանեն քակող և անց-նող մարմնոյն. և այս ցեղս զստածումն և զբժշկու-Թին չընդունի բնաւ:

Օ ի յորժամ բնաւորական դիձութին հատանի, չկայ ճար՝ որ այն մարմինն դարձեալ յիւր ողջնութին դառնայ և հաստատի: Իսկ բերեմ ես այս բանիս ընկեր և օրինակ, որ ընթերցողին դիւրաւ լինի: Օ այս իմն որ երբ ծառ՝ յորժամ կտրի 'ի յիւր-մէն, նուաղի և հատանի իւրիմէն ջուրն և հողոյն վաստակելն, նա այն ծառն վատթարի, և Թառամի տերևն: Ապա Թէ դարձեալ վաստակի իւր հողն, և ծառոյն ջուր տան, ստոյգ պայծառանայ իւր տե-րևքն, և ձոտքն ուժ առնեն և պտղաբերեն: Ապա Թէ զանց առնէ իւր տէրն և անհոգ կենայ, նա հա-տանի այն չորութին 'ի ծառին ձուղքն, և վատթա-րէ զիւր պայծառութիւնն և զձուղսն, և խափանէ զտերևն և զպտուղն: Ապա Թէ դարձեալ այն ծա-ռոյն տէրն պէտ առնէ նմա, զատակն բրէ և ջուր տայ, 'ի խիստ ցրտոյ և 'ի խիստ շողոյ պահէ զծառն, լինի որ յանկարծ այն ծառն դարձեալ յիւր բնական բնութին դառնայ, հետ շատ ստածելոյ և դատելոյ: Ապա Թէ անտես առնէ տէր ծառոյն, և անհոգ կե-նայ՝ որ հասանի այն ծառոյն չորութին 'ի յարմատն և 'ի կեղևն, նա չորանայ ծառն, և չիկայ հնար՝ որ ձօնիւ դարձեալ յիւր բնութին դառնայ: Նոյնպէս և այս ջերմն՝ երբ սկիզբն անհոգ կենայ իւր տէրն և պէտ չայնէ, աւիրի իւր զրոյցն:

Այժմ ցուցանեմ և ասեմ զնշաննին և զստա-ծումն և զբժշկութիւնն զատ 'ի զատ զամէն մէկ, որ ճանաչեն 'և գիտենան զամէն ցեղ ուրիշ ուրիշ. և ապա ստածեն և բժշկեն զայն ցեղն՝ որ ընդունի զա-

առողջութիւն, և այն՝ որ չունի ճարակ առողջութեան՝ 'ի զատ կենան։

Այժմ ասեմ զառաջին ցեղն, որ իւր պատճառն լինի տրտմութիւն և հոգս և 'ի սիրտ եղանելն, և այլ ամ՟ պատճառքն՝ զոր այլ յառաջդ ասացաք 'ի յերեք հոգիսն. և հասանի իւր տաքութիւն 'ի տեղեատանն որ ընդ երակն 'ի մէջ լինի։ Նաև իւր նշանն այս է, որ տաքութիւն միացեալ լինի, և իւր գոյնն թառամի, և դեղնութիւն անկանի. և 'ի յիւր շօշափելն գտանես սուր տաքութիւն. և իւր մաճասին երակն չիգտուի ամենևին փարփուտ 'ի տաքութենէ։

Բայց այս ջերմներուս ճանաչելն յիւր սկիզբն դժուար է. զի տաքութեն գէշ խառնուածքն յաղթել լինի ամ՟ մարմնոյն հաւասար, և հիւանդն չիմանայ թէ տաքութիւն կայ առ իւրն, և ոչ ցաւիլ տեղաց մին 'ի մարմինն, և ոչ սուժել, և ոչ տկարիլ մարմնոյն, և ոչ այլ նշաններն, զոր 'ի հետ բորբոսային ջերմերոյն լինին։ Զի այն օտար տաքութիւնն հաստատեալ է ընդ ամ՟ մարմինն, և չունի անդամ մի փարփուտ 'ի տաքութենէն՝ որ զգայ զայն զօտար տաքութիւն։

Ապա երբ սկիզբն լինի այս ջերմանս, նշանն այս է՝ որ երբ երեք օր անցանի, և տաքութիւնն միացեղ և յարակ[1] լինի 'ի մարմինն, և իւր տաքութիւն չէլինի ուժով, և այլ չլինի նշան՝ որ 'ի բորբոսային ջերմերոյն, զերդ զդողալն և զծարաւն և զնեղհոգութիւն և զփղձկելն և զեզուին չորանալն և զսևանալն և զմարմնոյն կոտրտելն և զխոցոտելն և զգլխոյն ցաւելն և զգօղին նեխահոտութիւն և զմաճասին երակին մեծութիւնն և զայլևայլ փոփոխելն, և ոչ 'ի յայլ ամ՟ ցեղ նշանացն՝ որ 'ի բորբոսային ջերմերն լինի. և իւր տաքութիւն՝ զոր ասացաք՝ խաղաղ լինի և հանդարտ և սեղմ, ապա գիտացիր՝ որ այն առաջին ցեղ հալումաշն է զոր թառամեցնող ասեն։

Իսկ երկրորդ ցեղ հալումաշն լինի յայնկից, որ երբ տաքութիւն հասանի 'ի բնական յերկրորդ գիճութիւն՝ որ 'ի միսն լինի և 'ի փոր կարսիքն, ապա այն նշաններն, զոր ասացաք 'ի յառաջին հալումաշն, 'ի յայս 'ի

1 Յօրինակին յէրան։

յերկրորդ ցեղս այլ 'ի յերևան և այլ 'ի բաց լինի ։ Մի յետ կերակուր ուտելոյն տաքութիւն յաւելուլ, հանց որ իմանայ հիւանդն, և գիտենայ որ տաքութիւն յաւելցաւ 'ի մարմինն, և դժարեցաւ ինքն ։ Եւ իւր պատճառն այն է՝ որ տաքութիւն արգելած լինին 'ի ներքս 'ի մարմինն զերդ քամի, և պահած լինի․ երբ մտանէ կերակուրն և ըմպելին, գտանեն զայն պահած տաքութիւնն 'ի մարմինն, և յերևան բերեն և հանեն 'ի լոյս ։ Որպէս գտանեմք զօրինակն 'ի կրին քարն․ զի յորժամ 'ի կրին քարն ջուր հասանի, նա զիւր տաքութիւնն՝ որ 'ի ներքսէ պահած ունէր, 'ի դուրս հանէ․ և զայդ բանդ Պղատոն ասաց ։ Նոյնպէս և այլ ասէ՝ թէ յորժամ կրին քարն 'ի ջուրն հասանի, նա բանայ զիւր գաղտ շնչահանքն, և զտաքութիւնն 'ի դուրս վաթէ ։ Բայց այլ ոմն ասաց 'ի բժշկական վարդապետացն՝ թէ հիւանդին կերակուրն կերակրէ զայն օտար տաքութիւն, շատցնէ և ուժովցընէ զինքն, և իւր վկայ այն է՝ որ երբ հալէ կերակուրն և անցանի, նա դառնայ տաքութիւն այլվի 'ի յիւր կերպն՝ որ յառաջն էր ։

Իսկ երրորդ ցեղ հալևմաշն, զոր քակող անուանեն, իւր պատճառն այն է՝ որ հասանէ իւր տաքութիւն 'ի չորրորդ գիճութիւնն՝ որ ընդ ամ մարմնոյն յօդուածոցն են, և զամ անդամս պինտ ունին բռնած ։ Բայց այսոր նշաննին այլ 'ի բաց լինին, և այլ 'ի յերևան․ զի աչքն խորանայ, և աչաց դուրն դարտկի, և 'ի յաչքն ճպուռ լինի, և կոպքն թուլանան, և 'ի վայր քաշվի, զերդ մարդոյ՝ որ կքայ և 'ի քուն կամի լինել․ և երեսաց գոյնն զերդ կրակաց մոխրի լինի, և ճակտին կաշին քաշուի, և քնքերն 'ի ներս երթայ, և փորն փարփուտ և դատարկ կերևնայ ։ Եւ այս ամ պատճառս այն է՝ որ բնական գիճութիւն դարտակեցաւ և մճարեցաւ 'ի մարմնոյն, հանց որ չմնաց իրք ։

Եւ իւր մաճաւին երակն վատուժ լինի և փոքր․ և երակին մարմինն պինդ լինի՝ որպէս զլար քաշած ։ Եւ երակին վատուժութեան պատճառն այն է՝ որ մարմնոյն զօրութիւն հատել և կտրել լինի ։ Եւ իւր փոքրութեան պատճառն այն է՝ որ հոգի կենդանութեան և արիւնն պակասել են, և սակաւ լինի յերակն ։

Եւ երակին մարմնոյն պնդութե պատճառն այս է՝ որ բնական գիջութիւնն հատել լինի և վճարեալ ՚ի մարմնոյն ։

Եւ իւր գոյին նշանն այն է՝ որ հիւանդութեան սկիզբն զերդ զտաշեղ և զքերուքս լինի ՚ի մէջ կարուրայն, և հիւանդութե վերճարն ձիթոյ նման լինի գունովն և վաթելովն ։ Եւ իւր պատճառն այն է՝ որ մարմնոյն ամ անդամունքն ՚ի հալ են ընկեր ։ Եւ երբ զայս ամ նշաններս տեսանես, գիտացիր՝ որ չէ բարւոյ . զի չընդունի զառողջութիւն, այլ ՚ի նոյն մեռանի ։

Եւ այլ գիտացիր՝ որ այս ցեղ հալեմաշ ջերմանս պատճառն այնոր համդիպի՝ որ մարմինն սաբ լինի և պատճառայոյզ, և իւր տեղն շատ հոգս լինի քաշել և շատ սուգ, կամ յայլ ցեղ ջերմերուն շատ աւուրք լինի յամել առ ինքն ։ Եւ այլ որ յերկար և բազում դատել լինի, և այն որ պաք շատ լինի կացել, և այնոց որ սակաւ կերակուր կերակրին, և այնոց որ ՚ի տաք երկիր լինին, և այնոց որ մարմինն տաք լինի, և տարօքն ընդ քսանին և քառասնին մէջն լինին, և այնոց որ շատ տաք դեղեր կերել լինին և խմել, և այնոց որ հին հազ ունին . և հաւասար ամ իրք, որ[1] տաքութի և չորութի առնեն, զի տաքցնեն և չորացնեն զմարմինն շատ ։ Եւ այդ ամենիդ վերճարն հալեմաշ ջերմն բերէ ։ Եւ այդ է պատճառնին և նշաննին, զոր ասացաք կարճառօտ վասն հալեմաշ ջերմանն, օգնութեամբն այ ։

Վասն երկրորդ ազգ հալեմաշին, որ ՚ի խիստ հովութենէն ընծայի, զոր Փիլիպպոս բժշկապետն ծերոց և ալևորաց հիւանդութի անուանէ ։ Եւ ասէ Փիլիպպոս բժշկապետն, եթէ այս ջերմն ՚ի խիստ հովութենէ ընծայի, հանց որ զբնական տաքութիւն և զխնաւորական գիճութիւն հատցնէ և ՚ի վճար բերէ ՚ի մարմնոյն . այլ վասն այնոր թողի զիւր պատմութիւն զիւր ցեղերուն, որ անբժշկելի են ։ Բայց ընդ այս հալեմաշս՝ որ ՚ի հովութենէ լինի, և ընդ այն՝ որ ՚ի տաքութենէ լինի և ՚ի չորութենէ, նշանն այն է՝ որ ՚ի հովէ լինի, մաճառն փառուծ լինի և յուլ, այնոր

1 Ցօրինակին պակասէ որ ։

համար՝ որ հովութիւն յաղթել լինի . և իւր գոյն իս-պիտակ լինի և նօսր . և իսպիտակութիւն 'ի հովութէ լինի , և նօսրութիւն 'ի չորութենէ լինի ։ Իսկ այդ բա-ւական է վասն հալեմաշ ջերմանն՝ որ 'ի հովութենէ լինի , վասն այն՝ զի չունի առողջութիւն ։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Վասն ստածման և բժշկութեան առաջին ցեղ հալեմաշ ջերմանն , որ 'ի տաքութենէ լինի ։

Այս իմքն ընդ երեք ցեղ բաժանի . և վասն իւր ճանաչելոյն՝ երբ մէն լինի և բորբոսայինն ջերմերուն 'ի զատ , և այնոց որ չունին երևան նոպայ , զոր այլ 'ի յառաջն ասացաք . ապա երբ ժամն և ժամանակն պատեհ լինի և աղէկ , սկիզբն արա ստածելոյ այս-պէս ։ Իսկ թէ կարիք լինի զմարմինն սրբելոյ , սրբէ խիարշամպով և թարանկուպինով և գարեջրով և քաղցր նռան ջրով . ապա թէ հետ աւուր մի կամ եր-կու՝ իշու կաթն տուր խմելու ։

Ապա թէ կարիք չէ զմարմինն սրբելոյ , դու սկիզբն իշու կաթն արա այս նշանօքս . գիտացիր որ էշն ջեր-մակ լինի և առողջ , և ազատ յամ ցեղ հիւանդու-թենէ . և աւուրքն մատղաշ պիտի , և մօտ 'ի յօրերն լինի ծնած , և իւր կաթն իսպիտակ և հաւասար լի-նի . երբ 'ի վերայ ըղնկանդ կաթեցնես , չիլինի նօսր՝ որ վաթի , և ոչ թանձր՝ որ չիսփռի ։ Իսկ դարմանէ զէշն աղէկ խոտով որ դալար լինի , և հովային բան-ջարներով , որպէս հազար , և դդմի տերև , և հինտիպայ՝ խառնած ընդ դալար գինձն , և այլ պզրղատունի կոթ[1] , և գարի լուացած ցամաքեցուր և ապա կեր-ցուր ։ Ապա առ իւր կաթնէն . 'ի յառաջին օրն տուր կէս լիտր , և հետէն յաւելցուր 'ի կաթն ըստ ուժոյն

1 Յօրինակին կոթ ։

հիւանդին , և տուր զայդ 'ի յար , մինչև լուծանի և ոչ կապի ։ Յետ այն կերակուր տուր թաղթ և մաշ և վլխոռն՝ որ է ծմել , դդում և հազար ․ զամէնն նշի ձիթով տուր ․ և խմելոյ մուզ նռան ջուր տուր ։

Եւ ապա հետ կերակրելն սակաւ ժամ անցցէ , և յաւազան նստի՝ որ ջուրն քաղցր և յիստակ լինի և եղկ , և եփած լինի 'ի յինքն մանուշակ և դդմի տերև և հազարի տերև և խպխտակ գարի փերձկած ։ Եւ երբ ելանէ յաւազանէն , օծանէ զմարմինն լիլուֆարի ձիթով և մանուշակի ձիթով և քաղցր դդմի ձիթով ․ և ապա յետ այնոր օծանէ զկուրծքն մանուշակի ձիթով՝ որ ընդ խպխտակ մոմ հալած լինի , որ պահէ զգիճութիւնն որ շահեցաւ 'ի կերակրոյն և աւազանին ջրէն ։

Ապա թէ հիւանդին մարմինն ախորժայ այլ աւելու գիճութի քան զայդ որ ասացաք , ապա առաջ քան որ յաւազան մտանէ՝ կթել տուր 'ի վերայ գլխոյն կնկան կաթն կամ իշու կաթն կամ այծու կաթն ․ զի այդ կաթներս խիստ գիճացնեն զհիւանդն ։ Ապա թէ հիւանդն չժուժէ կաթն կթելոյն , դու զկաթն 'ի յաւազանին ջուրն խառնէ ․ բայց 'ի յաւազանն շատ մի յամեցներ , զի աւազանին եղկ ջուրն վատուժցնէ զմարմինն ։

Ապա յառաջ քան որ յաւազանն մտանէ , չէ պարտ մարձել որ ինչ ցեղ ձիթով ․ զի խծկէ և կալնէ ըղտաղտ շնչահանն մարմնոյն , նա չիընդունի զաւազանին գիճութիւն ։ Եւ զայդ՝ զոր ասացաք՝ 'ի յար արա ․ զի այդ խորհուրդդ շահեցին զմարմնոյն [1] բնաւորական գիճութիւն ․ և արա՛ զայդ յաւուրն երկու հեղ ․ զմէկն յետ կաթինն տալոյն՝ յառաջ քան զկերակրոյն ուտելն , որ զկաթին գիճութիւնն շահի և պահէ 'ի մարմինն ․ և յետ այտոր տես զմարմինն հիւանդին ․ եթէ 'ի յաւելի խլտերոյն՝ որ է չորս նիւթերն՝ սուրբ լինի , համց որ չընդունի զբորբոսելն , ապա տուր՝ որ խմէ կովուց թան , զոր ընիկ սրբած լինի 'ի կարագէն ․ այլ կովէն կարմիր պիտի ․ բայց մի յաճախ տաս որ չիձանձրանայ 'ի թանէն ։ Եւ զթանին չափքն կէս

1 Յօրինակին ըմարմնն ։

լինար տուր, ապա թէ տեսանես զուժն՝ որ կարող է, դու յաւելցուր 'ի թամնին ըստ ուժոյն. բայց քիչ քիչ թող խմէ, համեց որ ամէն հեղ նուկլ մի լինի կամ պակաս. ապա թէ տաքութիւն շատ լինի և ուժով, դու տուր հետ թամնին զայս ղուրսս, որ է այս:

Պատրաստ տապաշէրի հալ:

Առ տապաշիր չորս դրամ. վարդ եօթն դրամ. խիարի կուտ կոտուած, և փրփրեմի և դդմի կուտ կըտւած, հազրի հունտ, քանհրիպար երեք երեք դրամ. զամէնն աղա և մաղէ, գառնալեզուի ջրով շաղվէ, և ղուրսեր արա, և տուր հետ թամնին: Այս զայս արա երբ մարմինն սուրբ լինի 'ի բորբոսային նիւթոյն:

Ապա թէ 'ի մարմինն այլ ցեղ տաքութիւն լինի, և մարմինն չէ՛ոք, և լինի յինքն նիւթեր սար, որ այլ ջերմն կամի ընծայել, ապա հոտ պարտ է պատրաստ կենալ 'ի կաթներոյն և 'ի թամնէն: Իսկ թամնին փոխան գարեջուր տուր, յոր եփած լինի կենդանի խաչեփար, որ 'ի մանր և 'ի մեծ ճանկերոյն որբած լինի, և լուացած լինի աղէկ քաղցր ջրով և աղով և ընջխած լինի. առ 'ի յայդ գարեջրէն չորս նուկլ, և մուղ նուան ջուր մի նուկլ. և յայս ղուրսէս մի մրթխալ, զոր այժմ գրեմ:

Պատրաստ հալ՝ որ օգտակար է ուլէն ջերմանն:

Առ գառնալեզու երեք դրամ. հայ կաւ չորս դրամ. վարդի կոնգմէն յիստկած վեց դրամ. սերկեւիլի կուտ յիստկած, դդմի հունտ յիստկած, փըրփրեմի հունտ վեց վեց դրամ. մարուխի քամուքն տասն դրամ. տաճիկ կուէզ, քիթրայ և նշայ երեք երեք դրամ. սեխի կուտ եօթն դրամ. զայս ամէնս աղա և մաղէ, և շաղվէ պղըղատուենի լուապով, և ղուրսեր արա, և 'ի շքի չորայուր, և տուր աղցած և մազած մի մթխալ՝ քաղցր նուան ջրով և խիարի ջրով անօթեց, օգտէ հալեմաշ ջերմանն, և այն ջերմանն՝ որ սիլ կոչի: Այս կերակուր՝ մաշ տուր և դդում և վլխօտն և թաղթ, որ լինի նշէ ձիթով. և երբ ծա

րաւենայ, քաղցր նուան ջուր տուր. և ընդ երեկածքն՝ օծանել զմարմինն լիլուֆարի ձիթով, և քաղցր դդմի ձիթով. զիւր տունն և զպառկելըքն հով արա, և ցանել վարդ և ուռու տերև. թէ վարդ չիգտանի, այգւոյ տերև ցանել ։

Ապա թէ հիւանդն նուաղի, դու օծէ 'ի մարմինն հով լախլախով, որ են այս ջրերս ։ Առ խնծորի ջուր, և մրտենոյ ջուր, սերկևիլի և վարդի ջուր. չոր վարդ և քաֆուր և զաֆրան. աղա՛, և 'ի ջրերդ խառնէ, և 'ի բան տար ։ Ապա թէ խիստ վատուժի հիւանդն, դու մսի ջուր տուր այս նշանօքս ։ Առ ուլու միս 'ի թիկանցն և 'ի շլեցն և 'ի կողոյն, մանր կտրատէ և 'ի քարէ պտուկ արկ, և աղն պակաս արա, և մեղմն կրակով եփէ. և որչափ 'ի մսէն ջուր ելանէ, դու հետէն առ զջուրն, 'ի զատէ յաման արկ, մինչև ցամաքի միսն. ապա սակաւ մի անուշահոտ գինի, և իւր կիսոյն չափ խնծորի ջուր. զայսոք 'ի մսին ջուրն խառնէ, և մեղմ կրակով սակաւ մի եռցո, և ապա տուր կում կում որ խմէ. զի այդ ջուրդ խիստ ուժովցնէ զհիւանդն ։

Եւ այլ ջանք արա ամէն հնարով որ չիլուծի բնութիւնն. զի թէ դեղին տիրոջն, և սևին տիրոջն բնութեան լուծանելն, նա շուտ կորնչելն մահուամբ. ապա թէ լուծումն հանդիպի, զայս ղուրսս տուր. զի խիստ օգտակար է դեղին տիրոջն՝ որ լուծ ունենայ ։

### Ղուրս կաւի՝ կապող ։

Առ հայ կաւ տասն դրամ. շահպալուտ և վարդ չորս չորս դրամ. և տեսայ 'ի յայլ նուսխայ՝ որ նշաստակ և փրփրեմի հունդ դնեն չորս դրամ. տապաշիր երեք դրամ. թրթկձի հունդ կտված վեց դրամ. քահրիպար երեք դրամ. զամէնն աղա և մաղէ, և մուզ սերկևիլի կամ խնծորի ջրով շաղւէ, և ղուրսեր արա, և տուր մի մթխալ 'ի յայդ ղուրսէտ տանձի ջրով կամ սերկևիլի ջրով ։

Եւ երեկոյեն տուր զայս դեղս ։ Առ պզրղատուն աղընձած մի մթխալ. և այրած խեցդետին մի դրամ.

տաճիկ կուէզ աղընձած մի դրամ. աղա և մաղէ, և տուր մուզ ծորի ջրով կամ նռան։ Այլ կերակուր տուր Թրթկիճ եփած և տապկած, որ լինի 'ի հետն նուշ աղընձած։ Այլ առ փերճոկած սոխ և աղընձած, և հեղ մի եփէ, և ձգէ զջուրն, և ապա արկ 'ի վերայ մուզ նռան ջուր կամ սերկևիլի կամ աղտորի ջուր, և այլվի եփէ, և տուր որ ուտէ։ Այլ այլ տուր փշատի փոխինտ, կամ նռան հատի փոխինտ 'ի հետ պաքսիմիտի. և զայս կերակուրքդ և ըմպելիքդ յայնժամ տուր՝ որ երբ չիլինի հազ։

Այլ թէ հազ լինի, տուր խմելոյ տաճիկ կուէզ և հայ կաւ. և կերակուր՝ ոսպան փոխան՝ հացի փշրուկ տուր աղընձած նշով. և սերկևիլին ջրի փոխան՝ մրտի քամուքն տուր, զի մրտի քամուքն արգիլէ զլուծումն, և օգտէ հազին այն սակաւօք քաղցրութ̃ն՝ որ 'ի յինքն կայ։ Ապա թէ հանդիպի որ յաղիքն ելունդ բան ունի, դու հոկնայ արա այս նշանովքս։

### Հոքնայ, որ օգտէ ելունդի՝ որ 'ի յաղիքն լինի։

Առ գառնալեզվի ջուր, և բրսի անդատարի ջուր, որ յարապն հովուի բիր կոչեն, և ձուի դեղնուց, և տաճիկ կուէզ, հայ կաւ և հռոմ մատնեհար կաւ, և պրտուի ջնջադիր այրած, խալիտաճ. զամէնն 'ի մէկ տեղ ժողվէ, և հոկնայ արա որպէս ըռաամն է։

### Այլ հոքնայ նոյն ցաւուն։

Ապա թէ այդ ջրերդ չիգտուի, զոր այլ յառաջդ ասացաք, դու իւր փոխան՝ փրփրեմի ջուր առ և Թըռթրկճի ջուր, և մատնեհար հռոմ կաւ, և աղըրաց արիւն, նշի ձէթ. զամէնն հաւաքէ և հոկնայ արա. զի այդ հոկնատ խիստ օգտակար է, օգնութ̃ն տ̃յ։

Մահամատի Օպքարիան ասէ՝ թէ այս ջերմն երեք ցեղ լինին, զոր այլ յառաջդ ասացաք, Թառամեցնող և բարակն և քակողն։ Առաջին ցեղն, որ է Թառամեցնողն, իւր պատճառն զերդ միօրեայ ջերմանն լինի. և իւր նշանն այս է՝ որ գոյնն դեղին դառ-

նայ, և ջերմն հանապազ 'ի կերուած ժամն գայ, և 'ի քուն լինելոյ ժամն. բայց մարմինն շատ տաք չիլինի, և 'ի մարմնոյն կաշին չորութի ցուցանէ :

Այլ իւր ստածումն այս է՝ որ հանապազ գարեջուրն 'ի բան պահէ : Այլ երբ տաքութիւն անցանի, դալար մանր ձուկն խորված ուտէ. և 'ի խաւարտանուն զհոնն և զգիճայլին 'ի բան պահէ. որպէս հազարն և փըր-փրեմն, զդալար գինձն և զխորփըլըստն, և զոր նման սոցին : Մինոյն օր 'ի բաղնիս մտանէ, 'ի հով տուն նստի, զմարմինն մանուշկի ձիթով օծէ, և հոտոտայ 'ի հով և 'ի գիճային ծաղկանցն, և հով սպեղանիք 'ի վերայ կրծոցն դնէ, և ըստ ամոքն՝ որ 'ի կերակրոյն թե-թև լինի, յայնժամ՝ ջերմանն տաքութիւն խիստ լի-նի. զհով և զգիճային ձիթերն 'ի քիթն արկանէ, և որչափ կարէ զքուն լինելն ջանայ. և ոչ ինչ դիմօք զանձն չդառնէ. 'ի տաք տանէ և 'ի շող օդէ պատ-րաստ կենայ : Ապա թէ այս ջերմն տաքութի և այ-րեց լինի, զքաֆուրին ղուրսն 'ի բան պահէ սակաւ քացախով՝ ընդ ծագել արևուն :

Սահակն ասէ՝ թէ իւր ստածումն այս է՝ որ գարե-ջուր խմէ. և 'ի քնուն ժամն պղըղատուն ճուլապով խմէ. զկերակուր շատ թող չուտէ, մանաւանդ 'ի յամռան աւուրքն՝ և ամ տաք իրաց պատրաստ կե-նայ. հով ջուր խմէ քիչ քիչ, և թանայ քթանն 'ի վար-դեջուրն՝ որ լինի քաֆուր և սանտալ, և դնէ 'ի վե-րայ կրծոցն. և կերակուր դդմի մուզավարայ և սպա-նախ կերցուր, և թաժայ ձուկ խորված. և քան զա-մենայն ինչ օգտէ խաշխաշն՝ որ գարեջրով լինի ե-փած : Այլ երբ տաքութիւն պակսի, հաւձագ՝ փերճ-կոտած գարով 'ի բան պահէ, և պանդարայ ջուր հով ճուլապով խառնած, և բանջրնուն հազար և դալար գինձ կերակրի : Ապա թէ ջերմն զօրաւոր է, կերա-կուր՝ թերխորով ձուն դեղնուց տուր, շատ օգտէ աստուծով :

Մահամատ Զաքարիայն ասէ վասն ստածման և բժշկութեան երկրորդ հալևմաշ ջերմին, եթէ այս երկրորդիս բարակ անուանեն, և երրորդն՝ որ քակող, դժար ողջանան. մանաւանդ երրորդն : Այլ իւր պատ-ճառն այն է՝ որ բնաւորական տաքութիւնն և օտար

ջերմն զմնաւորական գիճութիւն 'ի մարմնոյն քաղեն և հատցնեն :

Իսկ երկրորդ հալեմաշն, որ է բարակն, նշանն այս է՝ որ աչքն 'ի գուբն անկանի, և մարմինն նօսրանայ և բարկնայ, և օր ըստ օրէ վատուժի և նիհարանայ. վասն այդր պատճառանացդ անուանեցին բարակ զայս ջերմն : Իւր սատածումն այս է՝ որ օրն երկու երեք հեղ 'ի բաղանիս մտէ, և 'ի տաք տուն չիմտէ, և ամենեւին չիքրտնի, և գարեջուր խմէ. և յետ երկու պահու՝ եղկ աւազան մտէ, և հանապազ 'ի հով և 'ի գիճայինում հոտոտայ, որպէս յառաջն ասացաք :

Ապա թէ ձմռան աւուրքն հանդիպի, 'ի կրակի տաքութենէ և 'ի ծխէ պատրաստ կենայ. զի հոտն օգտակար դեղն է այս հիւանդիս. և օծանելոյ տեղիք և սպեղանեաց՝ հոտն օգտէ, զի զխիրտն հով պահէ : Այս պատեհ է՝ որ զգլուխն ծածկած պահէ, որ զուգամ և նուզլայ չիպատահի. և 'ի քիթն հով և գիճային ձիթեր արկանէ. և շատ 'ի քուն լինելն օգտակար է :

Ապա թէ գոլն զերթ զձէթ լինի, զհովային և ըղգիճային դեղերն 'ի բանի պահէ : Ապա թէ տաքութեան նշաննին խիստ լինի, զտապաշիրին զուրմն տուր, և զմնութիւն կակղացո դամնի ջրով և թարանկուպինով. շատ օգտէ սատուծով :

Սատածման երրորդ հալեմաշին :

Իսկ եթէ երրորդ հալեմաշն լինի, զոր քակոզն անուանեն, զի քակէ և հալէ, և դատարկէ զճրագուն և զմիսն, և զերրորդ մնաւորական գիճութիւն. և վասն այդր պատճառանացդ անուանեցին քակող : Այս իւր նշանն այս է, որ ըղուղն զերդ զայծու ծուխն, և փոքիցն խուտումն 'ի դուրս ցցվի, և երկու ուսն բարձրանայ, և ճակատին կաշին քաշած և չոր ցուցանէ, քներն և երկու աչքն 'ի ներս երթան :

Իւր սատածումն այս է՝ որ զկերակուրն թեթև և դիւրահալ ուտէ, որ անուշահատոք եփած լինի, զերդ ուլի միս, հաւու ձագ, և գառին ողաշար՝ սխտանն ջրով. և զկնի այսոր՝ խնծորի ջուր, և քաղցր և

թթու սերկևիլի ջուր ընդ սակաւ մի գինի խառնեալ, և գերմակ հաց փշրեալ խառնել և ուտել, և զանուշահոտերն անպակաս 'ի բանի պահել: Ջանայ որ փորն խիստ չիլուծանի. զի թէ փորն լուծանի, շուտով կորնչի. և հանապազ զստամոքն և զփորոտի ջուրն ընդ յիրար խառնել, 'ի վերայ սրտին և լերդին պահել. զմանուշակի ձէթն և զնիլուֆարի 'ի գլուխն և 'ի յանդամն հանապազ օծանել. և ամենևին քաղցած և ծարաւ չիկենայ, տրտմութիւ և հոգս չիտանի. զի այս ցաւ և խուրեանց նմանիքն ահոկեն. և զկերակուրն պարկեշտ տուր, զերդ որ այլ 'ի յառաջդ յիշեցաք, օգտակար է թէ ցած կամի:

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Պատմութիւն և նախագիտութիւն վասն սլին ջերմանն, որ է թոքոյն խոցնալն և մաշիլն:

ՍՈՌՈՄՆ ԵՓԻՆԷՍԽՈՓ անուանէ, և տաճիկն սլ կոչէ. այլ գիտացիր որ սլին ջերմն նման է դիկին ջերմանն. բայց սլին ջերմանն հազ լինի, զի իջանէ խլտն, որ է նիւթն, 'ի գլխոյն 'ի կուրծքն և 'ի թոքսն, նոյնպէս և յամ մարմնոյն' 'ի ձեռն հազալոյն' արկնուի նիւթս. զի հազալն յաղթէ մարմնոյն, և շարժէ և բերէ 'ի կուրծքն և 'ի թոքսն, և արգիլէ զհիւանդն 'ի քուն լինելոյ և 'ի հանգիստ կալոյ:

Յոհաննն ասէ, եթէ իւր պատճառն 'ի սուր գիճութենէրոյ լինի' որ 'ի թոքքն իջանէ, կամ 'ի կուրծքն ժողովի, և խոցացնէ զտեղիքն' ուր հաւաքի, և զշարաւն ընդ ամ կուրծքն ցրուէ, և կամ 'ի կէս կըրծոցն լինի: Իսկ երբ թոքքն խոցնայ, իւր նշանն այն է' որ մարմինն նիհարանայ, և կակուղ տաքութի լինի զերդ հալևմաշին, և եղենկունքն ծռին, և ոտներն ուռչին, վասն այնոր որ գիջութիքն հալեցան. և հազալով ընդ խուչակն կուզայ հոտած, և մէջ

ընդ մէջ արիւն. և կրծոցն խոցնալուն նշանն այն է՝ որ տաքութին այլ շատ լինի, և շունչն կարճ լինի, և կուրծքն ցաւի, և հազն չոր լինի:

Փօլօս ասէ, եթէ այս հիւանդութիւս հետ բրսխմին լինի, և հետ զուգամին, կամ հետ շատ նուզլայի, որ 'ի գլխոյն իջանէ, կամ հետ յերկարօրեայ հազի, կամ յետ շատ արեան ձգելոյ, որ զթոքսն կամ ըզկուրծսն խոցացուցեալ լինի. և 'ի կերակրոյ միտքն փակեալ լինի: Այլ ստածումն այս հիւանդութեանս դժուար լինի. զի յորժամ թոքսն խոցանայ, չողջանայ իւրովի. զի համապազ 'ի շնչոյն յառն և 'ի տուրն կայ և շարժի, և զերդ զգարբնի փուքսն զհով զօդն առնու և 'ի սիրտն ուղարկէ, և զտաք օդն առնու 'ի սրտէն և 'ի դուրս ուղարկէ: Ապա թէ ժամ մի թոքին շարժելն դադարի, նոյն պահն սիրտն այրի, և 'ի յայնր յայրելոյն 'ի տաքութենէն՝ մարդն մեռանի. ապա 'ի յառաջ քան զայն՝ որ այս հիւանդութիւս զօրանայ, պարտ է ստածել և բժշկել:

### Սառն ստածման և բժշկութեան ոլէն ջերմանն [1]:

Որդ պարտ է 'ի յայս ջերմանս 'ի ստածումն և 'ի բժշկութիւն, որ քննես աղէկ և գիտենաս որ չլինի 'ի հետն այլ ցեղ ջերմն 'ի թոքթոսայինն ջերմերոյն: Ապա թէ ուժն կարող լինի, ժամանակն և ժամն 'ի պատեհ լինի, իւր առաջին ստածումն այն է՝ որ 'ի բասլլիկէն երակ առնուս 'ի յայն դեհն, ուր զցաւն իմանայ հիւանդն: Ապա թէ չիմանայ ցաւ ուրեք, զերակն 'ի ձախոյ ձեռն առ, վասն այնոր՝ որ աջոյ դեհ չվատուժի: Ապա թէ տարիքն և ժամանակն հիւանդին և ժամն տարւոյն չօգնեն երակ առնելոյն, դու ապիկկիս առ 'ի թիկնամէջքն 'ի վերի դեհն. և հան արիւն ըստ ուժոյն, եթէ երակ առնուս, և եթէ ապիկիք:

Ապա թէ ստամոքսն վատուժ լինի, կամ սիրտն խափական լինի, որ է սրտին դողալն և թափթափիլն և տրոփելն, ապա զապիկկիքն 'ի յոլոքին 'ի դրուցի դեհն

1 Ցօրինակին գրած էր ջերմանն. փլուխն է:

դլոր, և յառաջ շատ քաշել տուր, և ապա տուր կարել և արիւն հանել: Ապա յետ երակ առնելոյն օր մի կամ երկու օր հարիրայ տուր այս նշանօքս:

Հարիրայ գարւոյ, որ օգտէ ուլին:

Առ գարի կորկոտ փերճոկած, և չոր բակլայ փերճոկած, և սակաւ մի քիթրէ, և սերկևիլի հատիճ կտուած, և նշի ձէթ կամ քաղցր դդմի ձէթ, և խեցգետին՝ որ է խեչփար, այն նշանօքն՝ զոր այլ յառաջդ տասցաք. զայս զամէնս հաւաքէ, և հարիրայ արա, զերդ իւր ռասմն է, և տուր. օգտակար է թէ ած կամի:

Ապա թէ հիւանդն 'ի բերանն չորութիւն իմանայ, կամ 'ի կուրծքն խոշորութի՜ւ և խուչոտել լինի, տուր զպզրկատունին գլուապն, կամ զթեփին ջուրն, կամ դառնալեղուի ջուր հում և առանց եփելոյ՝ նուկի մի ընդ երկու դրամ դդմի ձէթ, կամ դրամ մի դառփուզի կտի ձէթ, կամ երկու դրամ մանուշակի ձէթ: Եւ իրիկունն տուր խմելոյ զայս դեղս: Առ պզրկատուն և տաճիկ կուէզ և հայ կաւ, և սերկևլի լուղապով խառնեալ. այլ զհայ կաւն վասն այնոր տանք, որ զգիճութեններն՝ որ 'ի կուրծքն ժողոված՝ ցամաքեցնէ. և շատ օգուտ է:

Ապա թէ հիւանդն՝ է որ 'ի կրծոցն արիւն թքանէ, տուր զայս կուրսս՝ որ այժմ գրեմք, որ օգտէ օգնականութեամբն այ՝ ուլին, որ արիւն թքանէ:

Կուրս քահրուպայոյ, որ օգտէ ուլին՝ որ արիւն թքանէ:

Առ հոռոմ մաստեհար կաւ երեք դրամ. քահրուպայ վեց դրամ. տապաշիր, և քիթրէ, և նշաստակ հինգ հինգ դրամ. տաճիկ կուէզ, և մրտենւոյ պտուղ, և մարուխի քամուքս եօթն եօթն դրամ. և փերփերանի հունդ տասն դրամ. զայս զամէնս աղա և մզէ, և շաղէ դաղար վարդի ջրով. ապա թէ չգտանես վարդ, դառնալեղուի ջրով, կամ պզրկատունի ջրով, և կուրսեր արա զամէն մէկ դրամ մի, և 'ի շքի չորացո. և տուր յամէն օր կուրս մի աղցած և մաղած

քաղցր կօղայի ջրով։ Եւ կերակուր փերփերան տուր եփած, և փերձոկած ոսպն դդմով, և մաշ փերձո-կած և աղընծած, և իւր ըմպելիքն կորտած դդում, և կօղայ առանց կեղևելոյ։ Եւ զայս դեղս յար 'ի թե-րանն պահէ։ Ու տաձիկ կռէզ և հայ կաւ, և կերա-կուր դալար ձուկն տուր, զոր 'ի քարքռուտ տեղաց և 'ի խիստ գնայուն ջրէ որսան. այս ձուկն նոյնպէս և դկլին տիրոջն օգտակար է։

Ապա թէ կարիք է որ ուժվորցնես զմարմինն, և իւր ջերմն չլինի ուժով, ապա տուռայճ տուր, և հաւու ձագ, և կաքվու ձագ, և տահուճ, և ուլու ոտներ և արտալայնի՝ դդմով եփած և տանուոյ խուպազով, և վլիտօն և սպանախ և թախտ եփած մաշով, և գա-ռին ոտներ եփած փերձոկած գարւով։

Ապա թէ ժամանակն 'ի պատեհի լինի, իւր աղէկ ստածումն այն է՝ որ խշու կաթն տաս, զերդ որ այլ 'ի յառաջդ ասացաք վասն դկլին, կամ տուր մաքրոյ կաթն ջրով եփած այս նշանօքս։ Ու մաքրաց կաթն կէս լիտր՝ 'ի պահն որ կթեն. և արկ ջուր 'ի վերայ մի լիտր, և եփէ ցուր ջուրն հատնի և կաթն մնայ. ապա տուր որ խմէ կում կում։ Յետ այս դեղիս՝ տա-բակլայի աղուր երեքնուկի, և չէկ չամիչ 'ի հատձէն հանած և նշի ձիթով եփած՝ երկու նուկի, և սպի-տակ գազպէն ջրով տորրած. զայս զամէնս կաթումն 'ի բանի պահէ։ Եւ զայս հապս գիշերն և ցերեկն ներքև լեզուին պահէ, զի օգտակար է սլին։

Հապ սուսալ, որ օգտէ սլին։

Ու փերփերանի հունդ հինգ դրամ. տաձիկ կռէզ և քիթրայ երեք երեք դրամ. կօղայի հունդ կոլած չորս դրամ. զայս զամէնս աղա և մաղէ, և շաղվէ սերկևիլի կոլին լուապօմն, և մանր և տափակ հապեր արա. և յար ներքև լեզուին պահէ։

Ապա թէ խօլմ 'ի կրծոցն դժար գայ, և դժար թքանէ, դու տուր զուփայի մապուխն, և իւր նշանն այս է։

### Մատղուխ զուֆայի, որ օգտէ ուլին ։

Առ յունապ քսան հատ, և սպստան յիսուն հատ. սպիտակ թուզ եօթն հատ. փառխս աւուշան՝ որ է ձարխոտ՝ եօթն դրամ. մարուխի տակ կեղևած տասն դրամ. զուփայ հինգ դրամ. զայս ամէն 'ի յաման մի արկ, և հինգ լիտր ջուր արկ 'ի վերայ, և եփէ ցուր մնայ երկու լիտր ։ Ապա առ խուրմէն չորս նուկի. և մնուցած մամնուշակ տասն դրամ. և քաղցր նշի ձէթ երեք դրամ. զայս զամէնս յիրար խառնէ և տուր որ խմէ ։

Այլ պարտ է գիտենալ զդկլին տէրն և զսլէն՝ յանկարծ ժամ մի ուրդլի՝ որ կապէ փորն, հանց որ կարէք լինիս 'ի կակղցնել. ապա տուր զայս մատղուխս ։

### Մատղուխ լուծող՝ ուլին ջերման ։

Նշանք մատղուխի որ կակղցնէ զդկլին և զսլէն տիրոջն բնութիւնն ։ Առ խիարշամպէ 'ի կոտէն ընտրած հինգ դրամ. և չոր մամնուշակ վեց դրամ. և չէկ չամիչ 'ի հատձէն հանած տասն դրամ. և յունապ տասն հատ. զայս զամէնս եփէ հինգ լիտր ջրով, մինչև մնայ կես լիտր ։ Ապա քամէ և արկ 'ի ներքս տասն դրամ թառընկպին, և անձրուէ, և այլուվայր քամէ, և տուր որ խմէ զերդ այլ մատղուխի ռասմ է ։ Ապա թէ չկակղնայ այտով, զայս հուքնայս արա՝ այս նշանօքս ։

### Հուքնայ՝ ջերման ուլին օգտակար ։

Առ սպիտակ գարի փերձոկած և ձարձատ արարած, և չոր մամնուշակ, և սպստան, և յունապ մի մի ափ. սպիտակ տուղտ 'ի կտաւի ծրարած հինգ դրամ. զայս զամէնս 'ի պտուկ մի արկ և եփէ այնչափ[1], մինչ որ մնայ մի լիտր. ապա քամէ և արկ 'ի

1 Յօրինակին պակասէր այնչափ, և թողեալ էր գաղափարն տեղի ։

ները կարմիր շաքար տասն դրամ. և հունկնայ արա զերդ իւր ռասմն է. օգտէ աստուծով:

Յոհանայ բժշկապետն ասէ, եթէ այս ջերմն՝ որ հետ թոքին խոցնալոյն լինի, և իւր պատճառն 'ի սուր գիճութեներոյ լինի, որ 'ի ներքս 'ի թոքսն հաւաքին և կամ 'ի կուրծքն, և հազալովն և 'ի վեր բերելովն խոցցընէ, 'ի շարաւ և 'ի յարիւն դարձուցանէ, և տկարացուցանէ զհիւանդն զերդ հալեմաշ ջերմն, վասն այդ պատճառանացդ յիշեցաք և շարեցաք [1] ընդ հալեմաշ ջերմանն:

Եւ իւր նշանն այս է, որ երբ թոքքն խոցնայ [2], հիւանդին մարմինն նիհարանայ, և հանապազ կակուղ տաքութի լինի, և հազալով ընդ խուխին ելանէ այլ շարաւ և այլ արիւն, և փրփրային խօխ արունով, և շունչն կարճանայ, և կուրծքն ցաւի, և ժամ ժամ չոր հազայ: Եւ իւր չողջանալոյն պատճառն այն է, որ թոքքն տուն է շնչոյն, 'ի յառ և 'ի տուրն 'ի շարժելոյ չունի դադար, և ամենևին չունի հանգիստ՝ որ դեղն դադար առնու և գործէ յինքն, եփէ և ողջացուցանէ. և վասն այդր պատճառանացդ ստածումն դժար ընդունի: Եւ մէկ այլ պատճառ այն է, որ թոքն պալղամին տունն է և դադար և տեղի, և հանապազ յինքն գիճութի հաւաքած լինի. և ա̃մ խոց՝ որ ոչ չորանայ, չողջանայ, և զթոքսն ոչ ինչ դիմօք չորացնել չէ հնար: Եւ այլ որ դեղն 'ի յինքն չէ 'ի հասանել, զի ճանապարհն յերկար է. ապա վասն այդ պատճառանացդ այս հիւանդութիս դժար ողջանայ:

Եւ երբ հետ թոքոյն խոցնալոյն ջերմ լինի, այլ դժար է խիստ. զի այս երկու հիւանդութիս հակառակ են միմեանց. զի ջերմանն ա̃մ ինչ հով և զէճ պիտի, որ հանդարտի և պակասի. և խոցն՝ որ 'ի թոքսն լինի՝ ա̃մ ինչ տաք և չոր պիտի, որ ցամաքեցուցանէ և ողջանայ. և վասն այդ պատճառանացդ ստածումն և բժշկութի դժար լինի. ապա պատեհ է յառաջ զջերմն ստածել և բժշկել: Ապա թէ այս հիւանդութեա սկիզբն լինի, իւր ստածումն այն է, որ 'ի

1 Օրինակքն շարծեցաք:

2 Օրինակքն թոքքն խոցն խոցնայ:

բամբիշկէն երակ առնու 'ի յայն կողմն՝ ուր զցաւն իմանայ . ապա թէ զկեփալին զերակն առնու, որ զգլուխն սրբէ՝ պատեհ է . ապա թէ ուժն զօրաւոր լինի, այս մտապուխուլս զնուաթին կակղցո :

### Մաղպուխ, որ օգտէ ուլին :

Առ խիարշանպէ, և մանուշակ, և յունապ, և չամիչ 'ի հատձէն հանած, և սպստան, և թառնճպին . զայս զամենս հաւաքէ, և ջրով եփէ . պարզէ, և մնուցած մանուշակով քաղցրացո . և յամէն օր սակաւ սակաւ խմել տուր : Ապա թէ 'ի կուրծքն չորութի լինի, գառնալեզուի ջուր տուր մանուշակի ձիթով և դդմի ձիթով . և 'ի քուն լինելոյ ժամն պզրկատուն, և տանձիկ կռէզ, և հայ հող՝ սերկևլին հատձին լուղապօփն խմել տուր . և զուփայի շարապն օգտէ :

### Աղեղանէք կրծոյ ցաւոյ :

Ապա թէ խոցն և ցաւն 'ի կուրծսն լինի, այլ անհաւ և հեշտ է քան զթոքին . և իւր ստածումն այն է՝ որ սպեղանիք 'ի բանի պահես, որ զհիւանդութե զգլուխքն հալելով արձակէ, զերդ գարեալուր և չոր թուզ, աղաւնւոյ ծիրտ և բօրակ՝ զոր նիտրոն ասեն . զայս զամենն աղա և մաղէ, և ջրով եփէ, և 'ի վերայ կրծոցն դիր . օգտէ սատուծով :

Փօլօս ասէ 'ի նոյն պատճառքդ և 'ի նոյն նշանքդ, եթէ թոքերն խոցնալն հետ բրսամ հիւանդութե լինի, որ է շաւսայ, և կամ հետ շատ զուգամի և նուզլայի՝ որ 'ի գլխոյն 'ի վայր իջանէ, և կամ հետ երկարօրեայ հազի լինի, և կամ 'ի շատ վերաբերութե արեան՝ որ ընդ խուչակն գայ, որ զթոքսն կամ զխուլուչակսն խոց առնէ : Եւ իւր նշանն այն է՝ որ ջերմն 'ի յար լինի, և մարմինն նիհարանայ, և եղնկունքն ծալին վասն գիճութեցն հալելոյն, և 'ի ժամ հազալոյն շարաւ հոտած բերէ ընդ խուչակն, և 'ի յատներն այտոց բնկնի, և կերակրին մտքն փակին, և ողջնութի դժար ընդունի . զի երբ թոքն խոցնայ, ամենևին չողջանայ . զի հանապազ 'ի շնչոյն առնելն և 'ի

տալն դադար չունի, զերդ զզարըմնի փուքմն զՀոգին 'ի յինքն քաշէ, և 'ի սիրտն զրկէ, և զտաք օդն 'ի սրրտէն առնէ՝ և 'ի դուրս արձակէ. ապա թէ ժամ մի դադար առնէ, որ չշարժի, 'ի նոյն ժամն սիրտն այրի, և 'ի ձեռն այրելուն և տաքութեան՝ սրտին մարդն մեռանի:

Ապա 'ի յառաջ քան զայն որ այս տաքութիւն զօրանայ, սատածել պիտի և բժշկել, տալ զերդ որ իշուն կաթն, և զխիչխփարն 'ի ձմնկներոյն քրտրկած, և 'ի յեզերդական ջուրն օր մի և գիշեր մի թրջած պահած. և յետ այնոր անուշ ջրով և շաքրով եփէ, և կիսայեղկ խմելոյ տուր, օգտակար է: Իւ երբ այս հիւանդութիւս հաստատի և 'ի լման յերկան գայ, և ամենևին չիթողու զնութիւն՝ որ լուծանի, զի հիւանդն տկարանայ, և իւր բանն դիժար լինի:

Ապա թէ ջերմն ուժով լինի, ձուի դեղնուց և կովուց կաթն տուր և այծու կաթն՝ ընդ գարեջուր խառնեալ, և թաժայ ձուկն կերակրի խորովեալ, և ուլի ոտներ, և բակլայի ջուր նշէ կաթուվ, և հաւու ձագ փերձկած գարուով. այս ամէնս օգտակար է: Իւ ամէն օր երկու հեղ 'ի յաւազանն մտնէ. և երբ ելանէ, զանձն օծանէ դդմի ձիթով և մանուշակի ձիթով, որ գիձութիւն և կակղութի 'ի յանդամն հաւսուցանէ. ապա թէ բնութիւն կակղնայ, զայս դեղս տուր:

Դեղս, որ օգտէ ուլին ջերմանն:

Առ տաձիկ կուեզ, և տապաշիր, և հայ կաւ, և սերկեւիլի կուտ մի մի դրամ. փարսի աւուշան՝ որ է ձարխոտ, և քիթրէ, և նշաստակ, և փրփրեմի հունդ կէս կէս դրամ[1]. զայս զամէնս աղա և մաղէ, և պզըկատունի լուղապով կուրս արա, զմէն մէկ երկու դրամ. և 'ի շուքն չորացո, և տուր յամէն օր մին մին, ընդ խաշխաշի շարապ խառնեալ: Իւ երբ ջերմն զօրաւոր լինի, գարեջուր տուր, և երբ խաղաղի ջերմն՝ կաթն տուր:

1 Յօրինակին ՕՕ ՃԸ. զոր փորէ և այլ բազում ուրեք:

Ապա թէ 'ի կաթէն տաքութիւն լինի, գարեջուր տուր՝ որ ջերմն հանդարտի, և այլուայր կաթն տուր. և նոյն նշանօքդ ժամ մի զկաթն և ժամ մի զգարեջուրն տուր. և զմնութիւնն 'ի լուծանելոյ պահէ։ Եւ աղէկ քան զամ դեղ կաթն է նորա, և 'ի կաթներուն կնկան կաթն շատ օգուտ է, ապա իշոյ կաթն, ապա ըղտոյ կաթն։ Ապա թէ զհացն կաթամբն ուտէ, այդ քաւական և օգտակար է, թէ ուծ կամի։

Աւարտեցաւ նախագիտութիւն և ստածումն վասն հալևմաշ ջերմերոյն. նոյնպէս և զթոքոյն մաշելով ջերմն, զոր հոռումն ֆթիսս անուանէ, և տաճիկն սլ։ Արդ սկիզբն առնեմք օգնականութեամբն այ և ասեմք զբորբոսային ջերմերն, և զիւրեանց պատճառներն, և զնշաններն, և զստածումն բժշկութեան ուրիշ ուրիշ, օգնութեամբն այ։

## ԳԼՈՒԽ ԻԴ.

Գիտութիւն նախագիտութիւն վասն ամենայն ցեղ բորբոսային ջերմերոյն ուրիշ ուրիշ։

ՍԿԻԶԲՆ առնեմք և ասեմք զսինոխոս ջերմն՝ որ 'ի յար լինի, և համապազ է իւր տաքուն, և առանց նոպայի. և իւր պատճառն այն է՝ որ արիւնն բորբոսի 'ի ներքսն 'ի յերակսն։ Եւ ապա ասեմք զափիմերինոս ջերմն յամենայն աւուր, զի նոպայ ունի յամէն օր և ժամ. և իւր պատճառն այն է՝ որ պալղամն բորբոսի դուրս 'ի յերակացն։ Եւ զկնի այսոր ասեմք զտրիտէօսն՝[1] որ է օր ընդ մէջ ջերմն, զի օր ընդ մէջ ունի զժամն և զնոպայն. և իւր պատճառն այն է՝ որ խարտէշ մաղձն բորբոսի 'ի դուրս 'ի յերակացն։ Եւ ապա ասեմք զտետարտէօսն՝ որ է երկու օր ընդ մէջ ջերմն. զի երկու օր ընդ մէջ ունի զժամն և զնոպայն.

1 Յօրինակին տառ և զկնի պտրիտէօսն։

և իւր պատճառն այն է՝ որ է սև մաղձ, որ է սաւտայն, և բորբոսի ՚ի յերակացն ՚ի դուրս ։

Նաև այլ պարտ է գիտենալ, որ բորբոսային ջերմերն շատ ցեղեր են . կամ որ պարզ, և կամ որ յօղական ։ Պարզն մէն ասի իւր էութեամբն . և յօղականն խառն ասի ընդ այլ էութիւնքն . այլ պարզն՝ որ յերևան են, չորս են ըստ չորից նիւթոցն ։ Այլ առաջին ցեղն սինէխօս է, որ յարեանն ՚ի բորբոսելոյ լինի . յար լինի իւր տաքութիւն և առանց նոպայի . այս ջերմն մուխատրայ է, և ահ ունի, զի յար է և չտայ հանգիստ մարմնոյն ։ Երկրորդ ցեղն ափիմերինոսն է, որ ՚ի պալղամին բորբոսելոյն ընծայի, և իւր նոպայն յամէն օր լինի . և այս ջերմն յերկար քաշէ . մուխատրայ է, և ահ ունի . և իւր յերկար քաշելուն պատճառն այն է, որ նիւթն հաստ և ղորկուտ լինի . և վասն այդ պատճառանացդ չեփի շուտ, և չարձակի շուտ . և իւր մուխատրային պատճառն այն է, որ չտայ հանգիստ մարմնոյն, զի յամէն օր բռնէ իւր նոպայն ։ Նաև երրորդ ցեղն տրիտէօսն է, որ ՚ի խարտէշ մաղձին բորբոսելոյն լինի ; և իւր նոպայն օր ընդ մէջ լինի . ինքն հեշտ է և կարճ՝ երբ յիստակ լինի մաղձն և մէն . և իւր հեշտութեան պատճառն այն է, որ նիւթն պարկեշտ լինի . և վասն այդ պարկեշտութեան հեշտ եփի և դիւրաւ արձակի ։ Նաև չորրորդ ցեղն տետռատէօսն է, որ ՚ի սև մաղձին բորբոսելոյն լինի, և իւր նոպայն երկու օր ընդ մէջ լինին . և իւր վճարն ՚ի բարի լինի, բայց յերկար քաշէ . և իւր բարուոյն պատճառն այն է, որ ընդ նոպային ՚ի մէջ երկու օր հանգչի մարմինն . և յերկար քաշելոյն պատճառն այն է, որ նիւթն հաստ լինի, և վասն այդ պատճառանացդ յուշ եփի և դժար արձակի ։

Նաև այլ գիտացիր՝ որ ամէն մէկ ՚ի յայս չորեցս բաժանին և այլ ցեղ ջերմեր . զերդ որ արեանն ջերմն բաժանի ՚ի յերեք ցեղ ։ Մէկն այն է՝ որ իւր տաքութիւն հանապազ միացեղ լինի յառաջմէ մինչև ՚ի վճարն . և զայդ ջերմդ անուանեալ են հաւասար . զի այն՝ որ բորբոսած լինի յարենէն, և այն՝ որ չէ բորբոսած, հաւասար լինին և միաչափ ։ Նաև երկրորդ ցեղն այն է՝ որ յառաջն խիստ լինի տաքութիւն և դժար,

և որչափ երթայ՝ պակասի և թուլանայ ․ և զայդ ջերմդ անուանեալ են 'ի պակասմն ․ և իւր պատճառն այն է՝ որ այն արիւնն, որ մնաց անբորբոս, շատ է քան զայն՝ որ բորբոսեցաւ ։ Իսկ երրորդ ցեղն այն է՝ որ յառաջինն մինչև 'ի վերջն յաւելցնէ զտաքութիւնն, և 'ի վերջքն խիստ լինի և դժար ․ և անուանեցին զայդ ջերմդ յաւելցնօղ ։ Եւ իւր պատճառն այն է՝ որ բորբոսած արիւնն շատ լինի քան զայն, որ չէ բորբոսած ։

Ապա այն ջերմն՝ որ 'ի յայլ նիւթերոյն 'ի բորբոսելոյն լինի, բաժանի ընդ երկու ցեղ ։ Մէկն այն է՝ որ 'ի յար լինի տաքութիւն և առանց նուպայի ․ և միւսն այն է՝ որ նուպայ ունի և ժամանակ, զերդ որ յառաջդ ասացաք ․ և երբ այն նիւթն՝ որ 'ի ներքս 'ի յերակսն լինի, և բորբոսի, նա ընծայէ իւրմէն այն ջերմն՝ որ 'ի յար լինի իւր տաքութիւն և առանց նուպայի ։ Ապա թէ այն նիւթն՝ որ ցդրուց երակացն լինի՝ բորբոսի, նա ընծայէ իւրմէն ջերմն՝ որ նուպայ ունի և ժամ ։

Եւ վասն այդ պատճառանացդ եղաւ, որ յարեան ջերմն 'ի յար և առանց նուպայի լինի ․ զի արիւնն ցներքսէ երակացն լինի ։ Եւ երբ 'ի յարենէն մասն ինչ բորբոսի, նա իւր տաքութիւն հաւասար 'ի յամէնն հասանի ․ ապա մնայ այն ջերմն 'ի յար մինչև վճարի այնչափքն՝ որ բորբոսած լինի, և կամ եփի, և կամ երկուքն հասանին՝ որ եփի և վճարի ։ Եւ 'ի յայլ նիւթերոյն ջերմերն լինի 'ի յար և առանց նուպայի ․ զի երբ նիւթն բորբոսի 'ի յերակսն, արգիլէ անդր և չարձակի շուտ, ոչ եփելով և ոչ լուծմամբ և ոչ քրտնելով ․ զի երակաց մարմինն պինդ լինի ․ քաշել[1] հետ օրաց որ եփէ բնութիւնն և արձակէ ․ կամ տեսանէ բժիշկն զեփելոյն նշանն, և օգնէ դեղերով ․ և վասն այդ պատճառանացդ եղաւ՝ որ մնայ տաքութիւն 'ի յառաջին նուպայէն մինչև գայ երկրորդ նուպայն ․ և նոյնպէս յերկրորդ նուպայէն մինչև գայ երրորդ նուպայն, և մնայ ջերման տաքութի 'ի նուպայէ 'ի նուպայ, հանց որ թվի թէ 'ի յար տաքութի

1 Յօրինակին տաւել ։

է ։ Ապա այն նիւթերն՝ որ 'ի դուրս 'ի յերակացն բորբոսին, առնեն զջերմն նուպայով. զի այն նիւթն՝ որ բորբոսի, չլինին 'ի մէկ տեղաց, այլ ժողովին 'ի մէկ տեղի, ուր բորբոսել կամին. և իւրեանց ժողովելոյն ժամանակն 'ի նոպայէն ընդ մէկայլ նոպային 'ի մէջ լինի, ըստ նիւթերոյն ուղխութեն, զոր այլ 'ի յետոյ յիշել կամիմ ։

Այլ կայ և ուրիշ՝ որ բորբոսի արտուն 'ի դուրս 'ի յերակացն 'ի յանդամին. և երբ իւր չափն շատ լինի, նա ուռչի այն անդամն, և խցկէ զերակսն, նա այն արիւնն՝ որ 'ի յինքն կայ՝ բորբոսի և տաքնայ, և տաքցնէ զանդամն. և այն անդամն տաքցնէ զմէկայլն՝ որ 'ի յինքն 'ի կից լինի և 'ի յար. ապա տաքնան չնչաւոր երակսն, և տանին զայն տաքութիւնն 'ի սիրտն. և 'ի սրտէն սփռեն և տանին ընդ ամ մարմինն, և մնայ իւր տաքութիւնն անշարժ և 'ի յար, մինչև եփի այն այտոցն և արձակի կամ բանալով և կամ հալելով. և վասն այդ պատճառանացդ եղան ջերմերոյն տաքութիւնն այլ 'ի յար և այլ նուպայով ։

Վասն նոպայով ջերմերոյն թէ ինչ է պատճառն, որ այլ և այլ ցեղ առնեն զնոպայն ։ Եւ այս լինի վասն երեք պատճառանացդ. և մէկն 'ի շուտ և 'ի յուշ ժողովելն լինի նիւթին՝ որ բորբոսել կամի. և երկրորդն 'ի հեշտ և 'ի դժար բորբոսելոյն լինի նիւթն. և երրորդն շուտ և 'ի յուշ արձակելոյն լինի նիւթն, զերդ պալղամին ջերմն, որ յամէն օր առնու զնուպայն. և իւր պատճառն այն է՝ որ շուտ ժողովի 'ի տեղին, ուր բորբոսել կամի. զի շատ է իւր չափն 'ի մարմինն. և հեշտ բորբոսի, զի գիճային է. և յուշ արձակի, զի ղորկուտ է ։ Իսկ սաւտային ջերմն երկու օր ընդ մէջ առնու զնոպայն. և իւր պատճառն այն է, որ յամէ 'ի ժողովելն, ուր բորբոսել կամի. զի իւր չափն սակաւ է 'ի մարմինն և դժար բորբոսի, զի հով և չորային է. և յուշ արձակի, զի հաստ է և պինտ ։ Իսկ խարտէշ մաղձին ջերմն օր ընդ մէջ առնու զնոպայն. և իւր պատճառն այն է, որ ամ իրօք ընդ մէջն է ընդ պալղամին և ընդ սաւտային. այդ պատճառովդ զոր ասացաք, զի սակաւ է քան զպալղամն, և շատ է քան զսաւտային. և իւր խառնուածքն

չոր է քան զպալղամն, և գէճ է քան զսաւտային.
և իւր էութիւն պարկեշտ է քան զնոցա էութիւն ։

Եւ վասն այդ պատճառանացս եղան ջերմերոյն նոպայինն այլ և այլ ցեղ ։ Զի պալղամին ջերմանն նոպայն շատն տասն և ութ պահ ունի, և իւր պատ֊ճառն պալղամին հաստութիւն և ղորկութիւն լինի. վասն այդ պատճառանացդ յուշ արձակի ։ Իսկ սաւ֊տային ջերման նոպայն շատն քսան և չորս պահ ու֊նի, և իւր պատճառն նիւթին հաստութիւն և չորու֊թիւնն լինի. վասն այդ պատճառանացդ չքորքոսի շուտ՝ և երբ քորքոսի, չարձակի շուտ. զի բնութն 'ի քարն և 'ի յերկաթն 'ի յար է ։ Որպէս 'ի քարն և 'ի յերկաթն չգործէ շուտ. ապա երբ գործէ, յուշ հովանայ ։ Իսկ խառնէշ մաղձին ջերման նոպային ժամանակն շատն տասն և երկու պահ ունի. և իւր պատճառն այն է՝ որ նիւթն պարկեշտ է և սակաւ ղորկուտ. վասն այդ պատճառանացդ շուտ քորքոսի և շուտ արձակի քրտամբ ։

Եւ այլ կուլինի՝ որ նոպային ժամանակն որ այլ յերկար քաշէ և այլ կարճ լինի քան զայդ սահմանդ, զոր ասացաք. և այդ 'ի յերեք պատճառանաց լինի ։ Մէկն 'ի նիւթին բնութենէն լինի. զի երբ նիւթն հաստ լինի և խիստ ղորկուտ և բնութն հով, նա նոպային ժամանակն այլ յերկար քաշէ ։ Ապա թէ նիւթն այլ պարկեշտ լինի և սակաւ, և իւր խառ֊նուածքն տաք լինի և սակաւ ղորկուտ, նա իւր նո֊պային ժամանակն կարճ լինի ։ Զի երբ հիւանդին ուժն զօրաւոր լինի, հանց որ վարել կարէ զնիւթն և հանել քրտամբ, նա նոպային ժամանակն այլ յեր֊կար քաշէ ։ Եւ երրորդ պատճառն հիւանդին մարմ֊նոյն շինուածքն լինի. եթէ մարմնոյն շինուածքն թոյլ լինի և նօսր, և գաղտ շնչահանքն արձակ լինի, նա նոպային ժամանակն այլ կարճ լինի. զի նիւթն շուտ արձակի և հեշտ ելանէ ։ Եւ երբ մարմնոյն շի֊նուածքն սերտ լինի և պինտ, և գաղտ շնչահանքն նեղ և նուրբ, նա նոպային ժամանակն այլ յերկար քաշէ, զի նիւթն չարձակի շուտ ։

Ապա թէ այն պատճառներն՝ որ զնոպայն կարճ առ֊նեն, 'ի մէկ տեղի ժողովին, նա նոպային ժամանակն

բնիկ կարճ լինի . ապա թէ մեկայլ պատճառնին՝ որ զնոպայն յերկար քաշեն՝ 'ի մէկ տեղի ժողովին, նա նոպային ժամանակն խիստ յերկար քաշէ : Եւ երբ ջերման նոպային ժամանակն կարճ լինի, նա հիւանդին մարմինն սրբի 'ի տաքութենէն և հանկիստ առնու ցրուի մեկայլ նոպայն . ապա թէ ջերման նոպայն յերկար քաշէ, նա մեկայլ նոպայն հասանի և չթողու զմարմինն՝ որ յիստակի 'ի տաքութէն և հանկչի . և նման լինի 'ի յար ջերմն, զի մէկ նոպայն մեկալին հասանի և չտայ միջոց : Ապա պարտ է որ գիտենայ բժիշկն, և պահէ զայդ պատուիրանքդ և զկանոնքդ, զոր վասն ջերմերոյն նոպային ասացաք :

Եւ երբ նիւթին բորբոսիլն 'ի յայդ չափս կենայ և 'ի յայդ 'ի կերպդ, զոր այլ 'ի յառաջդ ասացաք, և չխառնուին 'ի յայլ նիւթերոյն 'ի յինքն, և ոչ հիւանդին թպտիրն խալաթ լինի : Ապա թէ բորբոսած նիւթն փոխի 'ի յայլ կերպ կամ 'ի յայլ ցեղ իրք, զերդ որ արիւնն երբ այրի և բորբոսի, նա իւր պարկեշտն 'ի խարտէշ մաղձն փոխի, և իւր հաստն 'ի սև մաղձն՝ որ է սաւտայն : Ապա թէ այլ նիւթ խառնի 'ի յայն բորբոսած նիւթն, և կամ բորբոսի այլ նիւթ, նա ընծայի ջերմն՝ զերդ որ այն նիւթին բնուն լինի :

Ապա թէ հիւանդին թպտիրն մաշուած լինի, կերակուր չոր չէ պատեհ, նա ընծային այլ ցեղ նիւթ, և սկիզբն առնեն այլ և այլ ցեղ ջերմերոյ, զերդ որ այն նիւթերոյն բնութն լինի, և աւերի առաջին նոպայնոյն շարն և ժամանակն, զի այլ 'ի յառաջ գայ նոպայն կամ այլ 'ի յետոյ, կամ ընծայի այլ ցեղ նոպայ, որ չլինի 'ի յայն առաջին նոպայնոյն . և իւրեանց աւելն և պակաս գալն նոպային ըստ նիւթերոյն բնութեան լինի՝ որք ընծայեցան : Եւ այս էր բորբոսային ջերմերոյն պատմութիւնն՝ զոր յիշեցաք ուրիշ ուրիշ, և ասացաք և կատարեցաք զամ կարճառօտ օգնութեամբն այ :

# ԳԼՈՒԽ ԻԵ.

Պատմութիւն նախադիտութեան վասն արեան ջերմերոյն :

ԻՍԿ առաջին սկիզբն 'ի սինէխօսն առնեմք, որ է արեան ջերմն, և 'ի յար լինի իւր տաքութի, անհապայ : Իսկ վասն երեք պատճառանաց սկիզբն զսինէխօսն առարաք, որ է արեան ջերմն . մէկն՝ որ արիւնն յար է և մօտ և սիրելի հոգւոյն . և այլ՝ որ ինքն է թպտրող մարդկան առաջին ժամանակին : Եւ երկրորդ՝ որ շատ է արիւնն 'ի մարմինն մարդկան քան զայլ ցեղ նիւթերն . և այլ՝ որ այս ջերմն յոլով համդիպի մարդկան մանաւանդ 'ի տաք ժամ և 'ի տաք երկիր : Եւ երրորդն՝ որ սաստիկ զօրաւոր է և սպանօղ քան զայլ ցեղ ջերմերն :

Եւ ապա հետ այսոր ասեմք զափիմերոսն՝ որ է պալղամին ջերմն . զի պալղամն զկնի արեանն շատ է 'ի մարմինն քան զայլ նիւթերն . և այլ որ յոլով համդիպի մարդկան այս ջերմն : Ապա հետ այսոր յիշենք զտուրտէօսն, որ է խարտէշ մաղձին ջերմն . զի խարտէշ մաղձն այլ աւելի լինի 'ի մարմինն քան զսաւտայն, որ է սև մաղձն . և խարտէշ մաղձին ջերմն շատ համդիպի մարդկան քան զսաւտային ջերմն : Եւ ապա հետ այսոր նշան տամք զտետառատէօսն, որ է սաւտային ջերմն . զի սաւտայն սակաւ է 'ի մարմինն քան զայլ նիւթերն, և ինքն որպէս հիմն է այլ նիւթերոյն . ապա պարտ է մեզ շարել զնոսա կարգով, զերդ որ բնութիւն շարեաց :

Արդ արժան է յառաջ գիտենալ զբորբոսիլն զչորս նիւթերոյն՝ որ 'ի մեզ են, զարեան և զպալղամին և զմաղձերոյն և խարտէշ և սև . և թէ զինչ ցեղ լինին, և ինչ պատճառանաց, և զինչ ծնանի ամէն մէկ 'ի բորբոսիլն 'ի մարմինն : Արդ ամէն մէկ 'ի չորիցս յայտնանէ կամ 'ի ներքս 'ի յերակն բորբոսի, և կամ 'ի դուրս 'ի յերակացն 'ի յանդամ մի 'ի յանդամոց մարմնոյն : Յորժամ արիւնն 'ի ներքս 'ի յերակն բորբոսի, նա պատահի յիւրմէն ջերմն, որ հա-

նապազ է իւր տաքութի՜ն և առանց նոպայի ։ Այլ յորժամ պաղդամն 'ի ներքս 'ի յերակսն բորբոսի, ընծայի իւրմէն ջերմն՝ որ ասի ափիմերաինոս, որ 'ի յար և հանապազ լինի իւր տաքութի՜ն և առանց նոպայի. բայց ժամ մի պնդէ և ժամ մի թուլանայ ։ Ապա թէ 'ի դուրս 'ի յերակացն բորբոսի պաղդամն, նա պատահի ջերմն՝ որ ափիմերաինոս ասեն, որ յամէն օր նուպայ ունի տասն և ութ պահ ։ Այլ յորժամ խարտեշ մաղձն 'ի ներքս 'ի յերակս բորբոսի, ընծայի յիւրմէն ջերմն՝ որ տուրտեօսն անուանեն. նոյնպէս և այն հանապազ լինի և առանց նոպայի ։ Այլ իւր նշանն այն է՝ որ օր մի պնդի իւր տաքութի՜ն և օր մի կակղնայ ։ Ապա թէ դուրս 'ի յերակացն բորբոսի խարտեշ մաղձն, նա առնէ զարիտեօս ջերմն, որ օր ընդ մէջ նուպայ ունի երկոտասան պահ ։

Այլ յորժամ սև մաղձն՝ որ է սաւտայն՝ 'ի ներքս 'ի յերակսն բորբոսի, նա առնէ զտետուատեօս ջերմն, որ և զայն իսկ յար ասեն. բայց երկու օրն խիստ լինի իւր տաքութի՜ն նոպայով, և օր մի կակուղ առանց նոպայի. բայց այս ջերմն յուշ համոզիպի մարդկան ։ Զի ասէ Գաղիանոս, եթէ չտեսայ ես որ բնական սաւտայն ցներքսէ երակացն բորբոսեցաւ և 'ի յար ջերմ արար ։ Ապա թէ սաւտայն 'ի դուրս 'ի յերակացն բորբոսի, նա առնէ զտետուատեօս ջերմն, որ երկու օր ընդ մէջ ունի զնոպայն քսան և չորս պահ ։

Այլ այլ գիտացիր՝ որ արիւնն 'ի դուրս 'ի յերակացն չբորբոսի, զատեր 'ի ներքս 'ի յերակացն բորբոսի. ապա թէ իւր չաքն շատ լինի 'ի յերակսն, նա բնութի՜ն վարէ զինքն 'ի դուրս ընդ քիթան, կամ ընդ նստոյ տեղին, կամ ընդ կանանցիան, և այլ որ նմանն են սոցա, և օգտակար լինի շատ. և կամ բժիշկն հնարէ և հանէ զաւելի արիւնն ։ Ապա թէ իւր էութի՜ն աւիրի, նա հերձէ զերակսն, և 'ի յանդամն մին վաթի, հու և շարաւ ընծայի իւրմէն ։

Այլ բնական արեանն գնացքն ցներքսէ երակացն լինի՝ երբ չլինի բորբոսած. և նոքա կերակրէ զամ մարմինն և սնուցանէ ։ Ապա թէ բորբոսի և ներքս 'ի յերակսն լինի, նա ընծայէ զսինեհիս ջերմն, որ է 'ի յար տաքութի՜ն և առանց նոպայի. ապա թէ 'ի դուրս

'ի յերակացն բորբոսի, 'ի յանդամ մեն ընծայէ ցաւ' 'ի յայն անդամն և տաքութիւն, և առնէ զջերմն, և անուանեն զայն ջերմն այն անդամին անուամբն. զերդ որ թոքն որ այտչի 'ի յարենէն, նա անուանեն թոքացաւութիւն. և այլ զերդ որ ջերմերն ամէն մէկ նիւթին անուամբն անուանի' յորմէ ընծայեցաւ, նոյնպէս և արիւնն յոր անդամ և արկանէ և տաքցնէ, նա այն անդամին անուամբն անուանի:

## ԳԼՈՒԽ ԻԶ.

Վասն ստածման և բժշկութեան սինեհխս ջերմանն որ 'ի յարենէ լինի, և ինքն ընդ երեք ցեղ բաժանի:

ԱՅՍ ջերմս հոռոմն սինէխս անուանէ, և տաճիկն մոբէկ, որ թարգմանի սուր և 'ի յար: Այլ յառաջդ ասացաք թէ սուր ջերմն' որ 'ի յար լինի և առանց նոպայի, 'ի յարենէ լինի, որ բորբոսի 'ի ներքս 'ի յերակն. և այլ ասացի' թէ երբ բորբոսի յայլ[1] նիւթերոյն 'ի ներքս 'ի յերակմն, և խառն լինին ընդ արիւնն, նոյնպէս ընծայի յիւրմէն ջերմն' որ 'ի յար լինի և առանց նոպայի:

Արդ պարտ է մեզ բաժանել և ցուցանել, թէ ո՛րպէս ճանաչի սինեհխս ջերմն' որ յարենէն մէն լինի. և ո՛րպէս ճանաչի' որ յայլ նիւթերոյն լինի, երբ 'ի ներքս 'ի յերակմն բորբոսին: Նաև ասեմ' որ այն ջերմն որ յայլ նիւթերոյն բորբոսելոյն լինին, թէպէտ և 'ի յար լինին և առանց նոպայի, բայց թուլանան և պնդին, շատանան և պակասին: Արդ այն ջերմն' որ յարենէն մէն լինի, չլինի այդ ամենդ զոր ասացաք 'ի յայլ նիւթերոյն, այլ հաստատ լինի իւր պնդութե և դիժարութին: Նաև այն նշաններն' որ երևնայ մեզ 'ի յերկրորդ օրն, որ հանդիպի յայլ ջերմերոյն նշան

1 Յօրինակին պակասէր յայլ:

նոյն զօր ասացաք. ապա թէ չերևնայ երկրորդ օրն, նա յերրորդ օրն երևնայ[1]: Ապա 'ի չորրորդ օրն երևնայ այնոցիկ՝ որք չեն բժիշկ, ոչ եթէ բժիշկն:

Նաև այլ պարտ է գիտել որ սինեհիս ջերմն՝ որ յաւրենէ լինի, յերեք ցեղս բաժանի: Առաջին դէմն այն է, որ յառաջմէ յաւելնայ իւր տաքութիւն քիչ քիչ օր ըստ օրէ: Իսկ երկրորդ դէմնն այն է՝ որ յառաջմէ շատ առնու և դժար, և ապա օր քան զօր պակասի իւր տաքութիւն քիչ քիչ: Ապա այն դէմնն, որ հաւասար և 'ի յար լինի իւր տաքութիւն, յառաջմէ մինչև 'ի վերջքն նոյնպէս հաւասար մնայ, մինչև արձակի և թողու: Ապա այն դէմնն, որ օր քան զօր յաւելցնէ, յառաջմէ սակաւ լինի և հեշտ, և ապա յաւելնայ օր քան զօր իւր տաքութիւն, և դժարնայ քիչ քիչ՝ մինչև կատարի, և ապա արձակի: Ապա այն դէմնն, որ պակասեցնէ օր քան զօր, յառաջմէ դժար լինի և շատ իւր տաքութիւն, ապա օր քան զօր պակասի քիչ քիչ, մինչև վճարի և արձակի:

Իսկ ես այդ իրացդ օրինակ բերեմ որ այլ հեշտ հասկանայք: 'Ի միտ առ աղէկ և տես. այն արիւնն որ բորբոսի՝ մասն մի լինի, և այն որ արձակին՝ մասն մին, նա չաւելնայ մասն 'ի մասէն և ոչ պակասի. այդ օրինակովդ լինի յար և հաւասար սինեհիս ջերմն, ոչ յաւելնայ և ոչ պակասի: Ապա երբ երկու մասն բորբոսի յարենէն, և մէկ մասն արձակի, նա բորբոսածն յաւելնայ մասն 'ի մասին վերայ. և այդ օրինակովդ լինի յերկրորդ դէմս սինեհիս ջերմն, որ օր քան զօր յաւելցնէ քիչ քիչ զիւր տաքութիւն: Ապա երբ մէկ մասն բորբոսի յարենէն, և երկու մասն արձակի, այդ օրինակովդ լինի երրորդ դէմս սինեհիս ջերմն, որ օր քան զօր պակասի իւր տաքութիւն քիչ քիչ:

Ապա գիտացիր որ այս ջերմն շատ այնոց հանդիպի, որ 'ի չորս տարւոյն 'ի վեր լինին՝ մինչև 'ի քսան տարին, մանաւանդ 'ի գարնան աւուրքն. և այնոց՝ որ արիւնն շատ լինի 'ի մարմինն, և այնոց՝ որ կերակուր զայն ուտեն, որ արիւնն ընծայէ, զերդ գառին միսն, և կաթնէրն, և ձուի դեղնուցն, կարմիր և քաղցր

1 Յօրինակին օրն Երևն երևնայ:

գլխոյն ։ Իսկ նշանքն՝ որ հետ այդ ջերմանդ երևենայ՝ այս են, որ բերանոյն առաստաղքն ուռչին, և խնծորքն. գլուխն ցաւի և ծանրանայ, և երեսն կարմրի, մանաւանդ այտերն. աչացն երակսն և քներոյն ուռչին, և լինի որ կարմիր շտեր երևենան, կամ դէպ 'ի կանանչն ։

Նաև որ գիտենաս որ յառաջ քան զա̃մ ստածումն զհիւանդին ուժն և զտարիքն և զկերպն և զերկիրն և ժամ, տես թէ օգնէ տարիքն, և այն զոր ասացաք, դու երակ առ. սկիզբն այս ջերմանս, յառաջ քան որ յաւելնայ հիւանդութիւն. ապա թէ չօգնէ ուժն և տարիքն և այլն, դու ապիկիք արկ, և արիւն հան. զի սկիզբն այս ջերմանս արիւն հանելն շատ օգտակար է ։ Նաև 'ի յաւելնալն և 'ի կատարելն հիւանդութեն, որ է երրորդ ժամանակն, պատրաստ՝ որ չառնուս երակ, զի չէ ժամանակ և ոչ պատեհ, այլ սկիզբն հիւանդութեն առ. զերակն ։ Զի մեծ իմաստասէրն Գաղիանոս պատրաստեցոյց շատ, և ես տեսայ 'ի յիմ ժամանակս, որ 'ի կատարելն ժամն հիւանդութե երակն առին, և մեռան շատք. և այլ տեսայ՝ որ ապիկիք արկ, նա հիւանդն փատուժ էր, մեռաւ ։ Չէ պատեհ՝ յորժամ հիւանդն փատուժ լինի, արիւն հանել, թէպէտ և տարիքն և ժամն օգն լինին ։ Բայց երբ ուժն օգնական լինի, և ժամն չլինի, կարողք ենք ճար այրնելն և երակ առնուլն. և այն որ տարիքն չօգնեն, կարող ենք ճար այրնել ապիկիք արկանելով 'ի սկիզբն[1] հիւանդութե, որ զերծանի հիւանդն ։

Սափրուխ լուծող հով ։

Ապա թէ չկարենք երակ առնուլ, և ոչ ապիկիք արկանել, զմունին լուծանենք սակաւ սակաւ խիարշանպէով, և թառանկպին, և յունապ, և դամոյնչիր, նռան ջուր, և ճուլապով ։ Ապա թէ չկայ ճար լուծումն առնելոյ, տուր մուղ նռան ջուր և սրքնճպին՝ որ շաքարով լինի, և կերակուր փերճոկած սոքն տուր

[1] Յօրինակին արկանելով ։ Իսկ սկիզբն ։

և մաշ, և արկ 'ի ներքս դամոյն և յունապ և չամիչ և նշի ձէթ, կամ խակ ձիթապտղի ձէթ անաղ. զի այս ձէթս հով է և փոթոթ ։

Ապա թէ արիւնն մաղձխառն լինի և սուր, յաւելցո 'ի յայն մտպուխն թմրհնդի և դամոյնաչիր. զի մուզ իրքն անցնէ զմաղձին սրութիւն ։ Ապա թէ արիւնն հաստ լինի, և չունի սրութի̃, լաբլաբի ջուր, որ է պատատկի ջուր՝ որ է բաղեղն, 'ի հետ խիարշամպէի և թառանկպինի ։

Հուքնայ լուծող, որ զպատճառն հանէ ։

Ապա թէ կարիք լինի որ այլ աւելի լուծմունս զօրնութի̃, հուկնայ արա այս նշանօքս ։ Առ չոր մանիշակ և տատաշ և բաբունիճ և տուղտ և կարմիր շաքար և մանիշակի ձէթ. զայս ամենս եփէ, և 'ի բան տար զերդ իւր ռասմն է ։

Շաֆ լուծող ։

Եւ այս շաֆս օգտակար է, որ է պատրոյկն ։ Առ փենիտ շաքար, և աղ, և հղուղ, և պախրու լեղի. զայս զամենս պատրոյկ շաֆ արա, և 'ի բան տար ։

Գլխացաւ, որ 'ի պատճառնէ լինի ։

Ապա թէ գլխացաւութիւն դիպի, ա՛րկ 'ի վերայ գլխոյն վարդի ձէթ, և եղնրդի ձէթ, և խլեփն, այն մանտր ուռենիքն են՝ որ անուշահոտ զայ իւրմէն, և վարդի ջուր, և աղոխի ջուր հում [1], և կամ վարդի ձէթ արկ քացախով ։

Գլխացաւի ։

Ապա թէ այդիւ չխաղաղի գլխացաւութի̃ և յերկար քաշէ, և կամիս որ խաղեղցնես, զատ 'ի յայնորէ որ զնիւթն 'ի զատ վարես, ապա դիր 'ի վերայ գըլ-

1 Յօրինակին ջուր հուր համ ։

խոյն փերփերանի ջուր և դդմի ջուր և բրսի անդաւրուի ջուր, ենքդ հովուի բիր կոչի, որ է պտպտ, և խլէփի, ձէթ կամ լըլուփարի ձէթ, կամ դդմի ձէթ. զայս զամենս յիրար խառնէ, և 'ի վերայ գլխոյն դիր:

Գլխացաւ:

Ապա թէ հիւանդն հաղչունի, և ոչ նուղլայ, արկ 'ի վերայ գլխոյն զայն ջուրն, որ եփած լինի յինքն չոր մանիշակ, և չոր վարդ, և բաբունիճի ծաղիկ, և փերձոկած գարի:

Գլխացաւ:

Ապա թէ հիւանդն վատուժ լինի, և ցաւն այդով չխազղի, աղջկան մօր կաթն կթել տուր 'ի վերայ գլխոյն: Ապա թէ հիւանդն ուժով լինի, իշոյ կաթն տուր կթել, կամ այծու կաթն: Ապա թէ թեթևութի̃ և չորութի̃ իմանայ 'ի գլուխն, ողումարայ կաթեցո 'ի քիթմն մանիշակի ձիթով և լըլուփարի ձիթով. և արկ 'ի վերայ գլխոյն զկաթներն, և զայլ դեղերն՝ որ այլ յառաջդ ասացաք:

Գլխացաւ:

Ապա թէ 'ի գլուխն գէճ շոգի լինի և ծանրութի̃, զերեսմն 'ի վերայ այս շոգւոյս կալ: Առ չոր մանիշակ և բաբունիճ սակաւ մի աւելի քան զմանիշակն. զայսոնք եփէ ջրով, և զերեսմն 'ի վերայ շոգւոյն կալ, որ բանայ զգաղտ ծնչահանքն, որ բուխարն 'ի դուրս վաթի: Ապա թէ 'ի գլուխն ծանրութի̃ լինի, հանց որ փաղաղս երթայ, ապա պատրաստ կալ 'ի ձիթեռոյն որ չմօտի 'ի գլուխն, զի խցկէն զգաղտ ծնչահանքն, և արգիլէն զշոգիսն 'ի վայր վաթելոյ և ելանելոյ. ապա ծեփէ զատմն և զձեռմն այս ջրովս:

## Գլխուն թէ ծանրութիւն լինի, կամ փաղաղս :

Ու բաբունիճ և մանիշակ, զայսոնք եփէ ջրով, և ծեփէ՝ որ փնթութերն ՚ի վայր քաշէ : Նու այլ պատեհ է՝ որ ՚ի ձեռան և յոտներն կապք առնես պինտ, հանց որ ցաւ տայ, և հետէն թուլացո և պնդէ :

## Գլխացաւի :

Ապա թէ գլխացաւութիւն խիստ լինի, զերկու զեկաւորն՝ որ է ծղլին՝ կապէ : Ապա թէ նեղհոգութիւն ունի, կօղայի ջուր տուր, և մուզ նուան ջուր, կամ պզրկատունի լուղապ, և խաւրծլը քամուքս տուր հետ նուան ջրի :

## Քթին որ արեան գայ :

Ապա թէ ուզես որ հիւանդին քիթն կաթնի քան զչափքն յաւելը, առ խակ ամբրաւի ջուր, և քօզմորավի քամուքն, և սակաւ մի քափուր. զայս ամէնս յիրար խառնէ, ՚ի քիթն արկ. և ՚ի վերայ գլխոյն դիր խլէփի ջուր, և մրտի տերևի ջուր, և այգւոյ մատին տերևի ջուր, և վարդի ջուր, և սանդալ, և քափուր. զայս ամէնս յիրար խառնէ, և ՚ի վերայ ճակատին դիր և ՚ի վերայ գլխոյն. և այլ դիր ՚ի վերայ ճակատին մնուցած բուռ, և ոսպան ալուր ջրով շաղված : Նու կերակուրն վաղն տուր՝ երբ օդն հով լինի. և պատրաստ կաց՝ որ ՚ի տաք ժամն չխտաս կերակուր, զի վնաս է իւրն :

Ապա թէ հիւանդն զայդ երկրորդ չիկարէ ուտել, զոր այլ յառաջն յիշեցաք, զերդ ոսպն և զմաշն և զդդումն, ապա գարէփոխինտ տուր այս նշանօքս : Ու գարւոյ փոխինտ, թրջէ տաք ջրով, ապա լուա հով ջրով, և տո՛ւր որ խմէ տապարզի շաքարով. նոյն նշանովդ տուր զհացի փշրուկն :

Ապա թէ շատ ՚ի փաղաղս կենայ, և տեսանես որ շատ տապի, և ՚ի դեհ ՚ի դեհ շրջի, և փորն ուռչի,

որ երբ 'ի վերայ զարկանես, նա դաբդաբայի ձայն տայ, ապա գիտասցիր որ մեռանել կամի ստոյգ. մանաւանդ երբ 'ի մարմինն սև վարդ ելանէ աղտորի հատի չափ և սև լինի, պարտ է փախչել և 'ի զատ կենալ:

Սինայի որդւոյն ասէ 'ի նոյն պատճառդ, եթէ արեանն թորքոսելոյն պատճառն՝ արեանն լիութիւն լինի, կամ յերակացն 'ի խցկելոյն, կամ 'ի շատ 'ի շուրջ գալոյն և շարժելոյ զմարմինն, մանաւանդ այնոց՝ որ մարմնոյն հանկիստ ունին սովորութի, և զկնի հանկստին դառնան 'ի շուրջ գալով և կեղեն զմարմինն, և կամ արեանն ամբով տաքութին լինի՝ որ է 'ի ներքս 'ի յերակն, թորքոսի և աւերի. և պատճառն այն լինի, որ 'ի պատեհի ժամն արիւն չթողու, 'ի յամենն և 'ի բազմանալն վառչի և թորքոսի: Իւր նշանն այն է, որ իւր ջերմն հանապազ և յերակն լինի. և երեսացն գոյնն կարմիր. և 'ի յերեսն լիութի լինի. և 'ի յերակն մեծ և լիութիւն լինի. շունչն կարճ և շուտ լինի. և մարմինն ծանր լինի. 'ի յաչքն կարմրութի անկանի. և գոզն կարմիր և հոտած լինի:

Եւ իւր ստածումն այս է. յառաջ քան որ տկարանայ հիւանդն, երակ առ և շատ արիւն հան: Ապա թէ տկար է հիւանդն, ապիկիս արկ. ապա թէ արուն հանելն նուազի, զհացն 'ի ազոխի ջուրն թաց, և 'ի թթու նռան ջուրն, և տուր. և ընդ երեք հաղ սակաւ սակաւ արիւն թող. յունապի շարապ տուր. և կերակուրք պարկեշտք տուր: Ապա թէ ընութիւնն կապ լինի, մրգաջրով կակղցո. ապա թէ թթու և քաղցր նռան ջուր տապաշիրով խմէ, շատ օգտէ: Ապա թէ առանց պատճառանաց ընդ քիթն արիւն երթայ, չէ պատեհ արգիլել: Սոյն քացախով կերակրելն օգուտ է. ապա թէ զարյոյնն տեսանես՝ որ յաղթեալ է, չէ պատեհ որ յունապի ջուր և ոսպն ուտէ, այլ ոսպան ջուր և հազար հովցուցած, և հով ջուր օգտակար է:

Մասրճուայն ասէ, թէ իւր ստածումն այն է, որ զարկէջուր խմէ, և քաղցր և թթու նռան ջուր, և հանապազ զընութիւն կակղցո և կակուղ պահէ: Ապա թէ հիւանդն երակ չկարէ առնուլ, զխիստ հով դեղերն տալ չէ պատեհ. զի լինի որ խցկումն 'ի մարմինն

յերևան գայ, նա բորբոսն և տաքութիւն յաւելնայ, տապաշիրին կուրսն օգտակար է, այս նշանօքս։

## Կուրս տապաշիրի։

Ա՛ռ տապաշիր երեք դրամ. և փերփերանի հունդ տասն դրամ. և դդմի հունդ վեց դրամ. և յերկան խիարի հունդ չորս դրամ. տաճիկ կուէզ երեք դրամ. նշաստակ երեք դրամ. մարուխի քամուքս եօթն դրամ. զայս ամէնս աղա և մաղէ, և շաղէ, կուրսեր արա, և 'ի շուքն չորացո, և 'ի կարեց ժամն՝ երեք դրամ 'ի բանի պահէ։

Եւ կերակուր նուան մուզաւարայ, և աղտորի ապուր։ Ապա թէ բնութին կապ լինի, դամոյնի մուզաւարայ տուր, օգտակար է թէ ած կամի։

Փօլօս ասէ 'ի նոյն պատճառդ, եթէ երակ առնուլն և արիւն հանելն մեծ և օգտակար դեղ է այդ հիւանդութեանդ. ապա թէ չընկերէ ուժն և ժամն, ցուրտ տուր ջուր խմելոյ, մինչև 'ի դող անկանի, և գոյնն փոխի, և ջերմն հովանայ և դադարի։ Ապա թէ ջերմն այլուայր դառնայ, զնոյն ստածումնդ 'ի բան պահէ, որ ջերմն կակղնայ և հանկչի։ Եւ այս խորհուրդդ մին է բարի և փորձած. և չէ պարտ որ 'ի հով ջրոյն տալն վախէ։ Ապա թէ այս ջերմս, որ սինեհիս անուանի, 'ի ստամոքացն 'ի յայտոցէ լինի, կամ 'ի լերդին այտոցէ, պարտ է պատրաստել 'ի շատ հով ջրէ. ամենովին զհով ջուրն արգիլէ 'ի խիստ ջերմանն 'ի տիրոջէն. կորուստ գործէ հիւանդին։

Սահակ ասէ 'ի նոյն պատճառդ, եթէ այս ջերմանս ստածումն այն է, որ երակ առնու և արիւն հանէ մինչև թալկայ։ Եւ այս օգտակար և մեծ ստածումն է ամ ջերմանն՝ որ 'ի յարենէ լինի. մանաւանդ՝ թէ հիւանդին զօրութին ուժով լինի։ Եւ իւր առաջին օգտութին այն է, որ զմարմնոյն խառնուածքն դարձուցանէ 'ի միջավայր սահմանն, որ է մուհթատիլ, և զարեանն զտաքութին մանտրէ, և զմարմինն հովցրնէ։ Ապա թէ արիւն չկարէ հանել, զայն զերութին՝ որ զարեանն զտաքութին նստեցնեն՝ 'ի բանի պահէ։ Ապա թէ բնութին կապ լինի, մրգաջրով կակղցնէ

և կամ կակուղ հումնայով, գարեջուր և սրքնձուպին, քաղցր և թթու նռան ջուր 'ի քանի պահէ. և զոր ինչ կերակրի՝ վաղն ընդ հով ժամն կերակրէ. և զհով ձիթերն ընդ գլուխն օծանէ, զոր այլ 'ի յառաջ յիշած կան. օգտակար է թէ տն կամի:

## ԳԼՈՒԽ ԻԷ..

*Վասն ստածման և բժշկութեան այն ջերմանն՝ որ յետ այտոցին լինի, զոր մաշարի կոչեն, և հոռոմ տուստփուսպէշ ասէ:*

ԱՊԱ թէ այս ջերմն հետ այտոցին լինի, որ մաշարայ կոչի, և հոռոմ տուստփուսպէշ ասէ, թէ կարեւ և ճարակ լինի, յառաջ արիւն հան ըստ ուժոյն, և ստածէ այս ըմպելովս: Առ խիարշամպէի մէջ, և թառամնկպին, և տուր շնխաղողի ջրով. և տուր գարեջուր յունապով և մուզ նռան ջրով:

Տէ վասն փափ ուռէցի, որ հովացնէ և նիհղացնէ:

Եւ զայս դեղն 'ի վերայ այտոցին դիր: Առ սանտալ և փուփլէ և հայ կաւ և ղլմնայ կաւ. զայս ամենս աղա և մաղէ, և դալար գինձի ջրով կամ գառնակեղուի ջրով շաղուէ, և դիր արա սկիզբն 'ի յայտոցին:

Տէ փափ ուռէցինս:

Ապա 'ի վերջքն 'ի յայտոցին զայս դեղս արա: Առ սապոն և զաւհրան, աղա և մաղէ, և շաղուէ կաղմքի տերևի ջրով, և դիր արա, օգտակար է ստուծով:

Փոլոս ասէ վասն ստածման և բժշկութեան այն ջերմանն որ հետ այտոցին լինի, որ խումրայ կոչի: Իսկ իւր պատճառն 'ի տաք արեննէ լինի, և 'ի սուր մաղձէ,

որ ընդ իւր խառնուածքն խառնեալ լինի. և երբ յաղթէ մարմնոյն, նա քնութիւն զնա դէպ 'ի դուրս 'ի կաշին արտաքս հանէ: Իւր նշանն այն է՝ որ այն տեղիքն, որ հիւանդութեան գլուխք լինի, այտոց առնու, և գոյնովն կարմիր լինի, և շօշափելիքն տաք լինի. և յետ այնոր խաղաւարտք 'ի յերևան գան, զերդ կրակով այրեցած տեղի մինն:

## Օծեւէք տաք ուռէցի, որ հողչնէ:

Այս իւր ստածումն այն է, որ երբ տեսանես զարոյնն՝ որ յաղթեալ է, երա՛կ առ, և կերակուրք հով և 'ի պատեհի ուտէ. և դեղ գարեջուր, և սքընձըպլին, և փերփերանի հունդ, և ճուլապ խմէ. և հանապազ զայտուցին տեղիքն գառնալեզուի ջրով և շռնխաղողի ջրով, և շափի մամիթայով օծանէ:

Ապա թէ մաղձն զօրաւոր լինի, իւր ստածումն այն է՝ որ զքնութիւն լուծանէ եփած մրգաջրով. և գարեջուր խմէ. և հետ երկու պահու սքընձպլին առնու նռան ջրով. ապա թէ քնութիւնն կապ լինի, թմրհնդի ջրով կակղացո:

## Տւէ այտոցի, որ 'ի տաքէ լինի:

Այս զայս տեղս 'ի վերայ այտոցին դիր, զի շատ օգտակար է: Ա՛ռ հայ կաւ և գառնալեզուի ջրով և սամնտալի ջրով և դալար գնձի ջրով տրորէ, և 'ի վերայ այտոցին 'ի բանի պահէ:

## Տաք ուռէցի:

Սահակ ասէ՝ թէ իւր ստածումն այն է, որ զայտոցն աղէկ շառուտէ, որ աւեր արիւնն իւրմէն արտաքս գայ. ապա հետ այնոր մա՛ռ գխթոր՝ որ 'ի քացախն թրջած լինի, և լեղ. զայս զամէնս յիրար խառնէ, և 'ի վրան տեղ արա:

### Սպեղանի վասն պաղ ուռուցի ։

Եւ այս դեղս այլ օգտակար է և փորձած ․ առ դալար ընկուզ, և զծառոյն տերևն և զկեղևն, և չամիչ, և չոր թուզ՝ որ 'ի գինի թրջած լինի, և սև խաշխաշի ձէթ, 'ի յամէն մէկէ՝ մէկ մասն ․ զայս զամէնս յիրար խառնէ, և 'ի ցաւուն տեղին սպեղանի դիր ։

### Սպեղանի հով վասն պաղ այտոցի ։

Դեղ մին այլ օգտակար է ․ առ ափիոն և կակիկայ, որ է աղի ծաղիկ, և խորոյ առջառքն, և նռան կեղև, 'ի յամէն մէկէ երկու դրամ ․ պղնձի փերձոկ, և քանկի հունդ, որ է աղվէշ քանկ, յամէն մէկէ մի դրամ ․ զայս ամէնս աղա և մաղէ, և խաշխաշի ձիթով շաղվէ, և 'ի վերայ տեղացն սպեղանի արա, օգտակար է թէ ած կամի ։

### Վասն պատճառն և բժշկութեան այն ջերմանն, որ հետ այտոցին լինի, զոր ֆլեղմոնի անուանեն ։

Փեկիթ Սուլայն ասէ վասն ջերմանն՝ որ 'ի հետ այն տաք այտոցին լինի, զոր փլեղմոնի անուանեն ։ Իւր պատճառն 'ի յերկու իրաց լինի ․ կամ 'ի զարկուց լինի՝ որ 'ի տեղիք մի 'ի յանդամ հասանի զարկս ․ և կամ [1] 'ի տաք և 'ի շատ արենէ լինի, որ բնութեն զօրութեն 'ի յայն տեղիքն վարժեաց ։ Իւր նշանն այն է, որ տեղիքն խիստ ցաւի, և գոյնն կարմիր լինի ․ և երբ ձեռօքդ տեսանես, խիստ տաք լինի և խոցցած [2] ․ վասն այդ պատճառանացդ բժշկապետքն փլեղմոնի անուան դրին, որ թարգմանի տաք զայրոյց և այտոց 'ի յարենէ ։

1 Յօրինակին պակասէր կամ ։ 2 Յօրինակին խոցցած ։

### Սպեղանի հով՝ վասն պաղ այտոյցի ։

Նու իւր ստածումն այն է, որ 'ի սկիզբն երակ առ-նու 'ի յողջ դեհն. և ապա զբացող դեղերն մորհամ առնէ, և կամ հովայլին սպեղանիս 'ի վերայ դնէ, զերդ զառնալեզու, և նռան կեղև, և աղտոր, և զա-րեալւյր. զայս ամենս քացախով և ջրով շաղէ, և 'ի վերայ սպեղանի դիր, որ այն տեղացն զօրութիւն չտկարանայ ։

### Վասն այտոյցի, որ 'ի զարկուց լինի ։

Սահակ ասէ՝ եթէ պատճառն այս այտոցիս, որ 'ի զարկուց լինի, երակ կտրելն կարիք չունի. այլ մոմ-ձիթով համապազ օծանէ, և համասպազ եղկ ջրով ծեփէ. և ձու զարեալուր, և հալլպայ, որ է հացհա-մեմի ունդ, և տուղտ. զայս զամենս աղա և մաղէ, և չնխազողի ջրով շաղէ, և 'ի վերայ դիր ։ Ապա թէ աւեր արիւնն կայ հաւաքած 'ի յինքն, զայն տեղիքն շառատէ, և զաւեր արիւնն հան. և հետ այնոր մար-համով ստածէ. օգտակար է ։

### Տէր հովացնող, վասն պաղ այտոյցի ։

Յհաննայ ասէ, թէ իւր ստածումն այն է՝ որ ե-րակ առնու ըստ հիւանդութեան, և ըստ հիւանդին զօրութեն արիւն թողու. և հովայլին դեղերովն օծէ այնէ, զերդ հայ կաւ, և սպիտակ դեղ, և շափի մա-միթայ, և եղրդականն ջուր, և ափիոն, և զառնալե-զուի ջուր, և այլ զոր ինչ սոցա նմանն են. օգտակար է ։

Ապա թէ հետ այս այտոցիս ջերմն լինի, իւր ստա-ծումն այն է՝ որ կերակուր պակաս կերակրի, զարե-ջուր և սրբնձպլն 'ի բանի պահէ, և փերփերանի հունդ թմրհնդի ջրով առնու. և երբ չորս օրն անց-նի, սակաւ մի սամթի ջուր ճուլապ խառնեալ 'ի բա-նի պահէ ։

Տէ՛ հոլին սպեղանի՝ պատ այրոյն :

Նու այլ. ա՛ռ աքլիլ մելիք, և սամիթ, և փարս աւշան. զայս ամենս աղա՛ և մաղէ, և կտաւատի լուղապով շաղւէ, և 'ի վերայ սպեղանի դիր. օգտակար է, թէ ա՛ծ կամի :

Իսկ մեր յիշելոյն զայս երեք ցեղ այտոցս՝ որ կուչի մաշարայ, և խուսմրայ, և փլեղմունի, վասն այնոր եղաւ, որ իւրեանց պատճառն և նիւթն արոյնն լինի. և վասն այդց պատճառանացդ յիշեցաք և եդաք հետ արեանն ջերմերոյն, և 'ի նոյն շարս զծաղիկն կամինք յիշել օգնութեն ա՛յ. զի և նորա պատճառն և նիւթն յարենէ լինի :

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Պատմութիւն և նախադիտութիւն վասն ջերմանն որ զկնի ծաղկին լինի :

ՎԱՍՆ ստածման և բժշկութեն այն ջերմանն՝ որ զկնի ծաղկին լինի : Իսկ այն ջերմն որ զկնի ծաղկին լինի, իւր նշանն այս է՝ որ երեսաց գոյնն կարմիր լինի և աչացն, և գլուխն ծանրանայ, և պինչսն ցներքս քորէն և կծան, և փռնկտուք գայ, և ամ մարմինն լիանայ : Ապա երբ այս նշաննիս երևան, գիտացիր որ ծաղիկ կամի հանել : Ապա զքո զառաջին ջանքն և զստածումն յաչքն արա, որ չելնէ ծաղիկ : Նու դիր յաչքն զայս դեղս. ա՛ռ աղտոր, և վարդի ջրով և քացախով թրջէ, և սակաւ մի մուզ նաման ջուր խառնէ. զայս զամենս պարզէ, և դեղադրով յաչքն դիր :

Ապա թէ յաչքն ծաղիկ ելանէ, կաթեցո 'ի ներքս զայս դեղս. ա՛ռ Սպահանի ծարիր քար, և 'ի վերայ խոլօզմիկի շփէ, և տրորէ այս ջրովս. ա՛ռ չոր գինձահատ և ձարձատ արա, և տաք ջրով թրջէ և քամէ, և 'ի ներքս սակաւ մի քաֆուր խառնէ, և 'ի վե-

րայ խոլորձկին կաթեցո, և չփէ զապահանիկ ծարիրն՝ որ տրորի, և դեղադրով յաչքն կաթեցո։

Այլ գիտասցիր որ այս հիւանդիս սկիզբն հիւանդութեն խափական դիպի, և սիրտն խառնկի, և հիւանդն տապի և շարժակլի։ Ապա երբ զայդ տեսանես, ճար արա՝ որ զծաղիկն շուտ 'ի դուրս քաշես և հանես՝ այս նշանօքս. առ ափ մի ոսպ լվացած, և թուզ մի կտրած, եփէ ջրով և քամէ. և առ լուք աղցած և մաղած, և երեք դրամ 'ի ներս խառնէ, և տուր որ խմէ. և կերակուր մաշ տուր, և ոսպն, և դդում, և զբնութիւն կակղացո։

Բայց 'ի հիւանդութեն սկիզբն դամոյնով և յունապով և թառամնկուպինով, և այլ պատրաստեցո՝ որ հետ ելթն աւուրն որ չլուծանես զբնութիւն։ Եւ այս հիւանդութիւս 'ի վճարն ինքնին լուծանէ զբնութիւնն. զի այն մնացորդն՝ որ 'ի ծաղկէն 'ի ներքս մնաց և չելաւ 'ի դուրս, յետոյ լուծանէ զբնութիւն. ապա տուր սերկևիլ և տանձ և մուզ նուռն։ Ապա թէ ժամն ձմեռն ուրդի, և օդն ցուրտ լինի, առջևն կրակ վառէ մօշի փայտով և կաղնի փայտ և այգւոյ մատն. և երբ տեսանես զծաղիկն՝ որ սակաւ սակաւ 'ի ցամաքիլ, տլէ արա այս նշանօքս։ Առ թրթնձի ալուր, և կորեկի ալուր, և սակաւ մի զաֆրան. զայս զամենս շաղւէ վարդի ձիթով, և տլէ արա։

Ապա թէ 'ի բերան ծաղիկ ելանէ, կամ 'ի ներս 'ի պնչերն, 'ի բերանն սերկևիլի կուտ տուր՝ որ առնու, կամ պղըկատունի լուղապ. և սրբէ զպնչերն 'ի ներս վարդի ձիթով։ Ապա թէ լուծումն պնդի, տուր ըղտապաշիրին կուրսն, զոր թրթնձի հնդով զուգեն։ Եւ իւր նշանն այս է։

## Կուրս տապաշիրի թրթնձի հնդով։

Առ տապաշիր և մրտի պտուղ, և չոր վարդ, և մրտի պտուղ, և աղնձած տաճիկ կռէզ, և շահբալութ, յամէն մէկէ տասն դրամ. հայ կաւ, և նշաստակ սակաւ մի աղընձած, յամէն մէկէ երեք դրամ. թրթընձի հունդ փոխձակած վեց դրամ. մաստնեհար կաւ երկու դրամ. զայս ամենս աղա և մաղէ, և սերկևլէ

ջրով շաղուէ՝ կուրս արա, և 'ի շքի չորացո, և 'ի բան տար, օգտակար է ։

Ապա թէ հունկնայի կարիք լինի, դու փոթոթայ-ին հունկնայ արա, զերդ այլ 'ի յառաջդ ասացաք ։ Եւ այլ պատրաստ՝ որ չտաս հաւու ձագ, և ոչ տաւ-ուաճ, մինչև չէ սրբել մարմինն աղէկ 'ի ջերման տա-քութենէն, ցամաքեալ և չորացեալ լինի ծաղիկն ։ Եւ ամենևին չէ պատեհ 'ի ծաղկած մարմինն ձէթ հասցնել, ոչ 'ի յառաջքն և ոչ 'ի վերջքն, զի խծկէ զգաղտ ընչահանքն, և ընկղմէ զտաքութիւն 'ի ներս 'ի մարմինն. զի ընծայի խավարղան, և կորնչի հիւանդն ։

## Պատմութիւն նախագիտութեան վասն ծաղկէն ջերմանն ։

Ապուճարեհն ասէ՝ թէ իւր պատճառն յաւելլի տաք և 'ի գէճ արենէ լինի, որ մարմնոյն յաղթէ ։ Ահամնայ ասէ՝ թէ իւր պատճառն այն արեան յա-ճելուածոյն լինի, որ մանուկն 'ի յարգանդի մօրն կերակրի. և այն արիւնն՝ կանացիան է, որ 'ի յամ մարմնոյն յիստակի և սրբի, և ապա կերակրէ զմա-նուկն ընդ պորտն ։ Եւ իւր նշանն այն է՝ որ ջերմա-նոյ խիստ, առանց դողալոյ. երեք օր երեք գիշեր 'ի յար լինի իւր տաքութի՛՛ առանց պակասելոյ. մէջքն և ողնշարն ցաւի ։

Եւ իւր սառածումն այս է, որ 'ի սկզբանն երակ առնուն, և արիւն թողուն ըստ ուժոյն ։ Ապա թէ յառաջ քան զերակ առնուլն՝ ծաղիկն յերևան գայ, երակ չէ պատեհ առնուլ, զի ահոկէ շատ ։ Ապա զկնի ծաղկին երևելոյն, գարեջուր՝ զոր յունապով և փոր-ճոկած ոսպնով եփած լինի, և սրքնճալին, զոր ծե-ծած խիարի հնդով, և ըղըդական հնդով, և սամթի հնդով լինի եփած՝ 'ի բանի պահէ ։

Ապա թէ երակ չկարէ առնուլ, 'ի գարեջրէն և 'ի հով իրաց պատրաստ կենայ. և զայն զդեղերն տանի 'ի բան, որ զծաղիկն 'ի դուրս հանեն և եփեն, այս նշանօքս ։ Առ փերճոկած ոսպն տասն դրամակշիռ. և քիթրէ հինգ դրամակշիռ. և բաղխանի հաւնդ, որ է ըռզիան, երեք դրամակշեռ. զայս զամէնս լիտր ու կէս ջրով եփէ, մինչև 'ի յերիցն մէկն մնայ. քամէ՝ և

սակաւ մի իւղ յինքն խառնէ և տուր, օգտակար է։ Կամ առ բաղխանի ջուր, և չնխաղողի ջուր, և շաքար, և սակաւ մի կարոսի ջուր. զայս զամենս յիրար խառնէ և տուր, օգտակար է. և այլ առ դալար գնձի ջուր և 'ի յինքն կաթեցո։ Այլ. առ զթութիայն գերմակած, և դալար գնձի ջրով եռացո, և 'ի յաչքն դիր. զի աչքն պահէ, և 'ի յաչքն ծաղիկ չկարէ ելանել։

Մասուայի որդին ասէ, թէ իւր սատածումն այն է՝ որ երակ առնու. ապա թէ երակ չկարէ առնուլ, ապիկիս արկանէ. և աչիցն պէտ առնէ՝ որ 'ի յինքն խաղաւարտ չելանէ։ Առ վարդի ջուր և աղտորի ջուր և նռան ջուր, յիրար խառնէ, և 'ի յաչքն կաթեցո։

Ապա թէ 'ի յաչքն ծաղիկ ելանէ, Ասպահանի ծարիր, և դալար գնձաջրով տրորէ, և 'ի յաչքն կաթեցո։ Կամ առ չոր գինձ և նռան ջրով թրջէ, և զայն ջուրն 'ի յաչքն կաթեցո։ Եւ կերակուր մաշ և ոսքն փերձակած տուր լուացած հաւում ձիթով. և 'ի մրգանց՝ խնձոր և սանձ տուր։ Ապա թէ ձմեռն լինի, զկրակն մօշի փայտով և այգւոյ մատամ արա։ Եւ երբ ծաղիկն 'ի չորանալ բռնէ, զմանտր աղն 'ի շուշմայի ձէթն խառնէ, և այնով օծանէ. և 'ի քիթմն մանիշակի ձէթ կաթեցո. օգտակար է կամօքն այ։

Եւ վարդն՝ զոր հարսանիթէ ասեն, և աղաւնեաց տուննն՝ քուլթէշ, նոյնպէս իւր պատճառն արոյնն լինի, զերդ որ ծաղիկն է։ Բայց ծաղկին գլուխքն և նիւթքն հաստ լինի և զօրաւոր, և վարդին այլ պարկեշտ և նօսր և թեթև լինի. և իւր սատածումն յար և 'ի մօտ է 'ի ծաղիկն։ Ծաղկին [1] սատածումն ամ դիմօք օգտակար է, թէ ած կամի։

1 Ցօրինակին պակասէր Ծաղկին։

# ԳԼՈՒԽ ԻԹ.

Պատմութիւն նախագիտութեան վասն պալղամին ջերմերոյն ։

Ընծայի ջերմ 'ի պալղամէն, յորժամ բորբոքման օտար տաքութիւն ընծայեցնէ, զոր չէ բնութիւն . և բորբոսիլն պալղամին կամ ցներքսէ 'ի յերակսն լինի, և կամ 'ի դուրս յերակացն, զերդ ստամոքսն, և քովքն, և այլ դատարկ տեղեստան յերակացն, որ կան 'ի մարմինն ։ Բայց երբ պալղամն 'ի ներս 'ի յերակսն բորբոսի, չհանդիպի հիւանդին ցրտանալ և դողալ, զի ցներքսէ երակացն արգիլած լինի, և չհասանի դուրս յանդամունսն 'ի մարմնոյն, որ ցրտացնէ և դողացնէ ։

Նաև այլ պատեհ է որ գիտենաս, այս ջերմն՝ որ 'ի պալղամէն ընծայի, որ երեք պատճառաւք ճանաչի, զերդ որ այլ բորբոսային ջերմերն, որ երեք պատճառանօք ճանաչին ։ Մէկ պատճառն այն իրուին են՝ որ բնութիւն լինին, որ հիւանդին խառնուածքն հով և գէճ լինին . զի պալղամն յաղթեալ լինի իւր խառնուածոցն . և տարօքն տղայ լինի, կամ ալևոր ։ Տղայոցն շատ հանդիպի, զի շատ կերակրին և յաճախ . և ալևորացն վասն այնոր հանդիպի, որ պալղամն շատ լինի 'ի մարմինն, և բնական տաքութիւն սակաւ . և ժամն ձմեռն . օդին խառնուածքն և երկրին օդն հով լինի և գիճային ։ Նաև երկրորդ պատճառն այն իրուին լինի, որ չեն բնութիւն . զերդ որ հիւանդն իւր ողջնութեան շատակեր լինի և շատախում և որկրամոլ . և զմարմինն շատ 'ի հանգիստ պահէ, և 'ի բաղանիս մտելն՝ շատ հետ կերակրին լինի և 'ի կշտելեց ։ Նաև երրորդ պատճառն այն իրուին լինին, որ օտար և 'ի դուրս են 'ի բնութենէն . զերդ որ հիւանդին ցաւի ստամոքացն բերանն, և լեզուն քան զչափն աւելի գէճ լինի, և կշտերն փուք առնու, և երեսացն գոյնն փոխի ։

Նաև այլ նշաններն և պատահմունքն երևենան, և ծարաւն քիչ լինի . ձեռան և ոտան խիստ հովանան . և այդ հովունդ ժամ մի մնայ, և 'ի նուպային ժամն

երբ շօշափես զմարմինն՝ չերևենայ տաքութիւն ընդ առաջքն, մինչև տաքնայ տեղւոյն՝ զոր բռնել ունիս, և արձակմանայ գաղտ շնչահանքն, պարկեշտանայ և նօսրանայ պալղամին նիւթն, բարձրանայ և յերևան գայ տաքութիւնն, և հետ այն տաքութեան գիջութիւն լինի. և իւր պատճառն պալղամն լինի: Եւ հետ այն գիջութեան սրութիւն լինի. և այն սրութեան պատճառն պալղամին բորբոսիլն լինի. և քիրտն չլինի. և որ լինի՝ պակաս լինի. և պատճառն պալղամն լինի, որ հաստ է: Եւ իւր նոպայն յերկար քաշէ, և մնայ տաքութիւն 'ի մարմինն ցրւի մինչև 'ի մէկայլ նոպային սկիզբն: Եւ մաճասին երակն փոքր լինի քան զերկուօր ընդ մէջ ջերմանն, և փոփոխական, և այլ 'ի յար լինի. իւր փոքրութեան պատճառն պալղամն լինի, որ իւր հովութիւնն տկարացոյց զուժն և հալեաց. և իւր շատութիւնն նեղէ զոյժն, և փոփոխէ զմաճասին զերակն. և 'ի յար լինելոյն պատճառն այն է, որ զմեծ մաճասին գործն կատարէ դէպ 'ի սիրտն:

Եւ իւր գոյն հաղ մի նուար լինի և սպիտակ և ղորկուտ, և հաղ մի թանձր լինի և պղտոր և կարմիր: Նօսրութեան պատճառն 'ի խցկելոյն լինի. և խցկելն՝ պալղամին հաստութիւնն և ղորկութիւնն լինի. և սպիտակութեան պատճառն պալղամին խառնածքն լինի՝ որ հով է: Եւ թանձրութեան և պղտորութեան պատճառն այն է, որ բնութիւնն՝ զհաստ և ղորկուտ պալղամն, որ զխցկումն արար, յուլանց տայ և հանէ ընդ գոյն. և կարմրութեան պատճառն այն պալղամն լինի՝ որ խցկեաց. յորժամ յամէ, բորբոսի և տաքնայ, և այն տաքութիւնն կարմրէ զգոյն: Ապա երբ այս նշաննոյս շատն երևենայ կամ ամէնն, նա յիստակ պալղամի ջերմ կոչի, որ նուպայն ամէն օր լինի, մանաւանդ 'ի յայն ժամն՝ որ այս ջերմն շատ հանդիպի մարդկան:

Այլ պատեհ է որ գիտենաս՝ որ երբ այս ջերմն 'ի յայն պալղամէն լինի, որ 'ի հալած ապիկի նման է, և բորբոսի, նա իւր նոպային սկիզբն փշանայ և սռսռայ մարմինն: Ապա թէ 'ի թթու պալղամին բորբոսելոյն լինի, նա իւր նոպային սկիզբն հովանայ միայն և ցրտանայ: Ապա թէ 'ի քաղցր պալղամին բոր-

բաւեղըյն լինի , նա իւր նապայթին սկիզբն ոչ ինչ լինի այդ. ամենեւա զօր առացաք ։ Եւ այլ պատեհ է որ գիտենաս զդողալն 'ի յամ ջերմերդ՝ թէ ո՛ր տեղաց սկըսանի ։ Ոմ ի կանանցն սկսանի դողն յողնշարէն . և արանցն 'ի ձեռացն և 'ի ոտիցն առնէ սկիզբն . զի կանանց բնութիւն հով է՝ և առաւել ողնշարըն [1], զի ոտկերքն և ջիղքն շատ են . նոյնպէս և արանցն 'ի ձեռան և 'ի ոտան միսն պակաս է , և ոսկր և ջիղն շատ ։

## ԳԼՈՒԽ Լ.

Վասն առածման և բժշկութեան ափխմուլինա ջերմանն որ 'ի պալղամէ լինի , որ թարգմանի ամ աւուր ջերմն ։

ԱՅԼ պատեհ է 'ի յայս ջերմանս սկիզբն զնշանն կակղացուցանել ։ Եթէ ուժն ընկերէ՝ տուր կէս լիտր պատատակի ջուր . և մնուցած վարդ տասն դրամ . և որքնձպլին տասն դրամ , յիրար խառնէ և տուր , զերդ որ այլ դեղի ռասմն է ։ Ապա թէ 'ի կարիք հասնի , գարեջուր տուր , եփած կարօսի տակ , և ըռազինի տակի կեղև՝ նուկի մի մեղրի որքնձուպինով . ապա թէ գարեջուրն քացխի 'ի ստամոքսն , մի տար զգարեջուրն ։ Ապա թէ 'ի յայդ ջերմդ վերաբերուն համդիպի , մի արգիլես , մանաւանդ 'ի հիւանդութեան սկիզբն . զատել՝ թէ շատ լինի վերաբերուն որ վատուժի հիւանդն ։ Ապա տուր Մայուբեհի շարապն , զոր զուգեն 'ի գինւոյ և 'ի սերկևլի ջրէն . և այլ տուր նուան թաղակ , որ անանուխով լինի զուգած . և յայս ջերմս մի տար դամոյնի ջուր և յուանապի ջուր և ոչ թմրհնդոյ ջուր , զի զէն է շատ ։

1 Ցօրինակին ողնշարին ։

Պողխացուն որ 'ի պալղամէ :

Ապա թէ գլխացաւութիւն հանդիպի, զգլուխն 'ի վերայ տաք ջրի շոգւոյ կալ. և արկ 'ի վերայ գլխոյն տաք ջուր, յոր եփած լինի մարզանկօշ և քլիլ մալք և նամամ՝ որ է սիսամբար. և 'ի քիթքն ձէթ մի տաս արկանել, և ոչ 'ի վերայ գլխոյն կաթն տալ կթել. զատել՝ թէ խարտեշ մաղձն խառնած լինի ընդ պալղամն : Այլ զկերակուրն հացի փշրուկ տուր, և ճակընդղի թաղուկ, և սիսռամն ջուր. զամենդ քաղցր նշի ձիթով. և 'ի յօրն հաղ մի տուր, և զայն թեթև :

Ապա թէ նեղէ զինք ջերման ցուրտն և հովանալն, տաք ջուր խմելոյ տուր, յոր եփած լինի դաղձն և անիսոն և կարուսի ունդ և մազտաքէ : Այլ դիր իւր ներքև տաք ջուր՝ որ քրտնի. յոր եփած լինի դաղձն և բաբունիճ և մարզանկուշ և սամիթ, և կամ այլ ջուր՝ յոր եփած լինի յինքն ակրկարհայ՝ ձարձատ առարած. զի խիստ արգիլէ զցրտանալն և զսուսալն զոր 'ի յայս ջերմս լինի, և 'ի յայն ջերմն՝ որ երկու օր ընդ մէջ լինի նոպայն, զոր անուանեն տերտուատէօս :

Ապա թէ նիւթն շատ լինի և հաստ, որ զերդ պաղած լինի, մի տաս սրքնճալին՝ մինչև նօսրանայ նիւթն և պարկեշտ լինի. զի սրքնճալինն զհաստ նիւթն այլ հաստացնէ : Ապա թէ նօսր լինի նիւթն և գէճ, և չլինի հաստ, տուր զսրքնճալինն, զի հալէ և կտրէ, և սրբէ զհով նիւթն, և զգօդն յորդորէ, զլերդին խցկելն և զերիկամանցն բանայ, և իջցնէ զգէճ նիւթն : Այլ այլ պատրաստ՝ որ հով ջուր չտաս 'ի յայս հիւանդութիւս, զի զնիւթն հաստցնէ, և զջերմն յերկարացնէ, և զնիւթին զեփիլն և զմճարիլն յամեցնէ. բայց տաք ջուրն խիստ օգտակար է, զի զնիւթն պարկեշտցնէ և հալէ, զծարաւն կտրէ, և զգիճութիւն հալէ :

## Վէրաբերութեան:

Ապա թէ վէրաբերութիւն չէ խոցնելն որ բնութիւն ընկերէ 'ի հետ, և 'ի կարիք լինի որ վէրաբերութիւն այնէ, տուր բողկ՝ որ ուտէ, որ թրջած լինի 'ի սրքընձպլինն օր մի և գիշեր մի. կամ կարմիր լովիասի ջուր տուր, որ յինքն եփած լինի սամիթ և առուի դաղձն և սակաւ մին աղ և սրքընձպլին. և յայդ ջերմանոտ սկիզբն գ.քո զնամ թպտիր հանց արա՝ զերդ որ ասացաք: Ապա թէ յամէ ջերմն, և ընդ տամանչորս օր անցնի, ըռազիանի ջուր և կարօսի սրքընձպլինով և կամ վարդի կաւաւով:

## Ըմպէլի որ օգտէ պալղամի:

Ապա թէ չթողու ջերմն այդ դեղերովդ՝ զոր ասացաք, զայս զըմպելի տուր՝ որ օգտէ պալղամին շատ օրաց ջերմանն. առ կարօսի և ըռազիանի տակի կեղև տասն տասն դրամ. շէկ չամիչ 'ի հատձէն հանած եօթն դրամ. վարդ, և զափդ՝ որ է պեռտարիօն, և պատովարդ՝ որ է հողմավարդ, և շուքաղ երեք երեք դրամ. զայս ամէն երեք լիտր ջրով եփէ մինչև մի լիտր մնայ. քամէ, և տուր յամէն օր չորս նուկի յանօթուց, օգտակար է:

Ապա թէ բնութիւն կապ լինի, տուր զայն հասպն՝ որ լուացած ասպրով լինի զուգէն և մազտաքէով և հընդիկ աղով. այլ հաւու ձագ մի տաս կերակուր, և ոչ տուռայձ, մինչև իջանի ջերմն, և պակասի քան զայն՝ որ յառաջին աւուրքն էր. զատել՝ թէ տեսանես զհիւանդն որ բնիկ վատուժել լինի: Նաև այլ պատեհ է՝ որ առաջի օրէն մինչև եօթն օրն պարկեշտ այլնես զթպտիրն. ապա թէ յետ եօթն աւուրն չպակասի ջերմն, և ոչ հետ չորեքտասան աւուրն, ապա զկերակուրն սակաւ մի այլ ուժով տուր, որ ուժն հիւանդութեան հաւասար գայ և բռնէ: Ապա թէ յերեսն կամ 'ի յոտոն փուքս անկանի, տուր զդեղն նախկին զոր յակրայբադինն կայ գրած, կամ զմուռսիայ դեղն:

### Դուստ որ օգտէ պալղամի :

Նոյն այլ այս կուրսս շատ օգտակար է հին ջերման, և որ 'ի յերեսն փուքս անկանի կամ 'ի յոտսն, և զուգէն զինքն 'ի տասն դեղէ . և իւր նշանքն այս է : Մէզն անխառն և կարմիր կապրի տակ՝ որ է քապարի տակ, չորս չորս դրամ . սադձ և օշինդր, սումպուլ և լեղի նուշ կեղևած, կարօսի ունդ և ըռազիանի ունդ մի մի դրամ . ղափտի քամուքս և մազտաքէ երեք երեք դրամ . զամէնս աղա և մաղէ . և տաք ջրով շաղւէ, կուրսեր արա, և 'ի շքի չորացո . և տուր ամէն օր մի դրամ հետ մեղեր սըքնձուպինի : Ապա թէ հազ լինի, տուր հետ մեղեր մնուցած վարդի :

Նոյն այլ պատեհ է որ գիտենաս, որ այս պալղամի ջերմն չլինի յիստակ, և խառն լինի ընդ խարտէշ մաղձն . յայնժամ պատրաստ՝ որ չտաս զտաք խիստ դեղերն . և ստածէ ըստ իւր նշանացն զոր երևենայ :

### Վասն խարտէշ մաղձի :

Ապա թէ խարտէշ մաղձն աւելի լինի, պակասեցո 'ի տաք դեղերոյն, և յաւելցո 'ի հով դեղերն, զերդ շաքարով սըքնձպինն, ճուլապ և զարեջուր, յոր ըռազիանն լինի եփած, և հնդիպէի հունդ, և տուր զտապաշիրին կուրսն, և այլ դեղեր՝ զոր նման են այտոց :

### Վասն սև մաղձի, որ է սևտայ :

Ապա թէ սաւտայն խառնի ընդ պալղամն, և հաստացընէ զինքն, 'ի բան տուր զխիստ տաք դեղերն, զերդ օշինդրին կուրսն հետ տակերոյ ջրին . և տուր զծծմի դեղն . և այլ տուր զթիրեաքն և զչամմանի ճվարիշն, և այլ զոր նման է յայդ դեղերտ . և այդ բաւական լինի օգնութեան ոյ :

Սահմանաւ Զաքարիային աստ 'ի նոյն պատճառդ, պալղամն չորս ցեղ են . մէկն այն է՝ որ 'ի հալած ապիկի նման է, և երկրորդն այն է՝ որ համօղն

թթու լինի, և երրորդն՝ համոյն քաղցր, և չորրորդն՝ համոյն աղի լինի. և երբ բորբոքին, ամէն մէկի նշան և այնելիք ուրիշ են։ Այս խուրեանց նշանն այն է. այն պալղամն որ 'ի հալած ապիկի նման է, լինի՝ երբ բորբոքի իւր ջերմն՝ խիստ դող ունի, և այն պալղամն որ համոյն թթու լինի, 'ի ջերման 'ի ժամն ցրտանալն շատ և խիստ լինի. և այն պալղամն որ աղի լինի, դողն և ցրտանալն պակաս լինի, և 'ի յետոյ տաքութիւնն աւելի քան զայլոցն. և այն պալղամն որ քաղցր լինի, դողն և տաքութիւնն պակաս լինի։

Այս խուրեանց ստածումն այն է. եթէ ջերմանն պատճառն այն պալղամն լինի, որ 'ի հալած ապիկի նման է, իւր ստածումն վերաքերութի այրնելն է. և կերակուր պարկեշտ տալ, զերդ մառեկ հաւ պարկեշտ համեմնով եփած, որ հիւանդին ուժն չպակասի, մինչև հիւանդութի 'ի մճար գայ։

### Ըմպելի պալղամի։

Ապա թէ ջերմանն պատճառն այն պալղամն լինի որ թթու է, յիր սկիզբէն 'ի վեր վարդմարապայ տուր մինչև ցեւթն օրն. ապա առ լուաղիանի ջուր և բղըրդակյան ջուր, և կարոսի ջուր, զամէնս յիրար խառնէ, և վարդմարապով տուր ըստ կարեացն 'ի յամէն օր 'ի յանօթուց, շատ օգտէ։

### Այլ ըմպելի պալղամի։

Այլ դեղ. առ մեղրաջուր, և ընդ զուփայն խառնէ և տուր. ապա թէ բնութիւնն կապ լինի, առ վարդմարապայ, և թառնճպինի ջրով տրորէ, և խմելոյ տուր՝ որ բնութիւնն կակղանայ։

### Ըմպելի վերաբերութեն պալղամի։

Ապա թէ պատճառն ջերմանն այն պալղամն լինի որ աղի է, իւր ստածումն այս է. առ սրքնճպին՝ որ հնդամոք լինի զուգած, և ընդ բողկի ջուրն խառնէ, և տուր՝ որ վերաբերութիւն առնէ։ Այս հետ այնոր

ա՛ռ մնուցած մանիշակ, եւ ընդ շիրխիշտն խառնէ եւ տուր ։

Հուքնայ պալղամի ։

Ապա թէ բնութիւն կապ լինի, հուկնայ դիր այս նշանօքս ։ Ա՛ռ մեղր եւ աղ եւ ճակընդեղի ջուր, եւ ընդ ներքոյ 'ի բամն տար՝ զերդ իւր ռասմն է․ օգտակար է ։ Ապա թէ վերաբերութիւն չկարէ առնել, բռանց մի տար վերաբերութիւն այրնել, որ ստամոքսն չտկարանայ եւ ահոկէ ։

Ապա թէ ջերմանն պատճառն այն պալղամն լինայ՝ որ քաղցր է, իւր ստածումն այս է՝ որ 'ի յանօթեց սրքնճուպին տաս, զոր հնտամնօք լինի զուգած ։ Ապա թէ հետ այս ջերմանս գոյն հաստ եւ կարմրագոյն լինի, երակ առ ըստ կարեացն, եւ հետ այնոր սրքնճուպին տուր, օգտէ ։ Ապա թէ զսարդոստէին զջրյնն հոռոմ ձիթով թանայ, եւ զմարմինն օծանէ, օգտէ ։ Ապա թէ այսով չիլուծանի ջերմն, իւր թապտիրն այն է՝ որ վերաբերութիւն այնէ, եւ կերակուր պակաս ուտէ, եւ վարդմարապայ տուր եղկ ջրով․ շատ օգտէ աստուծով ։

# ԳԼՈՒԽ ԼԱ.

Պատմութիւն և նախագիտութիւն վասն այն երկու ջերմանցն, զոր անուանեն անփիլիոս և լեպիրիայ:

ԱՅՍ երկու ջերմն ընծային հում և հաստ և յղըրկուտ պալղամէն, զոր 'ի հալած ապակի նման է. և ժողովի այն պալղամն 'ի ստամոքսն, կամ ցներքսն յամենայն երակսն: Ապա այն որ 'ի ստամոքսն ժողովի և բորբոսի, ընծայի իւրմէն ջերմն՝ զոր անուանեն անփիլիոս. իսկ այն որ ցներքս 'ի յերակսն ժողովի և բորբոսի, ընծայի իւրմէն ջերմն՝ զոր անուանեն լեպիրայ:

Ապա այս ջերմն՝ որ լեպիրայ անուանի, որ ցներքսէ լինի բորբոսն, իմանայ իւր տէրն խիստ ցրտութի ընդ գլուց մարմնոյն, և խիստ տաքութի ցներքսէ. մանաւանդ թէ խառնի մաղձն 'ի յայն բորբոսած պալղամն ցներքսէ 'ի յերակսն: Իսկ այն պալղամն՝ որ 'ի ստամոքսն ժողովի և բորբոսի, զոր անուանեն անփիլիոս, ընծայի իւրմէն ջերմն, որ իմանայ իւր տէրն զցուրտն ցներքսէ, և զտաքութիւն 'ի դուրս 'ի մարմինն. և իւր պատճառն այս է՝ որ այն մասն որ բորբոսեցաւ 'ի պալղամէն, այնէ զտաքութի. և այն մասն որ չէ բորբոսած, այնէ զցուրտն: Նաև իւր գոյնն այլ պակաս տաքութ լինի, քան 'ի յայն ջերմն՝ զոր անուանեն ափիմերուխոս, և այլ սպիտակ լինի և շատ հաստ. և իւր մաճասին երակն թոյլ լինի այլ աւելի քան ափիմերուխոս ջերմանն:

Այլ ուրդի յայս ջերմն՝ որ օր ընդ մէջ լինի իւր նոպայն. և այլ ուրդի՝ որ 'ի չորս օրն հաղ մին առնու զնուպայն. այլ դու մի մտիկ դնես իւր նուպային, և մի ընդունիս, այլ զինքն 'ի յար նշանացն իմացիր, և մի 'ի նուպայէն. զի կայ՝ որ յամէ իւր նոպայ չորս պահ. և այլ կայ՝ որ յամէ հինգ պահ. և այլ կայ՝ որ յամէ իւր նոպայն քսան և չորս պահ: Բայց այս ջերմն չքաշէ յերկար աւուրք, զի բնութիւն զշատն յաղթէ, և խափանէ զիւր գործն:

## ԳԼՈՒԽ ԼԲ.

Վասն ստածման և բժշկութեան երկու ջերմանն, որ անփիլիօս և լեպերայ կոչին :

Պատեհ է բժշկին որ 'ի յայս ջերմն զիւր յոյժն և զջանքն 'ի ստամոքսն այրնէ, և 'ի գողոյն յողդորեն, և տայ զորքնձուպինն կարօսի և ըռազիանի ջրով, սուսմպուղ և անիսոն, և այլ զօր ինչ նման են սոցա :

Մերաբերութեան այնել :

Նաւ 'ի կշտեղեաց վերաբերութեն տայ առնել բողկի ջրով և սրքնձուպինով և կարմիր լովխասի ջրով և սամիթով և մեղրով և աղով, և այլ զօր ինչ նման են սոցա . և այլ տուր զթրջած սապոն և զայարիձի փայղարան, օգտակար են : Նաւ կերակուր սիսռան ջուր տուր չամանով և լուացած ձիթով և նշի ձիթով, և տուր ճակընդեղի տակ, և ծնեբեկ մորիզով ամենովտ տուր զկերակուրն' որ զստամոքսն սրբէ, և զգողն յողդորեն, և զմնութին կակուղ պահեն . օգտակար է օգնականութեան այ :

Վասն ստածման և բժշկութեան այն միջնայ ջերմանն, որ լեպերայ կոչի :

Պատեհ է որ 'ի յայս ջերմանս սկիզբն վարդամարապայ տան սրքնձուպինով, և 'ի վերջքն հիւանդունես զթրջած սապոն և զթրջած այարիձն ըռազիանի և հընտիպէի և կարօսի ջրով . և այլ տուր զվարդին կուրան, և մազտաքէի կուրան . և ամենովտ պատուիրեմ 'ի յայս ջերմանս որ 'ի բան տանիս զդեղերն, և զկերակուրն և ըմպելիսն . այլ դէպ 'ի հովայինն քան զանփիլօս ջերմանն . և այդ կարճառօտ բաւական է, օգնութեան այ :

# ԳԼՈՒԽ ԼԳ·

*Պատճառութիւն և նախագիտութիւն վասն խարտեաշ մաղձին ջերմերոյն, որ է սփրայն, և հոռոմն փաներին խաւլն ասէ :*

ՅԱՌԱՋ պատեհ է իմանալ զմաղձին ջերմերն որ 'ի յիստակն են . և մէն մէն մաղձին էութիւն, որ յերեք դէմս բաժանին : Մէկ այն է՝ որ խարտեաշ մաղձն ցներքս 'ի յերակն բորբոսի . և իւր բորբոսն հաւասար ընդ ամ երակն մարմնոյն լինին . և անուանի յիստակ երկու տետուատէօսն . զի իւր տաքութիւն 'ի յար լինի : Բայց մէկ օրն թեթև լինի իւր տաքուն, և մէկայլ օրն շատ և մեծ . վասն այդ պատճառանացդ անուանի երկու տետուատէօս, որ չեն հաւասար . և հիւանդին երակն չորքի 'ի տաքութենէն, և ոչ տաքութիւն 'ի հիւանդէն, մինչև գայ մէկայլ նոպայն 'ի մէկայլ օրն :

Իսկ երկրորդ դէմն անուանի յիստակ և 'ի յար կափսօս, որ է այրեցող, զի անհնապայ և համապազ լինի իւր տաքութիւն . որ թարգմանի յար և այրեցող ջերմն : Եւ ընծայի նա՝ երբ բորբոսի մաղձն 'ի ներքս 'ի յերակն, որ շուրջ զսրտովն կան, և մօտ 'ի սիրտն լինին, և կամ 'ի լերդին յերակն 'ի ներքի դեհն, ուր փոսն է լերդին, կամ 'ի թոքին յերակն, կամ 'ի յայն յերակն՝ որ 'ի ստամոքաց բերանն 'ի մօտ լինի, և իւր այրեցն և վառչելն և լոշն և ծարաւն այլ շատ լինի քան 'ի յար տետուատէօսն, զոր երկուս կոչեն . և այլ որ լեզուն սև լինի, և խելքն ցրուած :

Իսկ երրորդ դէմն յիստակ այն է, որ ընդ դրուց երակացն բորբոսի մաղձն . և իւր նշաններն յերեք իրաց լինին, զերդ որ այլ յառաջդ ասացաք 'ի պալղամին ջերմն : Մէկն այն իրուլին են՝ որ ընութ͞ն լինին, զերդ հիւանդին խառնուածն՝ որ տաք և չոր լինի, և մաղձն իւր խառնուածոցն յաղթեալ լինի, և տարիքն մանուկ լինի, և ժամն ամառն լինի, և օդն տաք և չորային լինի : Եւ երկրորդ նշաններն այն իր-

ւին լինին՝ որ չեն բնութք. զերդ որ հիւանդն 'ի յառաջին կերակրեալ լինի տաք և չորային կերակուր, նոյնպէս և ըմպելիքն տաք և չորային լինի խմել, և շատ հոգս լինի տարել կամ տքնութի, կամ դատել լինի շատ, կամ շատ ժամանակ 'ի պաք է կեցել, և ընդ ցերեկոյ, և որոյ արուեստն զերդ դարբնութի լինի և կամ ապիկեգործութի, կամ այլ արուեստ՝ որ 'ի կրակի մօտ լինի. զի այս ամ խրուխս և իւրեանց նմանիքն տաքցնեն զմարմինն և չորացնեն, և խարտէշ մաղձն ընծայեն: Իսկ երրորդ նշանին այն իրուլին լինին՝ որ 'ի դուրս են 'ի բնութենէն, զերդ որ հետ ջերմանն խիստ դող լինի և խոցտիլ մարմնոյն զերդ ասղամբ. և այդ խոցտելոյդ պատճառն մաղձին սրութին լինի: Եւ 'ի նոպային սկիզբն՝ երակն փոքր և յուշ լինի, և հետ պակաս ժամումին՝ ահաւոր և ուժով լինի և փոփոխական. և իւր ուժաւորութեն պատճառ՝ մաղձին թեթևութին լինի և պարկեշտութին, որ չծանրէ 'ի վերայ ուժոյն և յաղթէ. և ահաւորութեան պատճառ կարիքն է սրտին, որ հովցնէ զտաքութե խստութին. և փոփոխական լինելն երակին ընդ ամ ջերմերն լինի. և իւր պատճառն այն է, որ նիւթն ծանրէ և նեղէ զուժն. բայց 'ի յայս ջերմն պակաս լինի. զի իւր խլտն թեթև է և պարկեշտ: Դողն կրակի գունով լինի, և իւր հոտն նեխած. կարմրութե պատճառն՝ մաղձին շատութին լինի և տաքութին. և նեխահոտութեան պատճառն՝ նիւթին բորբոսիլն լինի:

Այլ յայս ջերմն ծարաւ լինի խիստ, և նեղհոգութի շատ. սրտին շարժել լինի, և վերաբերութի մաղձի. և այլ կու լինի՝ որ 'ի վայր լուծանի մաղձն. և շատ քրտնի, զի պարկեշտ է նիւթն[1] որ է մաղձն: Եւ երբ զայս նշանսնիս տեսանես, և կամ զշատն 'ի յայսոցէ, գիտացիր՝ որ 'ի խարտէշ մաղձէն ջերմն է՝ որ օր ընդ մէջ ունի զնոպայն, տասն և երկու պահ, զոր անուանեն յիստակ տետուատէօս. մանաւանդ՝ թէ 'ի յայն ժամն շատ հանդիպի այս ջերմն մարդկան: Եւ երբ յիստակ լինի՝ եօթն նոպայով բառնէ 'ի տասն

1 Յօրինակին նոյն:

և չորս օրն. և նոպայէ 'ի մէկայլ նոպայն երեսուն և վեց պահ լինի միջոցն՝ երբ խալըս լինի, որ է յիստակ:

Հարցումն՝ եթէ ե՞րբ բորբոսի մաղձն, զի տաք է և չորային. կամ սաւտայն, զի հով է և չորային. զի ասեն ոմանք՝ եթէ չորութի արգիլէ զբորբոսիլն:

Տամք այնպիսւոյն պատասխանի այսպէս, եթէ չորութի երեք դէմս ունի. մէկն՝ որ չորութիւն 'ի յիրացն 'ի բնութին լինի և խառնուածքն. և երկրորդն՝ որ 'ի մարմինն լինի. և երրորդն՝ որ 'ի յերկուսն լինի չորութի, 'ի բնութին և 'ի մարմինն, որ է էութի: Ոչ կան իրուի՝ որ իւրեանց բնութին չորային են և ցամաք. բայց իւրեանց էութին հոսին[1] և ծորին, զերդ մեղրն և գինին, և խարտէշ մաղձն, և աղի ջուրն, և այլ զոր ինչ նման են այտոց: Նաև այլ կան իրուի՝ որ իւրեանց բնութի և խառնուածքն տաք են և գիճային, բայց էութեամբ և մարմնովն չոր լինին և պինդ, զերդ զդարապղպեղն, և զանճապիլն, և այլ զոր ինչ նման են այտոց: Նաև այլ կան իրուի, որ իւրեանց բնութին և խառնուածքն մարմնոյն, որ իւրեանց էութին, չոր և պինտ լինին, զերթ զերկաթն և զքարն, և այլ զոր ինչ նման են այտոց:

Իսկ այն իրուին, որ իւրեանց մարմինն չոր և պինտ լինին, և բնութիւն գիճային և կակուղ, նա հնար ունի և ճար բորբոսելոյ վասն իւր գէճ խառնուածոցն. զի օտար տաքութիւն երբ 'ի յինքն գործէ, գտանէ իւր գէճ խառնուածքն, որ թուլացնէ և ծորէ և սփռէ և շարժէ դէպ 'ի դուրս, և եռացնէ և բորբոս ընծայեցուցանէ: Իսկ այն իրուին, որ իւրեանց բնութիւնն չորային լինի և ցամաք, և մարմնովն կակուղ լինին, ծորին և հոսին, ունին հնար և ճար բորբոսելոյ. զի մարմնոյն էութեամբն կակուղ են, ծորին և հոսին. նա օտար տաքութին երբ յինքն մտանէ, գտանէ 'ի մարմնոյն գիճութին՝ զոր կակղացնէ և ծորեցնէ, և դէպ 'ի դուրս քաշէ, և եռացնէ և փոխէ 'ի բորբոսիլն: Իսկ այն իրուին՝ որ իւրեանց բնութիւնն և մարմինն չոր և ցամաք լինի և պինդ, նա չունին

1 Յօրինակին հուսին, որպէս և այլ ուր 'ի տեղիս քանիս մի:

հնար և ճար ամենևին բորբոսելոյ , զի երկու դէմն ժողովեալ ունին՝ զբնութ̃ն և զմարմնոյն ։ Ապա երբ այդ հանց հանդիպի՝ զերդ որ ասացաք , և գործէ 'ի յինքն օտար տաքութ̃ի , այլ յաւելցնէ իւր չորութ̃ին և խիստ պնդութ̃ի ։

Իսկ խարտեշ մաղձն թէպէտ և բնութ̃ն չորային է , այլ մարմնոյն էութ̃ն կակուղ է , ծորի և հոսի . վասն այդ պատճառանացդ ընդունի զբորբոսիլն . Նոյնպէս և սև մաղձն , որ է սաւտային ։

Այլ 'ի յառաջդ յիշեցաք զիրուլին՝ որ բնութ̃ն են , և զոր չեն բնութ̃ , և զորս 'ի դուրս են 'ի բնութենէ . արդ այն իրուլին՝ որ բնութ̃ են՝ եւթն են , որ են այսոքիկ . տարերքն և խառնուածքն , նիւթերն և անդամունքն և զօրութեներն և գործերն և երեք շունչն , զոր երեք հոգիք անուանեն ։ Իսկ այն իրուլին՝ որ չեն բնութ̃ , վեց են , որ են այսոքիկ . օդն՝ որ զմեզ պատեալ ունին . և մեր շարժիլն և խաղաղ կենալն . կերակուրն և ըմպելին . քունն և արթնութիւնն . և բնութ̃ լուծանիլն և կապիլն . և պատահմունքն , զոր 'ի յերեք հոգիսն հանդիպին , զերդ հոգալն և տրտմելն և 'ի սիրտ ելանելն , և այլ զոր ինչ նման են այսոց ։ Իսկ այն իրուլին՝ որ 'ի դուրս են 'ի բնութենէն , երեք են . որ են այսոքիկ . հիւանդութիւնքն , և պատճառնին , և պատահմունքն ։

Եւ այլ ասացին , եթէ խարտեշ մաղձն երբ յաղթէ , կամ ա̃մ մարմնոյն յաղթէ , և կամ յանդամոյ միոյն 'ի մարմնին ։ Ապա թէ ա̃մ մարմնոյն յաղթէ , կամ բորբոսած լինի , և կամ անբորբոս ։ Եթէ անբորբոս լինի , նա ընծայի իւրմէն արական , որ է մարմնոյն դեղնիլն ։ Ապա թէ բորբոսած լինի , կամ ցներքսէ յերակսն լինի , և կամ 'ի դուրս 'ի յերակացն ։ Ապա թէ ներքսէ յերակացն բորբոսի , նա ընծայի իւրմէն յար ջերմ , որ կրկնակ տետռատեօս ասեն . և կամ ընծայի ջերմ , որ կոչի կաւսօս , որ է 'ի յար և այրեցող ջերմ ։ Իսկ եթէ 'ի դուրս 'ի յերակացն բորբոսի , նա ընծայէ զնոպայով տետռատեօսն , որ օր ընդ մէջ բերէ զիւր նոպայն ։ Ապա թէ յանդամ մին վաթի , նա նոյնպէսն կամ բորբոսած լինի , և կամ անբորբոս . եթէ անբորբոս լինի , նա ընծայէ

զաղուեսացան և զօձացան, և տաքութն յարցնէ[1] ։ Իսկ եթէ բորբոսած լինի՝ նա խումրայ ընծայէ, որ է կարմիր և տաք այտոց՝ որ ուտէ զմարմինն, և խաղաւարտ այրնէ ։

Այլ պատեհ է՝ որ գիտենաս զմաղձն, որ երեք ցեղ են ։ մէկն այն է՝ որ խարտեշ լինի, և իւր բնակութիւն 'ի լերդն լինի և 'ի լեղին ։ և երկրորդն այն է՝ որ զաֆրանի գունով լինի, և իւր բնակութիւն 'ի լերդն լինի և ստամոքսն ։ և երրորդն այն է՝ որ քուռաթի գունով լինի, և իւր բնակութիւն 'ի ստամոքսն միայն լինի ։ և իւր ընծայելն 'ի տաք և 'ի կծու կերակրոց լինի, զերդ պղպեղն և մանանեխն և խստորն, և այլ զոր ինչ նման են այտոց ։ Եւ յայտ 'ի քուռաթէտ չընծայի որ ընդ մէջ ջերմ ։ զի բնութիւն հրէ շուտով, և վարէ 'ի ստամոքացն, և չթողու որ բորբոսի ։ Եւ երբ այդ ջերմս յստակ լինի՝ նա եռայ իւր տաքութիւնն և խոցոտէ զլերդն ։ ապա թէ չլինի յիստակ, նա չերևնայ 'ի յայդ նշաններդ՝ զոր ասացաք՝ ընով ։ մանաւանդ խառն նշաններ երևնան ։ և իւր պատճառն այն է՝ որ այլ նիւթեր խառնին ։

Ապա երբ չլինի յիստակ որ ընդ մէջ ջերմդ, իւր նշանքն այս են՝ որ իւր նոպայն քան զտասանուերկու պահ այլ աւելի քաշէ, և իւր նոպայքն այլ յաւելնան քան զեօթն նոպայն ։ և իւր մաճասն փոփոխական և այլ և այլ ցեղ լինի ։ և 'ի գլուխն ծանրութի լինի ։ և իւր նոպայքն դողալն քսան և չորս պահ քաշէ, և կայ՝ որ այլ աւելի ։ և իւր եփելոյն երևումն յուշ լինի, և 'ի հիւանդին փորքն[2] չերևնայ նիհարութի և ոչ բարակութի ։ և յանկարծ լինի՝ որ չթողու շուտ քրտնելով ։ և կամ լինի՝ որ սկիզբն չլինի դողալն ուժով ։ և իւր տաքութիւն չլինի զերդ յիստակ ջերման տաքութի ։ Ապա զայդ նշաններս տեսանես, գիտացիր որ այն ջերմն չէ յիստակ ։ Իսկ մեք յառաջ զյիստակ ջերմանն զստածումն և զբժշկելն յիշեմք, և ապա զխառն ջերմերոյն՝ որք ոչ են[3] յիստակ ։

1 Յօրինակին յերցնէ ։ 2 Յօրինակին ջարքն ։ 3 Յօրինակին որ հոլին ։

## ԳԼՈՒԽ ԼԳ.

*Վասն տառածման և բժշկութեան յետուակ տրիտատէօս ջերմանն, զոր հոռոմն ակրատոս անուանէ, և տաճիկն խալըս. որ թարգմանի անապակ և յետուակ մաղձին ջերմն։*

Այս պատահէ որ 'ի գամէ[1] և յանդգահ բժշկէն զայդ ջերմդ, որ յետուակ կոչի. և չշտապելն 'ի յիւր բժշկութիւն, զի խարտեաշ մաղձն սուր է և պարկեշտ, և չքառնայ զխալատ այնելիքն 'ի բժշկէն կամ 'ի հիւանդէն։ Ու պատրաստ՝ որ այլ չառնես զինքն սուր դեղերովն, որ չընծայի այտոց 'ի յանդամ մին յիշխան անդամոցն. և այլ մի խիստ հովցնես, զի հաստացընես զնիւթն, և յամեցնես զեփիլն, և յերկարեցնես զհիւանդութիւն։

Այլ պատահէ որ ընդ յառաջքն պէտ այնես բընութիւն, և կակղացնես դամոյնաջրով, և թմրհնտոյ ջրով, և թառանկուպինով, և այլ զոր ինչ նման են այսոց։ Ապա հետ նիւթին եփելոյն, կակղացո ըզբնութիւն օշինդրի ջրով, և դեղին հալիլէի ջրով, և այլ զոր ինչ նման են այսոց։ Ու զլուծման դեղերդ 'ի նոպային օրն մի տաս, այլ հանգո զհիւանդն. և տուր այն օրն գարեջուր մէն, կամ նուռան ջուր։

Ապա թէ նոպայն 'ի վաղուենէ բռնէ, մի տաս զգարեջուրն, զի 'ի վեր ձգէ, և պատճառ լինի գլխացաւութեան, և դժարցնէ զջերմն, այլ տուր զգարեջուրն առաւօտուն՝ յառաջ քան զնոպայն հինգ պահով կամ վեց պահով։ Ապա թէ չկարէ խմել զգարեջուրն, տուր դդմի ջրով և մուզ նռան ջուր. զի դդմի ջուրն զգարեջրին կարիքն կատարէ, երբ չկարէ խմել զգարեջուրն։ Ու երբ նոպայն անցանի, տուր կերակուր սպանախ, և թախտ, և փերփերան, և վլիտան, և դդում։ Ապա թէ 'ի կուրծքն խոշորութիւն լինի, մօլօխ՝ որ է 'ի խուպազէ ազգ մի, որ է ցան-

1 Յօրինակին խփամէ ։

ծոյ, և տանու աղձկուտաւի, զի այդ ամենդ կակ-ղացնէ և զտապքութին հաշնատէ։

Ապա թէ նոպայն յերեկոյեն բռնէ, տուր զզա-րեջուրն առաւօտուն, և հետ երեք պահու և չորք պահու տուր զկերակուրն։ Ապա թէ նուաղիլ հան-դիպի հիւանդին, և կամ դարտկի մարմինն լուծմամբ, ուր և ուրդի լուծումն, տուր կերակուր՝ որ չաքօքան սակաւ լինի, և ընութեան պարկեշտ, զետ հացի փըշ-րանքն նուամն ջրով։ Եւ այլ շատուց լուծումն դիպի, կամ քրտնի շատ, կամ վերաբերութին այնէ. զի յայս ջերմն համապազ այդ երեքդ հանդիպին, մանաւանդ վերաբերութին։

## Տեղիք սրտանոխաց պատուանէ։

Ապա թէ վերաբերութիւնն շատ լինի, խաղողոյ, խնձորի քանդակով, և ազոխի քանդակով, և թթու-նուան քանդակով, և թարունճ քանդակով, և փըռ-տուխի վերի կեղևովն. և տուր որ ծամէ այգւոյ խաւըր-ծիլ, և ջուրն 'ի կուլ տայ. և զթուրխնձին [1] թթուն տուր. և 'ի վերայ ստամոքացն տմէտ արա մրտի ջրով, և խնձորի ջրով, և սերկևլի ջրով, և վարդի ջրով՝ որ է զուգծոյ, և սուք և քաֆուր և լատան, և այլ զոր նման են այսոց։

Ապա թէ շատ լուծումն դիպի, տուր մթխալ մի տապաշիրի ղուրս, որ թթուչի հնդով լինի զուգած, թթու խնձորի ջրով, կամ ազոխի ջրով, կամ սեր-կևիլի, կամ մրտի քանդակով. և տուր նուան հատի փոխինտ, կամ փշատի փոխինտ, կամ չոր խնձորի փոխինտ. և իւր կերակուրն տուր աղտուրով, և հե-տէն պաքսիմատ կեր։

## Հուքնայ կապող՝ մաղձի լուծման։

Ապա թէ շատնայ մաղձին լուծումն, և վախես յա-ղեցն՝ որ չիխոցնայ, հոկնայ դիր այս նշանօքս։ Առ զառնալեզվի ջուր, և հովուաց քըրի ջուր, և փրփրե-

1 Ցօրինակին հուրին։

մի ջուր, և ձուի մի դեղնուց, մատնեհար կաւ, սա-կաւ մի վարդի ձէթ. զայս ամէնս յիրար խառնէ, և 'ի բան տար, որպէս այլ հոկնայի ըռասմն է:

### Ըմպելի հալող՝ մաղձի լուծման:

Այս տուր խմելոյ զայս դեղս. առ բղղատուն ա-ղընծած, հայ կաւ, և մատնեհար կաւ, և մրտի քա-մուքյն: Ապա թէ փառուժ է հիւանդն 'ի շատ քըրտ-նելոյ, զհիւանդն 'ի հով տուն նստեցուր, և տուր սփռել 'ի տունն վարդ, և ուռի տերև, և խնծորի տերև, և 'ի տանն 'ի յանկունն դիր լախլախայ, որ հովային և անուշահոտ ջրով լինի եփած. և օգտա-կար են կամօքն այ:

Նահանմայ ասէ 'ի նոյն պատճառդ, եթէ իւր գը-լուխքն խարտեշ մաղձն լինի, որ 'ի դուրս յերակնոյն բորբոսի. հոռոմն [illegible] [illegible] անուանէ, և տաճիկն ղըրդանիդա, որ թարգմանի յիստակ երեքօ-րեայ. և իւր նոպայն օր ընդ մէջ լինի երկուտասան պահ: Այս իւր նշանն այն է, որ ջերմն զօրաւոր բռնէ, և տաքութիւնն շատ երևնայ 'ի մարմինն, և քրտինքն շատ լինի. բայց դոյր է ինքն, և շուտ արձակի. և յե-տինսան սահմանն տասնևչորս օր լինի, յորժամ մաղձն խառնորդ լինի յայլ նիւթէ և յիստակ:

### Ըմպելի սաքրայի:

Այս իւր ստածումն այն է, որ համապազ քաղցր և թթու նռան ջուր խմէ. ապա թէ առնուս դեղլին հելիլէ տասն դրամակշեռ, և մանր աղաս, և ընդ ճուլապ խառնես, և տաս, շատ օգտէ:

### Սաքրայ լուծանելոյ ըմպելիք:

Կամ առ երկու տանկ սակամոնի, և նոյնպէս ճու-լապով խառնել, տուր՝ եթէ զօրութիւն ուժով լինի, որ ձեռն մի քանի մաղձ 'ի մարմնոյն ելջուցանէ, շատ օգտէ: Գարեջուր և սրքնճուպին տուր. և կերա-

կուր մաշ և սպանախ, և փերձոկած ոսպն 'ի նոպայէն 'ի թողելոյն ժամն։

## Տէ սաֆրայի։

Ապա ա՛ռ սանտալ, և քաֆուր, վարդէջրով շաղ֊ վէ, և 'ի վերայ սրտին, և 'ի վերայ լերդին դիէ ա֊ րա, օգտէ։ Ա՛ռ քացախ և վարդի ջուր, և ընդ կիտ֊ եղկ ջուր խառնէ, և զոտսն այնիւ ծեփէ։ Եւ երբ հիւանդութեն վերջ գայ և արձակի, կերակուր հաւ֊ ձագ տուր, զոր աղոխի ջրով, կամ նռան ջրով եփած լինի, և յետ այնոր զառան և ուլոյ միս տուր, և թա֊ ժայ ձուկն քացախով եփած 'ի բանի պահէ։

## Պըրախ որ շատ 'ի սաֆրայէ։

Փօլօս ասէ, թէ իւր սատածութն այն է՝ որ առնու բարունիճ և մանիշակ և նոնոֆար. զայս զամէնն ջրով եփէ, և այն ջրովն զգլուխն ծեփէ. 'ի հով տե֊ ղի և 'ի հով տուն նստի, և ուռի տերև 'ի մօտն և 'ի տունն տարածէ. 'ի հով և 'ի գիճայէն իրուէն յա֊ րենայ ուտելով և խմելով. այլ մրգաջրով և թառան֊ կուպինով զբնութեն կակուղ պահէ, կամ նոնոֆա֊ րի ջրով և մանիշակով, օգտակար է։ Եւ տապուէն հապոյն և մազտաքէով խախաչ առնէ, և սրքնճու֊ պէն և նռան հատն օգտակար են։ Ապա թէ բնու֊ թիւնն լոյծ լինի, սերկեւլի ըռուպ տուր, և այլ զոր ինչ նման են սոցա։ Ապա թէ բնութեն կապ լինի, մրգաջուր տուր։ Ապա թէ ծարաւն խիստ լինի, փեր֊ փերանի հնտէն կաթն, և դդմի ջուր, և շաքարի սըր֊ քընճուպէն տուր, օգտակար է։ Ապա թէ ջերմն զօ֊ րաւոր լինի, զքաֆուրի ղուրսն տուր տասակ սըքըն֊ ճուպէնով. և կերակուր աղոխի մուզավարայ տուր. օգտէ եթէ ա͞ծ կամի։

Սատն սրտածման և բժշկութեան այն ջերմանն՝ որ չէ յետրաչ դեփոատրէօս, այլ խառն և յօդաչան է 'ի յայլ նիւթէ :

Գաղիանոս ասէ, եթէ պատեհ է որ պէտ այրնես և ջանաս՝ որչափ կարողութի ունիս՝ որ զհիւանդութիւնն չլյաւելցնես, և զհիւանդին ուժն չըլցնես և քակես, և վատուժցնես : Զի ուժն յերկարօրեայ ժամանակի պէտս ունի, որ ծառայէ զհիւանդութին և եփէ : Իսկ յորժամ սակաւ կերակուր տաս, օգտէ հիւանդութեն շատ եփելոյն. բայց զնոյն զչափքն ահուկէ հիւանդին ուժոյն և զօրութեն, և այլ աւելի : Ապա թէ աւելի տաս, օգտակար է հիւանդին ուժոյն, բայց զնոյն զչափքն յաւելցնէ զհիւանդութեն զեփիլն :

Ապա պատեհ է որ յայտ 'ի տեղիտ տեսանես՝ թէ յո՛ր չափս է հիւանդութին, և 'ի յո՛ր չափս է ուժն հիւանդին. և տեսանես՝ թէ յերկուքն ո՛ր ունի կարիք օգնելոյ, և այնոր օգնական լեր. և պատրաստեցո 'ի կերակրէ, յորժամ հիւանդին զօրութին ուժով լինի, և հիւանդութիւնն հեշտեփեաց. և այլումն զդժարեփեցն ասէ. այլ տո՛ւր կերակուր՝ յորժամ զօրութի հիւանդին վատուժ լինի, և հիւանդութի լինի՝ որ խիստ դժար եփի : Նոյն զայս կանոնքս, զոր ասացաք, պահել պարտ է 'ի յամ ցեղ հիւանդութիւն :

Այլ զայս ջերմանս տեղն 'ի սկիզբն հիւանդութեն 'ի բաղանիս չէ պարտ տանել. բայց յորժամ զեփելոյն նշաննեին տեսանես, պատեհ է որ 'ի բաղանիս մտէ : Նոյն յամ օր չէ պատեհ կերակուր տալ, զի որ ընդ մէջն բաւական է : Այլ 'ի նուպային օրն զըմպելիքն միայն տուր, զերդ զգարեջուրն և զշարապնին, և 'ի մէկայլ օրն՝ որ չունի զնոպայն, կերակուր տուր : Նոյն այդ հիւանդիտ համդիստ կալ և խաղաղ՝ խիստ օգտակար է. և զկշտերն տաքցնելն օգտէ. և այլ միջակ հուկնանին, որ ոչ խիստ սուր լինին և ոչ կակուղ, օգտակար են :

Այլ պատեհ է որ հայիս սկիզբն հիւանդութեն, որ թէ կարիք է արիւն հանելոյ, և օգնէ ուժն և տա

րիքն , ապա արիւն հան ըստ կարեացն և ըստ որպիսութեան ։ Իսկ այլ զկերակրոց թպտիրն չէ պատեհ հովլ և գինձայլին առնել , զերդ. յիստակ ջերմանն ըզթպտիրն , այլ պատեհ է որ 'ի յայս ջերմանս 'ի դեղերն՝ խառնես զպարկեշտցնող և զկտրող դեղերն . այլ 'ի յայս ջերմանս 'ի գարեջուրն սակաւ մի պղպեղ ընկենուլ օգտակար է ։

Այլ դեղ . առ սակաւ մի զուֆայ , և սակաւ մի լերին դաղձն , որ է քարամնուխն , զայսոնք եփէ մեղրաջրով , և քամէ , և տուր որ խմէ ։ Իսկ այլ տուր մարապ վարդի սրքնձպինով . և տուր զայն դեղերն՝ որ զգօդն յորդորեցնեն , զայն՝ որ չլինի խիստ տաք և չորային ։ Իսկ երբ եւթն օրն անցնի , դու օշինդր տուր յամէն օր , օգտակար է . և այլ սրքնձպինն շատ օգտակար է ։ Իսկ լուծման դեղերն զայն տուր՝ որ կակուղ են և անահոկ . և յետ կերակրոյն վերաբերութիւն այրնել շատ օգտակար է . զի շատք տեսաք՝ որ յամեցին յայդ ջերմն , և վերաբերութեամբն ողջացան ընիկ ։

Մխէպիթ Կուռային ասէ , այն որ զՄախիրային շարեաց , թէ մի տար 'ի յայս 'ի ջերմն զլուծման դեղերն՝ որ շատ ուժով լինին . ապա թէ դեղ կամենաս տալ , այս նշանօքս տուր ։

## Սաֆրայի դեղ լուծման ։

Առ դեղին հալիլէ աղցած և մաղած 'ի տասն դրամէն մինչև 'ի հնգետասան դրամ . և դամոնի ջրով 'ի թրջոց դիր օր մի և գիշեր մի . ապա աճրուէ , և քամէ , և արկ 'ի ներքս շաքար տասն դրամ կամ հնգետասան դրամ , և տուր որ խմէ ։

## Սաֆրայի ։

Այլ դեղ . առ դեղին հալիլէ աղցած և մաղած երկու նուկի . և նուան ջուր նոյն ձրագուումն ծեծած և քամած ութսուն դրամ . զհալիլան 'ի ներքս արկ օր մի և գիշեր մի . ապա աճռուէ , և քամէ , և արկ 'ի ներքս շաքար քսան դրամ . և տուր որ խմէ ։

## Սաֆրայն :

Այլ դեղ. առ դեղին հալիլէ աղացած և մաղած երկու նուկի, և 'ի թրջոց արկ 'ի յերեսուն դրամ ձուլապ. և արկ 'ի վերայ քառասուն դրամ ջուր, և թող օր մի և գիշեր մի. ապա աձրուէ, և քամէ, և խմելոյ տուր: Ապա թէ կարիք լինի՝ որ այլ շուտով այրնես, առ մէկ մին 'ի յայդ ջրերոյտ, և արկ 'ի հաւանին 'ի վերայ նոյն չափս հալիլայի, և հար հաւանի կոթօծն աղէկ, ապա քամէ, և տուր որ խմէ:

Ապա թէ տաքութիւնն աւելի լինի յայս ջերմն, խառնէ յայդ դեղերդ պզրղատունի լուղապ տասն դրամ, և տուր որ խմէ: Ապա թէ կարիք լինի 'ի յայլ ուժով դեղ, և հիւանդն կարող է՝ որ վերցնել կարէ, դու առ կէս տանկ սակամոնի կամ տանկ մի, և տուր սակաւ մի ձուլապով, կամ մանիշկի շարապով, կամ եղկ գարեջրով, կամ սրքնձպինով:

### Դասս մանուշակի, լուծման :

Այլ նշանք մանուշակի կուրսի, որ լուծումն այրնէ, և օգտէ այդ ջերմանտ: Առ չոր մանիշակ, և խիարի ունդ կտուած երեք երեք դրամ. սակամոնի կէս դրամ. զամէնս աղա և մաղէ, և ջրով շաղւէ, կուրս արա, և 'ի շքի չորացո, և տուր դրամ մին և կէս տանկ:

Եւ զամ լուծման դեղերն 'ի յայն օրն տուր՝ որ չունենայ զնոպայն. այլ 'ի նոպայէն օրն մի՛ տաս զլուծման դեղն. իսկ թէ վերաբերութի տաս այրնել, պատեհ է: Եւ զայդ 'ի դողալուն առէնէ սկիզբն[1] արա, կամ 'ի տաքութեն սկիզբն տաս այնել զվերաբերութին սրքնձպինով և տաք ջրով. և 'ի յայս ջերմն պատեհ է որ հետէն սրքնձպին խմէ, շատ օգտէ: Եւ 'ի յայլ յամ բորբոսային ջերմերն տուր զխրքանձուպինն, զի զբորբոսած նիւթն պարկեշտացնէ, և հանէ ընդ գուզին, և ընդ ձեռնալուային, և ընդ քրտինքն հանէ:

1 Յօրինակին տփէն և օխփզին :

Ապա թէ յերկար քարշէ այս հիւանդութիւնս, տուր դարեջուր՝ յոր եփած լինի ըռզիանի տակի կեղեւն եւ իւր հունդն. զի ըռզիանի տակի կեղեւն եւ ունդն պարկեշացնէ զբորբոսած նիւթն, եւ հանէն յերակացն։ Նոյն այլ ՚ի դողալուն սկիզբն՝ եւ երբ դողն առնու զմարդն՝ զոտսն եւ զձեռսն ՚ի տաք ջուրն դիր. եւ նոյնպէս ներքեւ հանդերձին տաք ջուր դիր, հանց որ շոգին եւ տաքութիւնն ՚ի մարմինն հասանի. եւ զհանդերձն՝ որ հագնի՝ բրդէ տուր զուգել։

Ապա թէ յերկարանայ հիւանդութիւնն, եւ կամ տաք նիւթն ՚ի յինքն աւելի լինի, տուր վարդմարապայ, եւ շաքարով սրքնջպին տամն տամն դրամ որ խմէ. եւ երբ պակասութիւնն, տուր զվարդին փոքր կուրսն սրքնջպինով, եւ օգտէ աստուծով։ Իսկ եթէ յերկարանայ այդ հիւանդութիւնդ, ապա տուր զսապոն՝ զոր ըռազիանի ջրով եւ հնտիպէի ջրով թրջած լինի. եւ զինքդ ՚ի յակրայբադինն գտանես գրած։

Նշաննայ սրափիոնացւոյ որդին ասէ ՚ի նոյն պատճառդ, եթէ այս ջերմանս պատճառն այն լինի՝ որ երկուսն ՚ի չորից նիւթիցն, կամ երեքն բորբոսին, եւ խառն ջերմ այրնեն. եւ իւր նշանն ըստ աւելի եւ ըստ յաղթող նիւթին լինի, որ աւերեալ բորբոսեցաւ ՚ի չորից նիւթոցն։ Իսկ նշանքն զամէն մէկ ՚ի յառաջ քան զայդ ցուցաք օգնութեամբն ա՟յ։

Իսկ իւր ստածումն եւ բժշկութին այն է, որ բժիշկն իր միօքն աղէկ տեսանէ եւ իմանայ, եթէ ՚ի չորից նիւթոցն որն բորբոսեցաւ, որն է զօրաւոր եւ յաղթողն։ Ապա թէ աւեր արիւնն զօրաւոր եւ յաղթող երեւնայ, պատեհ է որ երակ առնու ըստ հիւանդութեանն, եւ ըստ հիւանդին զօրութեան արիւն թողու. եւ զդէմմն աւելի ՚ի յարեանն ՚ի ջերմանն ստածումն այրնէ։ Ապա թէ ՚ի յայլ նիւթոցն տեսանես յաղթող եւ զօրաւոր, տես թէ որ է ՚ի չորիցն յաղթող եւ զօրաւորն՝ իւր նշանօքն, որ է մաճասին երակն, եւ ՚ի ղարուրայն, եւ պուրհանն, եւ ՚ի յայլ պատահմունքն՝ որ զկնի հիւանդութեանցն լինին։

Իսկ եթէ խարտէշ մաղձն լինի զօրաւոր եւ յաղթող, զտետրատէօս ջերմանն զստածումն ՚ի բանի պահէ։ Ապա թէ արիւնն լինի աւելի եւ յաղթող,

զսինայխօս ջերմանն զստածումն 'ի քանի պահէ ։ Ապա թէ պաղղամն տեսանես կարող և յաղթող, զափիմեւունոս ջերմանն զստածումն 'ի քանի պահէ ։ Ապա թէ սև մաղձն՝ որ է սաւտայն՝ տեսանես յաղթող և զօրաւոր, զտետրատէօս ջերմանն ստածումն 'ի քանի պահէ, որպէս յիշեցաք զամէն մէկ 'ի յիւր գլուխն զնշանն և զստածումն ուրիշ ուրիշ և 'ի լման ։ Ապա թէ երկու նիւթ կամ երեք՝ որ աւերեալ բորբոքեցան՝ հաւասար լինին, նոյնպէս և դու զստածումն և զդեղերն և զկերակուրն հաւասար և 'ի միջավայր արա ։ Եւ այլ յարեցիր 'ի յուժ հիւանդին, 'ի ժամն, և 'ի տարիքն, և 'ի սովորութ̃ի, և տո՛ւր զդեղն և զկերակուրն հակառակ ըստ նիւթիցն խառնմանն, օգտակար է, թէ ա̃ծ կամի ։

## ԳԼՈՒԽ ԼԵ.

Վասն ստածման և բժշկութեան տուր և այրեցող ջերմանն ։ Եւ իւր պատճառն անապակ խարտեշ մաղձն լինի ։

ԶՈՐ հոռոմն փեբրիս և քեաւսոյես ասէ, և տաճիկն հումայէ մուհրիղայ ասէ. և իւր պատճառն անապակ և յիստակ խարտեշ մաղձն լինի ։ Զայս այրեցող ջերմանս 'ի ստածումն, ասէ Սինայի որդին, եթէ զերդ յիստակ տետրատէին ստածումն լինի ա̃մ գիմօք, որպէս յիշեցաք այլ յառաջ ։

Իսկ Ուէպիթ Կուռայն ասէ, եթէ այս այրեցող ջերմն այն է՝ որ 'ի յար լինի. բայց մէկ օրն խիստ լինի, և մէկայլ օրն սակաւ կակուղ ցուցանէ. և իւր սկիզբն 'ի խարտեշ մաղձին բորբոքելոյն լինի՝ որ 'ի ներքս 'ի յերակմն բորբոքի, որ մօտ 'ի սիրտն լինի և մօտ 'ի ստամոքաց բերանն, և այլն՝ զոր այլ 'ի յառաջ ասացաք ։ Եւ իւր նշանն այն է, որ մարմինն փշանայ, և լեզուն խոշորանայ, և ընդ յառաջքն դեղին լինի լեզուն, և յետոյ սևանայ ։

Եւ իւր ստածումն ընդ յառաջման մի շտապիս, եւ մի լուծման դեղ տար. այլ տուր մրգաջուր, եւ մանուշակի շարապ, կամ կակուղ հուկնայ դիր։ Եւ այլ այնոց, որ զխառնուածքն փոխեն, տուր դամոյնի ջուր եւ սրքնձպլին, զերդ դդմի հնտով եւ խիարի հնդով լինի զուգած. ապա յետ երկու պահուն գարեջուր տուր։ Եւ այն օրն՝ որ խիստ լինի՝ զգարեջուրն մէն տուր, կամ զդամոյնի ջուրն մէն, որ չծանդրէ 'ի վերայ հիւանդին. եւ այլ որ երբ գայ խիստ տաքութի̃, չգտանէ զստամոքսն փարփուտ։ Երբ ծարաւն խիստ լինի, տուր գարեջուր, եւ դդմի ջուր շարապով՝ զոր պատեհ տեսանես. եւ ա̃մ իրօք զիւր ստածումն դեղ 'ի յիստակ տեռուատեօս ջերմանն արա։

Ապա երբ եփելոյն նշանն այս ջերմանս երեւնայ, եւ դեռ սրութի̃ լինի, պատեհ է որ զքաֆուրի կուրսն տաս առաւօտեն սրքնձպլինով, զոր յիստակ լինի. եւ հետ երկու պահուն տուր զգարեջուրն հովցուցած եւ մուզ նռան ջրով. եւ չէ պատեհ որ դդմի ջուր տաս, եւ ոչ խիարի ջուր, եւ ոչ այլ խիստ հովային իրք, եւ ոչ հով ջուր, ցուր չես տեսել զեփելոյ նշանն. եւ կամ խիստ լուծումն հանդիպի հիւանդին, հանց որ կտրի սրութի̃ ջերմանն. զի թէ այլ 'ի յառաջ տաս զայդ խիստ հով դեղերդ, նա զխիւթն յիրար զսպէ, եւ արգիլէ յեփելոյ եւ արձակելոյ, եւ առնէ խցկումն եւ այտոց։ Իսկ թէ սրութի̃ն խիստ լինի, եւ տաքութի̃ն դեռ 'ի մարմինն կենայ, եւ բերանն գէձ լինի, տուր զտապաշիրին ղուրսն. եւ իւր նշանքն այս է։

## Ղուրս տապաշիրի։

Առ կարմիր վարդ, եւ Թառամնկալին հինգ հինգ դրամ. նշաստակ, եւ մարուխի տակ, եւ քիթրէ, եւ տապաշիր երկու երկու դրամ. զաֆրան մի դրամ. զամէնն աղա եւ մաղէ, եւ պզրկատունի լուղապով շաղւէ. կուրսեր արա, եւ 'ի շուքն չորացո, եւ 'ի բան տար. օգտակար է։

Ապա թէ 'ի բերանն եւ 'ի մարմինն սակաւ չորութի̃ լինի, տուր զփերփերան հնդին ջուրն սրքնձպլինով, եւ հետ այտոր տուր զլուղապնին ձուլապով։ Ապա

թէ չուտէ կերակուր, տուր զգարէջուրն երկու հետ . և այլ ոմանք կամ՝ ուտեն զձարպ տապաշիրի կուրսն . և իւր նշանն այս է ։

## Դեղ տապաշիրի ձարպ ։

Առ տապաշիր հինգ դրամ . տաճիկ կուէզ, և քիթրէ, և նշաստակ երեք երեք դրամ . փերփերանի հունդ, և կոտայի կտւած չորս չորս դրամ . մարուխի քամուքս եօթն դրամ . զայս զամէն աղա և մաղէ, և պզրկատունի լուղապով շաղէ, կուրսեր արա, և 'ի շուքն չորացո, և 'ի բան տար ։ Եւ կերակուր լուացած հացի փշրուկ տուր շարապով, և գարէջուր տուր, և դդմի ջուր, և փերփերանի, նռան ջուր . և տուր զայլ կերակուրքն՝ զոր յիստակ տուխտեօս ջերմանն յիշեցաք ։

Ապա թէ հիւանդն յայս 'ի ջերմն, և յայն սուր ջերմերն՝ 'ի գլուխն տաքութի լինի, ապա չէ պատեհ որ 'ի վերայ գլխոյն կաթն տաս կթել, և ոչ ինչ ցեղ ձիթով օծանել, և ոչ ջրով ծեփել տաս, զի այն ծանտրութին նշան է շատ գիճութե ։ Ապա պատեհ է որ բաբունիձ առնուս և պքլել մելիք . եփէ ջրով, և զգլուխն 'ի վերայ շոգւոյն կալ . և զոտն և զձեռսն նոյն ջրովն ծեփել ։

'Ի նոյն պատճառդ Մուհամատ Զաքարիայն ասէ, եթէ այս ջերմն ընծայի, երբ մաղձն 'ի ներքս 'ի յերակսն բորբոսի մօտ 'ի սիրտն և 'ի ստամոքացն 'ի բերանն, կամ 'ի ներքս 'ի լերդին 'ի յերակսն, ուր լերդին փոսն լինի 'ի ներքի դեհէն, և կամ 'ի թոքէն 'ի յերակսն . և երբ իւր զօրութիւնն յաղթէ մարմնոյն, զայս ջերմն 'ի յերևան բերէ, զոր անուանեն սուր և այրեցող ։ Եւ իւր նշանն այս է, որ մարմինն խիստ տաք լինի, և տաքութի խիստ սուր լինի, և լեզուն սև լինի, և հիւանդն մէջ ընդ մէջ ընդվայր խօսի, ծարաւ և նեղհոգութի լինի, և շունչն շատ և շուտ լինի ։

Իւր ստածումն այս է, որ զմնութին կակուղ պահես դամոյնի և թմրհնդի ջրով և սրքնձպինով . և հետ այնոր գարէջուր տուր . և երբ պահ մի անցանի,

որ 'ի սառամաքացն գնայ , Թթու և քաղցր նռան ջուր տուր , և դէպ ընդ երեկացքն դդմի ջուր տուր , տապաշիրով և ճուլապով հովցուցած , կամ փերփերանի ջուր տուր սրքնճպինով ։ Ապա տու սանստալ սպիտակ , և վարդի ջրով տրորէ , և յինքն հին կտաւ քթան թաց , և 'ի վերայ լերդին յար 'ի բան տար ։ Այլ երբ 'ի գոյն եփելոյ նշաննին յերևան գան , պատեհ է որ առաւօտուն զքաֆուրի կուրսն տաս . և երբ արեգակն ցաթէ գարէջուր տուր . և 'ի կէս օրն Թթու և քաղցր նռան ջուր , զերդ որ այլ յառաջդ յիշեցաք . օգտէ թէ ա՟ծ կամի ։

Հունմայն ասէ , և թէ ծարաւն խիստ լինի , և գիտենաս՝ որ փոր կարսիքն ա՟մ բարով լինի և ողջ , պատեհ է որ սառեյն ջուր տաս 'ի տաքութէն 'ի ժամն , բայց ոչ սկիզբն հիւանդութեանն , այլ 'ի յայն ժամն՝ որ գիտենաս որ հիւանդութին 'ի վերջք լինի եկել , որ այտոց և խցկումն չայլինէ 'ի փոր կարսիքն ։ Այլ այլ պատեհ է որ համապազ զփերփերանի հունդն սրքնճպինով տաս ։ Ապա թէ քնութիւնն կապ լինի , մանիշակի շարապ տուր , որ զքնութին կակղցնէ . ապա թէ քնութին լոյծ լինի , տու զտապաշիրին ղուրսն , զայն որ փոթոթն է , և սերկևիլի ըռուպով 'ի բանի պահէ . և զհիւանդն 'ի հով տեղի և 'ի հով տուն կալ ։ Այլ երբ ջերմն արձակի , պղոխի ջրով մուզաւարայ , կամ աղտորի ջրով և նշաձիթով 'ի բանի պահէ ։ Ապա 'ի բաղանիս մտէ . և կերակուր՝ հաւձագ տուր նռան ջրով ։ Ապա թէ վախես թէ ջերմն այլուայր դարձ այլինէ , տու եղրդական ջուր և սրքնճպին , և հաղ մին քանի տուր , զի օգտակար է կամօքն ա՟յ ։

# ԳԼՈՒԽ ԼԶ.

Վասն ստածման և բժշկութեան այն տաք և այրեցող ջերմանն, զոր հոռոմն երկու և երեք կրկնակ տեռտառէօս կոչէ, և տաճիկն ղըլըղմայ, զոր 'ի յար տեռտառէօս անուանէ։

ԱՅՍ ջերմն ընծայի երբ մաղձն մէն բորբոսի ցներքսէ երակացն հաւասար ընդ ամ մարմինն։ Եւ գիտացիր որ այս ջերմանս ստածումն զերդ այն տեռտառէօս ջերմանն լինի, որ մաղձն ցդրուցէ երակացն բորբոսի, և իւր նոպայն օր ընդ մէջ լինի։ Բայց պատահ է որ գքօ ջանքն և գյոյմն յեփելն այրնես և 'ի հովցնելն, և տաս սըքնձպլին՝ որ յիւր ջուրն եփած լինի հնդիպեի հունդ, և խիարի հունդ ջանջխած. յետ երկու պահու գարեջուր տուր. և զկերակուրն պարկեշտ տուր։ Եւ հիւանդութեան սկիզբն լուծման դեղ մի տաս, զատել մրգաջուր տուր և մանիշակի շարապ։ Եւ այլ ամ դիմօք գքօ ջանքն և գյոյմն ընդ այրեցող ջերմն և ընդ այն ջերմն՝ որ ընդ դրուց երակացն ընծայի, որ յիստակ տեռտառէօս կոչի՝ 'ի մէջ արա, որ 'ի միջավայր լինի ընդ երկուսն. օգտակար է աստուծով։

Եւ հաննայ ասէ 'ի նոյն պատճառդ, եթէ այս ջերմն առանց խառնէշ մաղձին չլինի։ Եւ իւր պատճառն այն է՝ որ մաղձն 'ի ներքս 'ի յերակսն ընդ ամ մարմնոյն բորբոսի, ապա այս ջերմն յերևան գայ, զոր տաճիկն ղըլըղմայ անուանէ, որ թարգմանի հանապազ և 'ի յար. և հոռոմն դէս դրիդէծ անուանէ, որ թարգմանի երկու երեքօրեայ. զի զօր ընդ մէջ ջերմն երեքօրեայ անուանեն։ Ոի այս ջերմն երկու վասն այնոր ասացին, որ մէկ օրն խիստ լինի նոպայն, և մէկ այլ օրն թեթև. և այն երեքօրեայն՝ որ չունի կրկին՝ 'ի դուրս 'ի յերակացն բորբոսի մաղձն, և իւր նոպայն օր ընդ մէջ գայ։ Ապա այս ջերմանս որ երեքօրեայ ասեն, մի օրն խիստ գայ իւր նոպայն և խիստ դողացնէ, զերդ սըպքով խոցատէ զանդամուննն, և

ծարաւն շատ լինի, և այն օրն խիստ դառնէ զհի-ւանդն. և մէկայլ օրն թեթև և թոյլ լինի նոյնպէս: Եւ այս ջերմն առաւել երիտասարդաց հանդիպի, և այնոց՝ որ տաք կերակուր շատ ուտեն, և այնոց որ գինի շատ խմեն, և այնոց՝ որ 'ի մերձաւորութի խարբ լինին. և վասն այդ պատճառանացդ մաղձն նոցա խառնուածոցն յաղթէ և բորբոսի:

Եւ իւր ստածումն այս է, որ սկիզբն հիւանդու-թեանն զհով և զգիճային իրուին 'ի բանի պահէ, և հետ այնոր զմնութին լուծանէ մրգաջրով և շիրխըշ-տով և թառանկպինով. գարեջուր և դդմի ջուր և խիարի ջուր, թթու և քաղցր նռան ջուր, խառնեալ ընդ շաքարով սրբնձային 'ի բանի պահէ. և ա՟մ իրք՝ որ զմարմինոյն խառնուածքն հովցնեն և զիճացնեն, օգտէ նորա, զերդ զհազարն և թախթն և խիարն և կութայն և դդումն, և ա՟մ ինչ որ նման են սոցա:

Ապա թէ գլուխքն հիւանդութեն՝ որ է նուբթն, 'ի ստամոքսն լինի, վերաբերութի տուր առնել, օգ-տէ: Ապա թէ գլուխքն հիւանդութեն 'ի յաղիքն լինի, կակուղ հուկնայով զմնութին լոյծ, զերդ որ 'ի յերկրորդ 'ի գիրքն յիշեցաք: Ապա թէ հիւան-դութե գլուխն 'ի ներքս 'ի յերակսն լինի, տուր զդե-ղերն՝ որ զգօղն յորդորեն, զերդ զեփած կարօսն, և հալիլէ և օշինդր, և այլ ա՟մ ինչ՝ որ նման են սոցա: Եւ երբ ջերմն արձակի, և կերակուրն 'ի ստամոքացն հալի, 'ի բաղանիս մտէ, և յեղկ 'ի յաւազան մտէ՝ օգտակար է թէ ա՟ծ կամի:

Մահամատի Զաքարիայն ասէ, եթէ ստածումն այս կրկնակ ջերմանս՝ որ երկու տետռատոս կոչեն, այս է. առաւօտուն դամոյնի ջուր տուր, և երբ ա-րեգակն ծագէ գարեջուր տուր, և կէս օրն խիարի ջուր կամ դդմի ջուր, և 'ի պառկելոյ ժամն պզըկա-տունի լուղապ տուր: Ապա թէ բնութիւնն կակուղ լինի, 'ի դամոյնի ջրին տեղին՝ ծեծած նռան ջուր տուր, և զմարմինն հովացնէ այն իրօքն, որ զմարմինոյն խառնուածքն հով և գէճ առնեն: Եւ տգէտ մարդ-կաց խօսից մի լսեր. զի այս ջերմանս քան զհով ջուրն այլ աղէկ չլինի իրք. նոյնպէս և զհով մրգանքն 'ի բանի պահէ, բայց մի շատ: Ապա թէ հիւանդութին

խիստ լինի, և հիւանդին զօրութիւնն ուժով լինի, յայն օրն՝ որ չունի զմեծ նոպայն, երակ առ. օգտակար է կամօքն այ:

## ԳԼՈՒԽ ԼԵ.

Պատմութիւն նախագիտութեան վասն ջերմանն, զոր հոռոմն էմիտրիտէօս ասէ, և տաճիկն շաթրալ ըղբ, որ թարգմանի կէս երկօրեայ:

Այս ջերմս երկու նիւթէ ընծայի, և 'ի յերկու տեղաց լինի. մինն մաղձն լինի՝ որ բորբոքի 'ի դուրս 'ի յերակացն՝ որ առնէ զտետռուատէօս ջերմն. և միւսն պաղդամն լինի՝ որ բորբոքի 'ի ներքս 'ի յերակսն, որ այրնէ 'ի յար և անընդհատ զամփիմերինոս ջերմն. և երբ ուրդի՝ որ այս երկու ջերմս 'ի յիրար խառնին, և մէկ ջերմն դառնան, և անուանի իմիտետռուատէօս: Այլ երբ այս համց համդիպի՝ զերդ որ ասացաք, նա այն ջերմն՝ որ 'ի դուրս 'ի յերակացն լինի, նոպէ ունի, զի մաղձն է բորբոքած. և միւսայլ ցերդն ցներքսէ յերակսն լինի, զի պաղդամն է բորբոքած, և իւր ջերմն 'ի յար լինի, նա վասն այդ պատճառանաց օր մի խիստ լինի ջերմն, և օր մի համդարտ: Զի մէկ օրն երկու ջերմն լինի, մաղձին և պաղդամին, և միւսայլ օրն պաղդամին մէն լինի, և այն օրն կակուղ լինի ջերմն, և անկահ քան զմիւսայլ օրն:

Այժմ պատեհ է քննել և իմանալ՝ թէ էր անուանեցին զայս ջերմս իմիտրիտէօս 'ի մաղձին գործն, և չանուանեցին 'ի կէս ամփիմերինոսին, որ է պաղդամին գործն: Եւ մեք ցուցանեմք՝ որ այս ջերմս յօդական է 'ի տաքութէ և 'ի չորութէ, որ է մաղձն, և 'ի հովութէ և 'ի գիճութենէ, որ է պաղդամն: Տաքութին ներգործեալ է զօրաւոր, նոյնպէս և չորութին ներգործող է զօրաւոր. իսկ հովութին ներգործող է տկար, նոյնպէս և գիճութիւնն ներգործող է տկար.

ապա պատեհ համարեցան երկու զօրաւորացն անուամբ կոչել, քան երկու տկարացն ։

Եւ այլ միտք կայ այս բանիս․ ափիմերինոսն՝ որ է պաղղամին ջերմն, 'ի յար և 'ի կից լինի, զի ցներքս է իւր բորբոքումն, և վասն այսոր որ 'ի յար է և յերևան է հանապազ, և չէ 'ի պակասել, զի յար է և կից ։ Իսկ տրիտէօսն՝ որ ընդ մէջ ունի զնոպայն, զի 'ի դուրս է յերակացն բորբոքումն, որ մին երևնայ և որ մին չերևնայ ։ Ապա անուանեցին զայս ջերմն 'ի յայն տեղին՝ որ չէ 'ի յերևել, և պակաս է․ զի այս անուանս ըստ զայն զօրն, և զայն տեղին, որ չէ 'ի յերևենալ․ զի երբ իրքն 'ի լման լինի և 'ի յերևան, չէր կարէք նորա անուամբն անուանել ։

Այլ պատեհ է գիտենալ, որ այս ջերմն երեք դէմս ունի․ մէկն՝ որ յաղթէ մաղձն պաղղամին, և իւր նշաններն 'ի յերևան գան, զերդ փշանալն և սըռսռալն, և յանկարծակի վերաբերութիւն մաղձի, և տաքութեան շատութի նորա յաւելնայ և բարձրանայ առանց վնասի ։ Եւ երկրորդ դէմս այն է, որ յաղթէ պաղղամն մաղձին․ և իւր նշանն այս է, որ ցըրտանալն շատ լինի․ և ցրտանալոյն պատճառն պաղղամին հովութիւն լինի, զի չէ բորբոսել․ զի մնացեալ լինի մասն 'ի պաղղամէն՝ որ չէ բորբոսել․ երբ վերանայ իւր տաքութիւն, ահօկէ հիւանդին․ և այլ նշան այն է՝ որ ծարաւ և քիրտն չլինի ։ Եւ երրորդ դէմն այն է, որ երկու նիւթն հաւասար լինին, և իւրեանց նշաններն չյաղթէ մէկն մէկայլին, այլ ամէն մէկ զիւրն ցուցանէ, և այս է իրաւի իմիտրիտէօսն ։

Եւ այլ գիտացիր՝ որ այս նշանօքս, և այս օրինակովս, և այս դիմօքս լինին և այլ ցեղ ջերմերն, երբ խառնին ընդ իրար․ ապա տես՝ թէ ո՛ր նիւթն յաղթէ մէկն մէկայլին, և երևեցուցանէ զիւր նշաններն, և զիւր պատահմունքն, և զիւր խասլիաթն, որ է առանձինն իւր յատկութի, և 'ի յայն նիւթին 'ի յանունն՝ ուր և ուրդի՝ յաղթող անուանէ, որպէս այլ 'ի յառաջն յիշեցաք 'ի խառն նիւթերոյն, օգնութեամբն այ ։

# ԳԼՈՒԽ ԼԲ.

*Վասն սատածման և բժշկութեան իմիտռիտէօս ջերմանն ։*

ՊԱՏԵՀ է բժշկին՝ որ զայս ջերմանս զսատածումն ըստ յաղթող նիւթոյն այրնէ, թէ մաղձն յաղթէ, եթէ պաղղամն ։ Ապա թէ հաւասար լինին երկու նիւթն, որ չէ յաղթել մէկն միւսին, պատեհ է որ նոյնպէս և զսատածումն խառնէ հաւասար ընդ երկոցունց դիմացն զդեղն, և զկերակուրն, և զըմպելին, և զայլ զա՟մ ցեղ զսատածումն հաւասար առնել ։

Ապա թէ մաղձն յաղթէ, և կարիք լինի՝ որ զբնութիւնն կակղցնեն, կակղացո պատատկի ջրով, և թառանկպինով, կամ դամոյնաչրի ջրով, և գարեջրով տուր շաքարի սրքնձպինով. և 'ի յայն կուրսերոյն, և 'ի յայն դեղերոյն՝ որ խառն տռիտօսին գրեցաք, զոր պատեհ տեսանես, 'ի բան տար. նոյնպէս և զկերակուրն և ըմպելին ։ Ապա թէ պաղղամն յաղթէ մաղձին, և կարիք լինի՝ որ զբնութիւնն կակղցնես, տուր պատատկի ջուր սրքնձպինով, մազտաքէով, և վարդմարապայով. և յայն 'ի կուրսերոյն և 'ի դեղերոյն՝ որ խառն 'ի պաղղամին ջերմն գրեցաք, 'ի բան տար ։ Կամ տուր զպաղղամին ջերմանն զդեղերն խառն ընդ մաղձին ջերման դեղերոյն, ըստ կարեացն և ըստ որպիսութեան՝ զոր տեսանես. օգտակար է եթէ ա՟ծ կամի ։

Ապա թէ երկու նիւթն հաւասար լինին՝ մաղձն և պաղղամն, և կարիք լինի՝ որ զբնութիւնն կակղացուցանես, տուր զպատատկի ջուրն սրքնձպինով և վարդմարապով. ապա ա՛ռ զյիստակ տռիտէօսին դեղերն, նոյնպէս և զյիստակ ամփիմեռինոսին դեղերն խառնէ հաւասար, և 'ի բան տար ։ Նոյնպէս և ըստ դեղերոյն կարգին[1] զկերակուրն տուր և ըմպելիքն, և զայլ զա՟մ ցեղ զսատածումն. օգնէ եթէ ա՟ծ կամի ։ Այդ նշանովդ և այդ օրինակաւդ պիտի՝ որ լինի ա՟մ ցեղ խառն ջերմանն սատածումն, որ զդէմն 'ի յաղթող և

1 Յօրինակին դեղերոյն կարգին ։

'ի յաւելի նիւթն այրնէ, և տայ զդեղն և զկերակուրն ըստ նիւթին որպիսութեն. օգտակար է թէ ա̃ծ կամի:

Յունայն ասէ, եթէ պատճառն այս ջերմանս այն լինի, որ մաղձն և պաղղամն 'ի զուգ քորքոսին, որպէս այլ 'ի յառաջդ ասացաւ, և յաղթելով բնութե, զայս ջերմն 'ի յերևան բերեն: Եւ իւր նշանն այս է, որ թէ մաղձն յաղթող լինի, մաղձի վերաբերութի այրնէ, և իւր ջերմն սուր լինի, և իւր գոյն դեղին. ապա թէ պաղղամն յաղթող և զօրաւոր լինի, իւր նշաններն հակառակ լինին այդ նշանացն` զոր յիշեցաք:

Իւր ստածումն այն է, որ թէ մաղձն յաղթող և զօրաւոր լինի, տուր սրքնձպին տաք ջրով խառնեալ, և յետ այնոր գարեջուր և ճուլապ հովցուցած. և յետ այնոր այլուվայր գարեջուր և սրքնձպին խառնեալ 'ի հով ջուր` 'ի քանի պահէ, որ մաղձին զօրութին մանդրէ: Ապա թէ բնութին կապ լինի, տուր դամոյնի ջուր և թմրհնտայ, որ զփորութին կակղացուցանէ. դէպ 'ի յիրիկունն տուր զփերփերանի հընտին կաթն սրքնձպինով: Եւ երբ հիւանդութին 'ի վճար գայ և արձակի, տուր կերակուր մուզավարայ ազոխի ջրով, և կամ նռան ջրով, զոր նշաձիթով զուգած լինի` 'ի քանի պահէ: Ապա թէ հիւանդն տկար լինի, տուր հաւու ձագ` եփած զիրպաճ, կամ նռան ջրով. ապա թէ հիւանդին զօրութին ուժով լինի, պատեհ է որ զգարեջուրն մէկ հերիք ածէ. օգտակար է թէ ա̃ծ կամի:

Սահակն ասէ, եթէ պաղղամն յաղթող և զօրաւոր լինի քան զմաղձն, տուր յանօթուց վարդմարապայ. և հետ այնոր ա́ռ մազտաքէ և ծխանելիք, և անուշ ջրով եփէ, և 'ի քանի պահէ. նոյնպէս և սըրքընձպինն` որ հնդանոք լինի զուգած, օգտակար է: Ապա թէ հիւանդութին ուժով լինի, զսապատն հապն տուր, որ զփորութին լուծանէ, և զհիւանդութեանն զգլուխքն 'ի մարմնոյն իջուցանէ: Ապա թէ հիւանդութի յերկար քաշէ, տուր զղափթին զկուրսն սըրքընձպինով, զի մեծ օգտակար է. և երբ հիւանդութիւնն 'ի վճար գայ և արձակի, կերակուր զիրպաճ տուր, կամ նռան մուզավարայ նշի ձիթով: Ապա թէ

մաղձն և պաղղամն հաւասար լինին, նոյնպէս և զատածումն հաւասար արա. զդեղ և զկերակուր և ըմպելի խառնէ զերկոցունց դիմացն, հաւասար 'ի բանի պահէ, օգտէ։ Եւ յորժամ հիւանդութիւնն 'ի վճար գայ և արձակի, տուր կերակուր զխրպաճ, և հետ այնոր հաւձադ զխրպաճ. ապա յետ այնոր 'ի բաղանիս մտէ, օգտէ։

## ԳԼՈՒԽ ԼԹ.

Պատմութիւն և նախագիտութիւն վասն սաւտայլին ջերմերոյն, որ է սև մաղձն։

Յաղագս զտետռատէոսն յիշենք. և ինքն երկու ցեղ լինի։ Եւ գիտացիր՝ որ սաւտայն կամ բորբոսած լինի, և կամ անբորբոս։ Ապա թէ բորբոսած լինի, անհնար ընդ ա̃մ մարմինն լինի, և կամ 'ի բաժինն մի մարմնոյն։ Ապա թէ ընդ ա̃մ մարմինն լինի, անհնար է՝ կամ ցներքսէ երակացն լինի, և կամ 'ի դուրս յերակացն։ Ապա թէ ցներքսէ երակացն բորբոսի, նա առնէ զտետռատէոս ջերմն, որ երկու օր հիտրաց ունի զնոպայն, և օր մի չունի. վասն անոր անուանեցին զայս ջերմս կրկնակ, և երկու տետռատէօս, որ 'ի ներքս 'ի յերակսն լինի բորբոսն։ Ապա թէ 'ի դուրս յերակացն բորբոսի, նա առնէ զտետռատէօս ջերմն, որ երկու օր ընդ մէջ նոպայ ունի. զայս ջերմս հոռոմն փէփռատէօս անուանէ, և տաճիկն ըէղ, որ թարգմանի չորեքօրեայ։ Ապա թէ 'ի բաժինն մի 'ի մարմնոյն բորբոսի, որ է 'ի յանդամ մին, նա այրնէ զայն ցաւն՝ որ անուանի սարաթան. հոռոմն կարկինոս ասէ, որ է խեցգետին։

Ապա թէ սաւտայն անբորբոս լինի, նա կամ ընդ ա̃մ մարմինն արգիլած լինի, և կամ 'ի յանդամ մին 'ի մարմնոյն։ Իսկ թէ յա̃մ մարմինն լինի արգիլած՝

նա այրնէ սև արական¹, որ է դեղնամաղն ։ Ապա թէ 'ի յանդամ մին լինի արգիլած, նա այրնէ զայն պինտ այտոցն, որ անուանի սիկառօս, որ է պնդութի ։

Ալ գիտացիր որ այս երկու օր ընդ մէջ ջերմանս նշաններն առնուն 'ի յայն 'ի յերեք պատճառանացն, զոր այլ 'ի յառաջ տասցաք, որ մէկն բնութ̃ լինի, և երկրորդն առանց բնութե, և երրորդն 'ի դուրս 'ի բնութէ ։ Իսկ այն նշանները՝ որ բնութ̃ լինի՝ այս են, որ հիւանդին խառնուածքն հով և չորային լինի, և սաւտայն իւր խառնուածոցն յաղթեալ լինի, և տարօքն միջավայր լինի ընդ մանկութի և ալևորութի, և ժամն աշնան աւուրքն լինի, և օդն հով և չորային լինի, նոյնպէս և երկիրն ։ Իսկ այն նշանները և պատճառն՝ որ առանց բնութե լինին, այս են՝ որ հիւանդին կերակուրն յառաջն սաւտայիկ լինի՝ զերդ զոսպն, և զկաղամբն, և զպախրէ միսն, և զքօշին միսն, և պատրնճանն, և այլ զոր ինչ նման են այսոց ։ Իսկ այն նշանները և պատճառն՝ որ 'ի դուրս են 'ի բնութենէն, այս են ։ Բայց կան նշանի՝ որ 'ի յառաջ են քան զջերմն, և այլ կան՝ որ հետ ջերմանն լինին ․ և այն նշանն՝ որ յառաջ էր քան զհիւանդութին՝ այն է, որ այլ և այլ ցեղ ջերմն լինի կալեր ․ և երբ այն նիւթները այրեցան, նա յայս 'ի ջերմն փոխեցաւ, կամ փայծաղնացաւ, և փայծաղն պինդ լինի ։ Իսկ այն նշանները՝ որ հետ ջերմանն հանդիպեցան՝ այն է, որ 'ի նոպային սկիզբն դողալն, և ծանդրանալն, և խիստ ցրտանալն ընդ ամ մարմինն լինի ․ և իւր երակն յոյլ և յուշ լինի, բայց շատ փոփոխական լինի ․ և 'ի նոպային յաւելնալն տաքութի լինի, բայց ոչ սուր և ոչ այրեցող, զերդ որ օր ընդ մէջ ջերմանն ․ և երակն սակաւ մի սրանայ և շոյտ լինի քան որ 'ի նոպային ըսկիզբն էր, և քան զոր ընդ մէջ ջերմանն այլ փոքր և այլ յուշ լինի ․ և ծարաւն սակաւ լինի ․ և գոյն հում և հոտած լինի ։ Եւ 'ի նոպային իջանելն՝ իւր ցրտանալն պակաս լինի քան զոր ընդ մէջ ջերմանն, և 'ի թողուլն նոպային՝ երակն յուշ և յոյլ լինի և փոփոխական ․ և իւր գոյնն գոյնն այլ և այլ ցեղ լինի

1 Յօրինակին իրական ․ ուղղեցաք ըստ գրելոյն յառաջագոյն ։

և հում։ Ապա թէ զայս նշաննիս տեսանես, և կամ զշատն իւրեանցմէ, գիտասցիր որ այս երկու օր ընդ մէջ ջերմն խալըս է, որ է յիստակ բնական սաւտայն։

Երբ այս ջերմն յիստակ լինի, նա իւր նոպայն քսան և չորս պահ լինի. ապա թէ ընդ խարտեշ մաղձն խառնի՝ նա կարճ այնէ զնոպայն քան զքսան և չորս պահն. ապա թէ ընդ պալղամն խառնի, նա այլ աւելի այրնէ զնոպայն քան զքսան և չորս պահն. և ամռան աւուրքն այլ կարճ լինի իւր նոպայն։ Եւ իւր գոզլին գոյնն 'ի հիւանդութեն յառաջքն սպիտակ լինի և հում. և այսոր պատճառն սաւտային հիւանդութիւնն լինի. և 'ի հիւանդութենն 'ի վերջքն՝ իւր գոզն սև լինի, զի եփեցաւ սև մաղձն, որ է սաւտայն, և իջանէ հետ գոզլին։ Եւ հանապազ հետ այդ ջերմանդ փայծաղնացաւութի լինի. նա վասն այդ պատճառանացդ հիւանդին գոյնն վատթարի և թխանայ, և իւր կաշին սակաւ մին խոշորի և տապի, մանաւանդ երբ յերկար քաշէ։

Այլ այս ջերմն ընծայի՝ երբ երեք նիւթերն այրին և 'ի սաւտայ փոխին։ Մէկն լինի՝ երբ արիւնն խանձի. և երկրորդն լինի՝ երբ պալղամն խորովի. և երրորդն լինի՝ երբ խարտեշ մաղձն այրի։ Այլ բնական սաւտայն չընծայէ ջերմն, զերդ որ ասացին այլ ոմանք յիմաստասիրացն. զի իւր օգտակարութեան նշանքն շատ և մեծ է 'ի մարմինն։ Այլ իւրեանց նշաններն և վկայքն այդ երեք ցեղ պատճառանացդ ուրիշ ուրիշ այս են, որ երբ արիւնն խանձել լինի և այրել, նա յառաջ հիւանդն արեան ջերմ է կալել, զերդ սինէհիմն և այլն, կամ հիւանդին մարմինն շատ արիւն ընծայէ, կամ ժամն գարնան աւուրքն լինի. և իւր գոզլին գոյնն դէպ 'ի յարեան գոյնն հակէ. և երակմն 'ի լի լինի. և երբ զայդ նշաննիտ տեսանես, գիտասցիր որ արիւնն խանձել լինի և այրել։

Իսկ թէ ընդ յառաջքն օր ընդ մէջ ջերմ է կալել, որ է տուխտէոս, և հիւանդին մարմինն մաղձային լինի, այրեցն և ծարաւն շատ լինի, և գոզլին գոյնն կարմիր և պարկեշտ լինի, և երակմն շուտ լինի, և հիւանդն չէ մահուան, և սրտնեղ լինի, գիտասցիր որ այն ջերմն 'ի խարտեշ մաղձին այրելոյն լինի։ Ապա

թէ ընդ յառաջին պաղղամիկ ջերմ է կալել, որ է ամփիմեռինոսն, և հիւանդն պաղղամիկ լինի. և իւր քունն շատ լինի, և տարօքն աւելոր լինի, և ժամն ձմեռնաաւուրք լինի, և երկիրն հովային լինի, և հի-ւանդին ծարաւն սակաւ լինի, և գոյն սպիտակ և պղտոր լինի, և երակն յուշ և լայն լինի, ապա գի-տացիր որ այս ջերմն 'ի պաղղամէն խորովելոյն լինի և 'ի յայրելոյն : Ապա երբ գիտենաս զպատճառն, և զխլամն՝ որ է նիւթն, յորոյ ընծայեցաւ ջերմն, դիւ-րաւ բժշկես :

## ԳԼՈՒԽ Խ.

### Վասն տառածման և բժշկութեան տետարտէօս ջերմանն :

ՏԱԺԻԿՆ ըէղ ասէ, որ Թարգմանի չորեքօրեայ, որ է երկու օր ընդ մէջ ջերմն :

Եւ գիտացիր որ այս ջերմն հինգ դէմս ունի : Մէկն ընծայի՝ երբ այրի արեանն, և 'ի սավտայ փո-խի, և բորբոսի. և երկրորդն՝ երբ մաղձն այրի. և եր-րորդն՝ երբ պաղղամն այրի. չորրորդն՝ երբ բնական սավտայն բորբոսի. հինգերորդն՝ երբ մէկ մին 'ի յայդ չորիցդ 'ի ներքս 'ի յերակմն բորբոսի, կրկնէ և եր-կու այրնէ զջերմն : Եւ իւր նշանն այս է, որ երկու օր հիտրաց նուպայ առնու, և օր մի չառնու :

Ապա թէ այս ջերմն 'ի յարեանն 'ի խառնելոյն լի-նի, և զիւր նշանսն յերեւան տեսանես, տուր զա-րեջուր սրքնձպինով. և երբ եփի հիւանդութիւն, 'ի ձախոյ ձեռին երակ առ 'ի բարսիլիկէն. և ապա յետ երակ առնելոյն՝ տուր զայս մատղուխս :

### Սատղուխ հող վասն այրած արեան :

Ու չէկ չամիչ 'ի հատձէն հանած հնգետասան դրամ. յունապ քանի հատ. կարօսի, և բուզիանի

տակի կեղև երեք երեք դրամ. դեղին հալիլայ, և քապուլի հալիլայ 'ի կորզէն հանած և ձարձատ առած հինգ հինգ դրամ. զամենն եփէ, և քամէ 'ի վերայ հնգետասան դրամ խիարշամպէի միջոց. ապա աճռէ և քամէ, և արկ 'ի ներքս շաքար երկոտասան դրամ, և տուր որ խմէ: Եւ այլ զայդ նուսխատ յաւելցո ըստ հիւանդին ուժոյն: Կերակուր՝ մաշ տուր թախթով, և վլիտօն. և տուր 'ի մրգանց քաղցր նուռն, և բարունակի մեծապտուղ խաղող, և այլ զոր ինչ նման են այտոց: Ապա թէ յերկար քաշէ այս ջերմն, 'ի նոպային օրն ընդ ցորեկոյ կալ այս չկերակրիլ. զի արիւնն երբ հաստանայ՝ կարէք ունի որ իւր տէրն ընդ ցորեկոյ կենայ այս անօթի, որ պարկեշտանայ արիւնն.

Ապա թէ այս ջերմն 'ի պալղամին խորովելոյն լինի և 'ի այրելոյն, և զիւր նշաններն յերևան տեսանես, տուր վարդմարապայ՝ կարօսի և ըռազիանի ջրով, յամէն մէկէ երկու նուկի: Ապա թէ փորն կապ լինի, տուր պատատկի ջուր կէս լիտր. և ասփուրի հունդ աղացած հինգ դրամ. տապարզի շաքար տասն դրամ: Թէ այսով չկակղնայ փորն, դու կակուղ հուկնայ դիր այս նշանօքս.

Հուքնայ կակուղ՝ վասն պալղամի.

Առ տատաշ, և բաբունիճ, և հուլբայ, և թեփ 'ի կտաւի ծրարած, և չոր թուզ, և ճակընդղի ջուր, և հացի փորակ[1], և շաքար, և շիրիկ ձէթ. զայս զամենն եփէ, և հուկնայ դիր զերդ իւր ռասմն է: Եւ կերակուր լաբլաբ, որ է պատատուկ, չամչով եփած, և քաղցր նշի ձիթով եփած. կամ սիսեռան ջուր տուր լուացած ձիթով, կամ ճակընդղի բազուկ տուր:

Եւ այլ պատեհ է որ այս ջերմանս տէրն վերաբերութիւն այնէ 'ի հիւանդութեան սկիզբն սամթի ջրով և մեղրով և աղով. և 'ի նոպային օրն ընդ ցորեկոյ կալ բնիկ. ապա երբ անցանի եւթն նոպայն, զայս մտպուխս տուր:

1 Ցորենակին բօշան:

Ստրղուխ, որ օգտէ պաղլղամի:

Առ կարոսի հունդ, և անիսոն, և կրտմանայ և տաուսի դաղձն, և նանխաւայ հինգ հինգ դրամ. վայրի ծաթրին եօթն դրամ. շէկ շամիչ 'ի հատձէն համած հնդետասան դրամ. զամէնս եփէ չորս լիտր ջրով, մինչև մնայ մի լիտր: Ապա պարզէ, և տուր յա֊մէն օր չորս նուկի եղկ. բայց 'ի նոպային օրն մի տար. և վերաբերութի այրնէն օգտէ: Եւ երբ տաս, տուր այս դիմօքս. տուր աղի ձուկն ուտելոյ, և 'ի վերայ ջուր մի տար խմելոյ, և վերաբերութի տուր այրնել, օգտէ. և ապա հետ այտոր ընդ ցորեկոյ տուր կե֊նալ, զի խիստ օգտէ այս ջերմանս:

Սածուն, որ օգտէ պաղլղամի:

Այլ դեղ որ օգտէ այդ ջերմանտ՝ երբ եփած լի֊նի նիւթն. առ նանխուայ տասն դրամ. անիսոն, և քարաւէ եօթն եօթն դրամ. դարապղպեղ երեք դրամ. զանձապիլ չորս դրամ. անզուժատ հինգ դրամ. սումպուլ տասն դրամ. զայս զամէնս աղա և մաղէ. և յիստկած մեղրով շաղէ. և տուր երկու դրամ և կէս ռաղխանի և կարոսի ջրով. բայց 'ի նո֊պայի օրն մի տար:

Հապ, որ օգտէ սէվտայի և պաղլղամի:

Այլ հապ որ օգտէ այս ջերմանս. առ աֆթիմոն, և թրպութ տասն տասն դրամ. քարաւէ, և անիսոն եւթն եւթն դրամ. վարդ ութ դրամ. կարոսի, և ռաղխանի հունդ երեք երեք դրամ. պատպայիճ եօթն դրամ. սպիտակ աղարիկոն ութ դրամ. հնտիկ աղ հինգ դրամ. եարիձփեկրայ հնդետասան դրամ. զա֊մէնս աղա և մաղէ, և անմնխի ջրով շաղէ, հապեր արա մէկ պղպեղի հատի չափ, և 'ի շուքն չորացո, և տուր դրամ ու կէս յերեկոյէն եղկ ջրով. յամէն հինգ օր տուր զայդ հապտ. օգտէ:

### Պուտաս, որ օգտէ պաղղամի և սաւձրայն :

Նաև այլ օգտակար է այս ջերմանս այս կուրսս: Ա՛ռ սատտապի տերև, և համամայ չորս չորս դրամ. սալ-խէ, և անայրեց ծծում երկու երկու դրամ և կէս. աֆթիմոն երեք դրամ. կղլու ձու մի դրամ. մարու-խի քամուքս եօթն դրամ. սպիտակ խաշխաշ վեց դրամ. չոր զուկի, և անիսոն երեք երեք դրամ. զա-մէնս աղա և մաղէ, ջրով շաղէ և կուրս արա կէս կէս միթխալ, և 'ի շուքն չորացո, և տուր կուրս մի աղցած և մաղած՝ եղկ ջրով, յառաջ քան զնոպայն երեք պահով. օգտակար է:

Ապա թէ այս ջերմն 'ի խարտեշ մաղձին 'ի յայրե-լոյն լինի, և զիւր նշանսն տեսանես յերևան, տուր գարեջուր և սրքնձպին, կամ թմրհնտոյ ջուր և բռա-զիանի ջուր սրքնձպինով: Նաև երբ նոպայն թողու, վերաբերութի տուր այրնել սրքնձպինով և եղկ ջրով. և կակղացո զբնութին պատատկի ջրով, և խիարշամ-պէի միջով, և վարդմարապայով: Նաև տուր կերա-կուր՝ մաշ և վլիտօն և դդում, և այլ զոր ինչ նման են այսոց. և տե՛ս որ ընդ ցորեկոյ չպահես :

### Մատղուխ սաւճրայն :

Ապա թէ կարիք լինի՝ որ զբնութիւնն լուծանես, տուր մտպուխ այս նշանօքս: Ա՛ռ սև հալիլայ և դե-ղին հալիլայ՝ 'ի կորզէն հանած, և անծախոտ, որ է սատթարաճ, և թմրհնտի, և խիարշամպայ, և դա-մոյնաչէր, և յունապ, և թառանկպին. զամէնս մտ-պուխ մին եփէ, և տուր ըստ հիւանդին ուժոյն: Նաև երբ հիւանդութիւնն եփի, երակ առ, զի մաղձն 'ի յայրել լինի. և տուր կերակուր՝ զոր յառաջդ ասա-ցաք. և տուր միրգ՝ քաղցր նուռն, և քարունակի մե-ծապատուղ խաղող, և յերկայն հասած խարբզակ, որ է սեխ[1], որ չլինի քաղցր. և ըմպելի տուր սրքնձպին և ճուլապ :

[1] Յօրինակին սէս :

## Օ՛ՆԵՃԵՆԻ գլխացաւու :

Ապա թէ գլխացաւութիւն դիպի, ծեփելիք աւրա բաբունաձով և մանիշակով և գարէկորկոտով : Ապա թէ տաքութիւն դիպի, յաւելցո 'ի յայդ ծեփելեօք խաշխաշի կեղև, և հազրի հունդ. և հազար տուր ուտելոյ՝ հում և խաշած, և 'ի քիթն սղուտ արա մանիշակի ձիթով : Այլ հաւու ձագ մի տաս ուտելոյ, և ոչ տուռայճ յայդ ցեղ ջերմն՝ ցուր եօթն նապայն անցանի, զատել՝ տեսանես որ զօրութի վատաժել լինի. զի պատրաստութի զնիւթն պարկեշտ այրնէ, և 'ի դուրս վաթէ : Ապա հետ երեք շաբաթու տուր հաւու ձագ, և տուռայճ, և տահուճ. ապա հետ քառասուն աւուր տուր տարեկան ոչխարի միս :

Ու այլ այս ջերմանս սկիզբն կուրս մի տաս, և ոչ 'ի յայլ ջերմերոյն, զի կուրծն հաստցնէ զխլտն, և արգիլէ զարձակելն : Ու այլ 'ի գարնան աւուրքն պատեհ է որ պատրաստ կենաս 'ի սուր դեղերոյն, զի կրկնէ զջերմն և երկու այրնէ. և իւր նշանն այս է՝ որ երկու օր հիտրաց նոպայ լինի, և օր մի չլինի : Ու այլ զոր 'ի բան տանիս 'ի յայդ դեղերոյտ՝ 'ի հիւանդութենն սկիզբն մի տաս, մինչև կատարի հիւանդութիւնն, և 'ի լման եփած լինի :

Այլ գիտացիր որ կան դեղեր՝ որ խասիաթով օգտեն այս ջերմանս, զոր այլ առաջինքն փորձեցին. և չէ այդ արմացք. զի մեր վարդապետն Գաղիանոս յիշել է, թէ փեոնայն՝ երբ 'ի բազուկն կապեն, կամ 'ի վիզն յուխտաւորին, օգտէ. և այլ մենք կանք և տեսանեմք զմկնատիզ քարն՝ որ է խանդումանդ, որ խասիաթով զերկաթն կուքաշէ. նոյնպէս և կան 'ի դեղերն՝ որ կարող են խասիաթով հակառակ գալ խառնուածոցն հիւանդութե : Ու այլ կանք ու տեսանեմք 'ի վայրի կենդանեացն՝ որ առնուն խոտեր և դնեն իւրեանց տեղեստանն, նա թշնամին որ գայ այն երէին, նա այն խոտն հակառակ գայ խասիաթով, և չտայ մօտ այրնել՝ ուր ինքն լինի : Ու այլ փորձեցին որ առաջինքն, և զայս շատ են փորձել, զի խոզին ոսկրն՝ երբ կտաւով 'ի վիզն կապեն՝ որ այս ջերմն

ունի , օգտէ . այլ խասիաթն առանձինն և իւրական գործ գործէ ։ Նոյն երբ զհիւանդին զհանդերձին դղացկանի հագցնես , և այլուվայր հանես , և հիւանդին հագցնես՝ առանց լուանալոյ , օգտէ 'ի յայս ջերմանս ։ Նոյն զսարդն՝ որ զճանճն որսայ՝ կտաւով 'ի ձախոյ բազուկն կապես , օգտէ ։ Նոյն թէ զսարդայլն ոստայնն ձիթով խառնես , և զհիւանդին զամէն մարմինն օծանես , օգտէ այն ջերմանն՝ որ 'ի պալղամին խորովելոյն ընծայի . օգտէ ։ Եւ զայդ և շի մասվարայ որդին ասաց , բայց սրայելացին ասաց՝ թէ զխոզին ոսկրն փորձեցի , և գտայ որ օգտեց 'ի հիւանդութեն 'ի վերջքն ։

Սարճուայն ասէ 'ի նոյն պատճառդ , եթէ ընծայի այս ջերմն՝ յորժամ երեք նիւթն այրին , և 'ի սաւտայ դառնան . և երբ բորբոսին , ապա ընծայեն զայս ջերմն՝ որ տետրատէօս ասեն ։ Մէկն՝ արիւնն յորժամ այրի , իւր պարկեշտն 'ի խարտեշ մաղձն դառնայ , և թանձրն 'ի սաւտայն . և երկրորդն խարտեշ մաղձն է որ այրի . և երրորդն՝ պաղղամն խորովի ։ Եւ իւրեանց նշանն այս է , որ երեսաց գոյնն պղտոր լինի , և մարմնոյն կաշին չոր և խոշոր լինի , և բնութն կապ լինի , և քիրտքն սակաւ լինի , և գոյն խիստ նեխահոտ լինի , և մաճասին երակն փոփոխական և անհաւասար լինի ։

Իսկ իւրեանց ստածումն այս է , որ թէ ջերմանն պատճառն արիւնն լինի , երակ առ 'ի բասիլիկէն ըստ զօրութեն , և ըստ հիւանդին ուժոյն արիւն հան . ապա գարեջուր և սրքնճալին տուր ։ Ապա թէ բնութիւնն կապ լինի , առ դամոյնի և յուճնապի ջուր , և շաքարով տուր . և ըղըրդական ջուր՝ ընդ թթու և քաղցր նռան ջուր 'ի քանի պահէ ։ Եւ երբ նոպային օրն լինի , սրքնճալին տուր տաք ջրով ։ Ապա թէ հիւանդին զօրութիւն տկար լինի , կերակուր հաւու ձագ տուր՝ զիրպաճ եփած ։ Ապա թէ 'ի գոյն եփելոյ նշան երևնայ , եփած աֆթիմոնն տուր , որ զմարմինն 'ի հիւանդարար նիւթէն սրբէ . և հետ այնոր տասն դրամ 'ի շաքարէ վարդմարապայ 'ի քանի պահէ ։

Սահակն ասէ . եթէ պատճառն այրեցած մաղձն լինի՝ որ 'ի սաւտայ փոխեցաւ , իւր ստածումն այն է՝

որ գարեջուր տան, և սրքնճպին տան, և այլ ոմն իրք՝ որ զմարմինն հովցնէ, օգտէ ։ Նոյն զխուլթիւն լուծէ մրգանց ջրովն, և ամենևին երակ մի առնուր ․ բայց մերաբերութի արա սրքնճպինով և տաք ջրով 'ի նոպայլին ժամն, որ ստամոքսն 'ի հիւանդարար նիւթեն սրբէ ։ Նոյն 'ի յայն աւուրքն՝ որ չունի զնոպայն, ազախի ջրով մուղաւարդ տուր, և յոմն բանէ՝ որ զմարմինն դատէ՝ պատրաստ կենայ, օգտակար է ։

Ապա թէ պատճառն այս ջերմանս այրեցած պաղղամն լինի, որ 'ի սաւտայ փոխեցաւ, և բորբոսեցաւ, իւր ստածումն այն է, որ 'ի յախօթուց մեղրով հին վարդամարապայ ուտէ, և բազխանի ջուր սրքնճպինով 'ի բանի պահէ, և զխուլին կակղցնէ յունապի ջրով և քապուլի հալիլայով ․ և յամէն 'ի պաղղամի կերակրոց պատրաստ կենայ ։ Նոյն երբ ջերմն 'ի վճարն գայ և 'ի յարձակելն, սակաւ սակաւ գինի տուր ․ և կերակուր՝ հաւ զիրպաճ եփած 'ի բանի պահէ ։ Ապա թէ այս ջերմանս ստամոքսն վատուժ լինի, զծորին կուրսն սրքնճպինով 'ի բանի պահէ, օգտակար է եթէ ոմն կամի ։

Մարճուլայն ասէ 'ի նոյն պատճառդ և 'ի նոյն ջերմնդ՝ զոր տետռատէօս կոչեն, եթէ բնական սաւտայն չբորբոսի ։ Իսկ Արագարատ և Գաղենոս ասեն, եթէ բորբոսի անճարակ ․ զի ոմն իրք՝ որ գիճութիւն ունի 'ի բնութեն, կամ 'ի յէութե, բորբոս [1] ընդունի ․ և սաւտայն՝ թեպէտ և բնութեամբ չոր է, բայց էութե կակուղ է, և հոսի 'ի ձեռն գիճութեն, անճարակ ընդունի զբորբոսն ։ Նոյն իւր նշանն այս է՝ որ 'ի նոպաթին ժամն՝ անդամոցն խաղալն խիստ լինի, և 'ի ձեռն տուժելոյն՝ թուի թէ կումանտրեն զոսկերքն, և զատամունսն ընդ իրար կրճտէ, և նոպայն յերկար լինի ։

Ապա պարտ է բժշկին՝ որ 'ի յայս ջերմս 'ի հիւանդութիւս աղէկ իմանայ զպատճառն և տեսանէ, թէ 'ի յայտ 'ի չորեցդ որն է պատճառն՝ որ զջերմն արար․ արեանն սաւտայն լինի պատճառն, եթէ պաղղամին սաւտայն, եթէ խարտէշ մաղձին սաւտայն, եթէ

1 Յօրինակին բորբոսի ։

խնչքն՝ որ է բնական սաւտային ։ Ապա թէ պատճառն ՚ի յարեանն ՚ի սաւտային բորբոսելոյն լինի, իւր սատա-ծուցին այս է, որ սկիզբն երակ առնու ՚ի բասիլիկէն, ըստ կարեացն և ըստ հիւանդին ուժոյն արիւն հանէ ․ ապա թէ հիւանդն վատուժ լինի, չէ պատեհ երակ առնուլ ։ Ապա թէ երակ կամիս առնուլ, զկնի նոպային ՚ի մէկայլն օրն առ երակ ։ Ապա թէ բնութին կապ լինի, զկակուղ հուկնայն ՚ի քանի պահէ ․ զի հուկնային գործն ՚ի յայս հիւանդութեանս լաւ է և օգտակար քան զդեղ առնուլն ։ Եւ ՚ի յայն օրն՝ որ ջերմանն նոպայն լինի, կերակուր չուտէ, և հով ջուր խմէ ․ և երբ կերակուր տաս, հաւձագ տուր և տուռայճ, օգտէ ։

Ապա թէ պատճառն խարտեշ մաղձին սաւտային լինի, որ բորբոսեցաւ, իւր սատածուցին այն է՝ որ ՚ի սկիզբն հիւանդութեան զբնութին կակղցնես հալիլայով և մանիշակի շարապով ։ Ապա թէ սկիզբն այս ջերմանս ՚ի յամռան աւուրքն լինի, գարեջուր տուր սըրքընճպինով ։ Ապա թէ առնես զժաասն՝ որ է ազոխն, և ծեծես, պապայիճ խառնեալ տաս, շատ օգտէ ․ և ՚ի խաւարտացն հազար և ըղըրղական տուր ։

Ապա թէ այս ջերմանս պատճառն ՚ի պալղամիկ սաւտայէն լինի՝ որ բորբոսեցաւ, իւր սատածուցին այս է՝ որ սկիզբն հիւանդութեան զբնութին կակղցնես այս դեղովս ։ Առ թրպուլթ մաղած, և մազտաքէ, և մեղրով վարդմարապայ, տաք ջրով տրորէ, և տուր, օգտէ ։ Ապա թէ զօրութին հիւանդին տկար լինի, կերակուր հաւձագ տուր, և տուռայճ, զոր պարկեշտ համեմնով զուգած լինի ․ այլ օշինդրին կուրմն այս ջերմանս շատ օգտէ ։

Ապա թէ այս ջերմանս պատճառն բնական սաւտային բորբոսելն լինի, իւր սատածուցին այս է՝ որ իւր սկիզբն թեթև մտպուխ տաս, յոր եփած լինի պապայիճ, և աֆթիմոն, որ մարմինն [1] ՚ի հիւանդարար նիւթէն սրբի, և ՚ի թթու կերակրոց պատրաստ կենայ ։ Եւ բնական սաւտային սատածուցին ոճով ՚ի քառամներորդ երկրորդ գլուխն դրածնես, ամենայն օգ-

1 Ցորենակերն խնձորին ։

տէ մեծ Թիրեաքն, և միթրուդատն, մանաւանդ 'ի ձմեռնաւուրքն, օգտէ թէ ա՛ծ կամի ։

## ԳԼՈՒԽ ԽԱ.

**Գուշակութիւն նախադրութեան վասն բնական սաւտային ջերմանն, և իւր առածմանն ։**

ԲՆԱԿԱՆ սաւտային ջերմանն նշանններն այս են, որ իւր առաջին պատճառն նշանններն այս ջերմանս. և են նոքա զերդ զխառնուածքն, և տարիքն, կերակուրն, և ըմպելիքն, ժամն, և սովորութիւն, և փայծաղնաւ ցաւութիւն ։ Եւ իւր նոպայն քսան և չորս պահ լինի. իսկ թէ այլ կարճ լինի քան զքսան և չորս պահն, նա չէ բնական սաւտային մէն, այլ խառն ունի այրած մաղձէն, կամ 'ի յայրած 'ի յարենէն. ապա թէ այլ աւելի լինի նոպայն քան զքսան և չորս պահն՝ նոյնպէսն չէ բնական սաւտային մէն, այլ խառն ունի յայրած պաղղամէն ։ Ապա երբ լինի՝ որ 'ի նոպայն սկիզբն ցրտանայ և սասսայ, և 'ի հեռն ցաւ լինի, զերդ ըղյօղուածացն տուժիլն, և ոսկերացն կոտրիլն. բայց ծարաւն սակաւ լինի քան զայն՝ որ այրած մաղձէ լինի, կամ յայրած պաղղամէ ։

**Վասն տրամադրման և բժշկութեան բնական սաւտային ջերմանն ։**

'Ի Գաղիանոսի առացելոցն պատեհ է 'ի յառաջի սատածումն զմարմինն տեսանել, թէ արիւնն յաւելցել լինի, պարտ է երակ առնուլ. ապա թէ փայծաղն հաստ լինի, վստահացիր և արիւն հան. ապա թէ արիւնն սև լինի, այլ յօժարութ՛ հան զարիւնն. ապա թէ կարմիր լինի և նօսր, առ ժամն կապէ զերակն, և մի թողուր որ արիւն հանէ. և զերակն զոր կտրես՝ զկաթուղիկէն առ, կամ 'ի բասիլիկէն ։ Եւ կերակուր զայն տուր՝ որ քամի չընծայէ, և ոչ այսոց

'ի ստամոքսն. մանաւանդ զայն տուր, որ զքամին արձակէ, դիւրահալ լինի և մարսական, և բնութեանն կակղական լինի. այլ քանի կարես զբնութիւն կակուղ պահէ: Ապա թէ չկակղանայ, դու կակուղ հուկնայ դիր 'ի յառաջ. և հետ այնոր այլ ուժով հուկնայ դիր, և պատրաստեցո 'ի խոզի մսէ, և յայն իրաց՝ որ թանձր զօրկուտ են, և յուշահալ, և յայն իրաց՝ որ հով են և գիձային. և տուր գինի նօսր և սպիտակ, զոր չափաւոր տաքութիւն ունի. և տուր թռչնոյ միս, զերդ տուռայձին, և տահուձին, և սալամու, և հաւձագ. և 'ի ձկանցն տուր զոր միսն քնքուշ լինի, և զայն՝ որ թանձր միս ունի և զօրկուտ, մի տաս. այլ զաղի ձուկն և մանանեխ տալ մարթի, բայց ժամ ժամ. այլ թէ յերեք պղպեղեան մաճունէն, և 'ի չամանի մաճունէն տաս՝ պատեհ է:

Եւ զոտիցն աձրուելն, և զտատան այրմնելն, և 'ի բաղնիս մտնելն մի արգիլես, այլ թող լինի ըստ իւրոյ սովորութեան: Բայց 'ի բաղանիս մտնելն և աձրուելն օգտէ՝ քան 'ի վրայն ջուր ածելն: Եւ յայն երկու օրն՝ որ հանգիստ լինի՝ 'ի ձի հեծնելն, և զտատան այրնելն մի արգիլես: Եւ զայս զամէնն՝ զոր ասացաք, պատեհ է որ հիւանդութեան սկիզբնէն մինչև 'ի հիւանդութեան 'ի կատարիլն լինի: Ապա երբ գիտենաս որ հիւանդութիւնն կատարեցաւ, պատեհ է որ զիւր թրդտիլն այլ պարկեշտ այրնես, նոյնպէս և զիւր զկերակուրն՝ քան զայն՝ որ երբ էր սկիզբն, և քան զայն՝ որ այլ յետոյ այրնես:

Վերջին և փայծղան պէտ արա ծեփելով, և ջեռոց այրնելով, որ կակղցնեն զխստութիւն, զձկտիլն. և 'ի բան մի տար զդեղերն՝ որ զգոմն յորդորեն: Եւ երբ տեսանես զնշաննին, որ հիւանդութիւն եփեցաւ, դէմն 'ի լուծման դեղերն արա, այն դեղերովն՝ որ զսև մաղձն լուծանեն, և զայդ շատ հետեւր արա. բայց 'ի յայն ժամն՝ որ հիւանդութիւնն եփած լինի:

### Վերաբերութեան:

Եւ այլ տես աղէկ եթէ չկայ պատճառ՝ որ արգիլել է զքեզ, նա սև վրացի խարբախի կոճ, և 'ի բողէն

դիր՝ զերդ իւր ռամն է . ապա զբողկն տուր որ ուտէ , և վերաբերութիւն այրնէ ։ Ապա այն հիւանդն՝ որ վերաբերումն չկարէ այրնել , տուր լուծման դեղ , տուր զոր ուժովն լինի . և այլ հետ այսոր զթիրեաքն տուր՝ զի շատ օգտէ ։ Եւ այլ քան զամենայն դեղեր՝ որ. գրեալ են , և զոր մենք փորձեր ենք , և սովոր ենք տալոյ , այն դեղն է՝ որ անկժատ ունի , և ինք յակրաբադինն կայ գրած ։

Իսկ այն մարդիկն՝ որ հիւանդութեան սկիզբն զայդդեղերդ ՚ի բան տանին , կամ յառաջ քան զայն՝ որ հիւանդութիւն կատարի , զհիւանդութիւն կրկնեն և երկու այրնեն , և շատացնեն զջերմն . և իւր նշանն այն է՝ որ երկու օր նոպայն հետրաց գան , և մէկայլ օրն չգան ։ Եւ ես տեսայ մարդ մին ՚ի բժշկաց , որ ետ իւր հիւանդին թիրեաք յառաջ քան զայն՝ որ հիւանդութիւնն կատարէր . և ունէր մարդն այն երկու ջերմն՝ զոր ասացի , նա յաւելցան ջերմերն , և յիրար կցեցան , և եղան մի՝ ջերմ մի յար , և սպանին զհիւանդն ։

Բայց մեծ իմաստասէրն Սինայի որդին ասէ , եթէ այս ջերմն՝ որ անապակ ՚ի բնական սաւտայէն լինի , որ է արեան մրուրն , պատեհ է որ սկիզբն կակղցնես զբնութիւնն պատառակի ջրով , և փենիտ շաքարով . և ՚ի բան տար վարդմարապայն շաքարով և մեղրով սնուցած , զի օգտակար է շատ ։

Մատբուխ ռեւնդայի ։

Առ քապուլի հալիլայ , և սև հալիլայ ՚ի կորիզէն հանած և ճարձատ արարած տասն տասն դրամ . պալիլաճ , և ամլաճ , սենեմաքի , և մարուխի տակ հինգ հինգ դրամ . դաժոյնաչիր քսան հատ . շէկ չամիչ ՚ի հատճէն հանած քսան դրամ . ղաֆէթ , հուսամ օշինդր , և եղնալեզու , և պատրանպօյէի տերև , և պասպայիճ չորս չորս դրամ . աստախոտոս երեք դրամ . զամէնն եփէ չորս լիտր ջրով , մինչև մնայ կէս լիտր . ապա առ աֆտիմոն եօթն դրամ , և ՚ի ներս ՚ի մրտպուլին ընկէ , խառնէ , և ՚ի կրակէն ՚ի վայր կալ , և պահ մին համբեր տուր . ապա աճուէ զամէնն , և պարզէ . և առ ՚ի յայդ ջրէտ հարիւր դրամ , և դիր

'ի վերայ մթխալ մի աղցած և մաղած սապոն սուկուտրի, և կէս մթխալ նաւթի աղ, և երկու տէնկ սև վրացի կոճ. և հետ նոպային 'ի մէկայլ օրն տուր որ խմեն եղկ, զերդ այլ լուծման դեղի ռասմ է։

Նաև երբ զամենտ արարեալ լինի, տուր ղափտի կուրս և մթխալ մի ընդ երկու նուկի սրքնճպին ջրախառն. և երբ հիւանդութիւն եփած լինի, պատեհ է զայս դեղերս 'ի բան տանել։

## Սֆուֆ սէվրայի ։

Սոա սև հալիլայ, և քապուլի հալիլայ 'ի կորզէն հանած եօթն եօթն դրամ. պասպայիճ, և աֆթիմոն երեք երեք դրամ. զամենս աղա և մաղէ, և սնա 'ի դեղէտ երեք դրամ, և փնտիտ շաքար երեք դրամ, յիրար խառնէ, և տուր որ առնու. և 'ի վերայ տաք ջուր խմէ. 'ի նոպային օրն մի տար, այլ 'ի մէկայլ օրն տուր. օգտէ եթէ ա̃ծ կամի։ Ապա թէ յերկար քաշէ այս ջերմն, և ձմեռն 'ի վերայ հասանի, և եփելոյ նշանն երևնայ, ապա պատեհ է 'ի բան տանիս մէկ մի 'ի տաք մաճունոյն, զերդ անգժատի մաճունն, կամ անգժատի հապն, յամէն երեք օր տուր կէս դրամ. օգտէ թէ ա̃ծ կամի։

Յոհաննայ ասէ 'ի նոյն պատճառդ, եթէ այս ջերմս ընծայի 'ի բնական սաւտայէն՝ որ 'ի դուրս յերակացն բորբոսի։ Նաև իւր նշանն այս է՝ որ երկու օր ընդ մէջ գայ նոպայն. և իւր սկիզբն խիստ դող լինի, և յերկար քաշէ. և հետ այնոր զտաքութիւն 'ի դուրս ցուցանէ. և իւր գոյն նսեմ և սպիտակ լինի։ Նաև յիւր առածումն պարտ է որ զհիւանդն չպատրաստեցընես խիստ, որ զօրութիւն չտկարանայ և անճարակէ, որ յերկար հիւանդութեան զօրութի պիտի. և զօրութ̃ 'ի ձեռն կերակրոց լինի, որ չփչչի ուժն։

Իւր առածումն այս է՝ որ 'ի նոպային օրն վերաբերութիւն այրնէ, և կերակուր չտայ, և պալէ երկու օրն կերակրէ և պարարէ զմարմինն։ Ապա թէ հիւանդին զօրութիւնն տկար լինի, գաւին միս և հաւ տուր՝ սխտաւամ եփած։

## Սեւդայի դեղեր:

Ապա թէ հիւանդն ծեր լինի և սաւտայինկ բնութ̃, կամ գէճ բնութե՛ն, զանդժառի մաճունն տուր, որ ձեռն մի քանի սաւտայ և պալղամ լուծանի: Նոյն հետ այնոր մնուցած վարդ մեղրով, և մազտաքէ, և ծխանելիք, և անիսոն 'ի քանի պահէ: Նոյն ըմպելի մեղրաջուր տուր. և զդեղրանքն՝ որ զսաւտայն լուծանէ՝ 'ի քանի պահէ, զերդ աֆթիմոնն, և սև վրացի կոճն, և պասպայիճն, և սև հալիլէ, և ստոախոտոս, և աղարիկոն, և սինամաքի, և այլ զոր ինչ նման են սոցա 'ի քան տար, օգտէ: 'Ի տաք և 'ի գիճային կերակուր յարեցո, և 'ի սաւտայի կերակրոց պատրաստ կալ, և 'ի քաղնիս պակաս մտո. և երբ հիւանդութիւն 'ի վճար հասանի, զթպտիրն պարկեշտ արա. օգտակար է, եթէ ած կամի:

Մասուայի որդին ասէ, եթէ այս ջերմն յայրեցած մաղձէ լինի, նոպային շրջանն[1] պակաս լինի, և հիւանդն ծարաւ անկանի. ցորեկոյ կենալն և քաղցենալն զեն այրնէ: Նոյն իւր ստածումն այն է, որ հետ եւթն աւուրն ըռևանդին կուրսն տուր, և զանդժառին մաճունն, և զօշնդրին կուրսն, օգտէ: Սրքընճպին տուր՝ որ լերդն և փայծաղն զօրաւոր մնայ. և 'ի յամ շաբաթ աֆթիմոնին զհապն 'ի քանի պահէ, որ զհիւանդութէ գլուխքն 'ի մարմնոյն սրբէ: Նոյնալեզուի ջուր, և խնծորի շարապ տուր, և ամենևին կաթն, և ոսքն, և պախրէմիս, և պատընջան, և յամ իրաց՝ որ սաւտայ ընծայեն՝ պատրաստ կենայ. ապա թէ այս ջերմն զօրաւոր լինի, այլուայր աֆթիմոնին մտպուխն տուր. օգտակար է թէ ած կամի:

1 Յօրինակին շրջանն:

## ԳԼՈՒԽ. ԽԲ.

Պատճառութիւն և նախագիտութիւն վասն հնգօրեայ և վեցօրեայ ջերմերոյն, որ ընդհական սահմանային բորբոքելոյն լինի ։ Սահմանումն և բժշկութիւն հնգօրեայ ջերմանն ։

ՍԱՍՆ այն երկու ջերմերոյն՝ զոր հնգօրեայ և վեցօրեայ անուանեն, մինն ունի զնոպայն յամէն հինգ օր, և միւսն զնոպայն յամէն 'ի վեց օր . վասն այդ պատճառանացդ անուանեցին այդ անուամբդ ։ Եւ իւրեանց պատճառն և ընձայիլն հաստ և պինդ սաւտայէ լինի, զի որչափ նիւթնին խառնուածքն հաստ լինի և պինդ, մանաւանդ երբ չաղքմն սակաւ լինի 'ի մարմինն, նա իւր նոպայն այլ յուշ գայ . վասն այնոր եղաւ՝ որ իրենց նոպայն այլ յուշ գայ, զի այլ հաստ է իւրեանց նիւթն, քան զչորեքօրեայ ջերմանն ։

## ԳԼՈՒԽ ԽԳ.

Վասն տածմանն և բժշկութեան հիւանդութեանց և վէրացելոց ջերմանն ։

ՊԱՏԵՀ է սատածել զայս ջերմերս ընտականս և յետ տակ սաստայինն ջերմանն բժշկութեամբ, զոր 'ի յառաջ-յիշեցաք մեր իրօք. և սակայն մին այլ ուժով այրնել զդեղերն, զի չորեքօրեայն՝ որ է տեւատածական, այլ չուտ արձակի. իսկ այս ջերմն այլ յոյժ, զի իւրեանց նիւթն հաստ լինին և այլ պինդ ։ Ապա յառաջ պարտ կեշտացո զնիւթն, և յետոյ կէ զմարմինն ըստ ջերմանն տաքութեան և ըստ հալութեան, և զհիւանդին զօրութիւն և զկերակուրն պարկեշտ տուր, և 'ի խառն կերակրոյ պատրաստեցո. և վստահացի՛ր աւելի 'ի տատակ սրբնձալինն, զոր տակերով ջուզեն. և տուր վարդամարապայ, և մաղտաքէ, և ըռազիանի ջուր, և ղաֆթեթի դփտի կուրս, և զոր ինչ նման են սոցա. և վերաբերութի՛ տուր այրնել սրբնձալինով, և բողկով, և սամթի ջրով, և աղով, և զոր ինչ նման են սոցա ։

Ահրիժենիոսն ասէ, եթէ երբ այս ջերմն խիստ դողացնէ, և 'ի հետոն սակաւ մի տաքութի լինի, և 'ի վճարն 'ի նոպայինն 'ի մարմինն տաքութիւն երեւնայ, տուր զդեղերն՝ որ զգօղն յորդորեն, զերդ զափօնն կուրսն, և զպզուրի սրբնձալինն, և զոր ինչ նման են սոցա, որ հիւանդութե նիւթն ընդ գօղն իջանէ. և զկերակուրն պակաս տուր. և սակաւ մին քրտընցընելն օգտէ. և պատրաստեցո 'ի յամ իրաց՝ որ պաղամն այրնեն և սաստայ, որ ջերմն յերկար չքաշէ. և կերակուր հաւու ձագ տուր՝ պարկեշտ համեմնով ։ Ապա թէ հիւանդին ուժն տկար լինի, գաւլին մս տուր կամ ուլու մս խորոված և տապկած, կամ մեւտանջանայ, օգտէ ։

Մահմատի Զաքարիայն ասէ, եթէ պատճառն այս ջերմերոյս 'ի սաստայինն 'ի հաստ խառնուածոցն լինի, որ 'ի մարմինն հաւաքի. և նիւթն այս ջերմերոյս քան զչորեքօրեայ ջերմանն այլ հաստ լինի. վասն այդ պատճառանացդ գայ իւր նոպայն այլ յուշ քան

զչորեքօրեայ ջերմանն : Իսկ զոր հինգօրեայ կոչեն իւր նշանն այս է՝ որ չորս օր թողու և 'ի հինգերորդ օրն գայ իւր նոպայն : Նա և մեկայլն՝ որ վեցօրեայ կոչեն, իւր նշանն այն է՝ որ հինգ օր թողու, և 'ի վեցերորդ օրն գայ նոպայն :

Իսկ ստածումն այս երկու ջերմերույս զերդ զտետուատէոս ջերմանն լինի, որ է չորեքօրեան. և այլ զօրաւոր պիտի ստածումն. զի տետուատէոս ջերմն այլ շուտ արձակի քան զայս ջերմերս, զի սոքա այլ յերկար քաշեն վասն նիւթին հաստութեն, որ զլուխք են այս հիւանդութեան : Իսկ կարգն և չափքն այս ջերմերույս և վճարքն չէ յերևան. և վասն այսոր պարտ է՝ որ 'ի դեղերայքն մէն չվստահնան մարդիկ, այլ ուղեն իրուկը՝ որ խաախաթավ օգտեն, և 'ի բան տանին. օգտակար է եթէ ա՛ծ կամի : Ամենայն այս ջերմերույս ստածումն այն է՝ որ յառաջ զգլուխքն զհիւանդութե 'ի մարմնոյն սրբէ՝ ըստ տաքուէն, և ըստ հովութեն, և ըստ հիւանդին զօրութեանն. և զիւր ջանքն անէլ 'ի սատակ սրքնձպինն այնէ, կամ 'ի հնդանոք սրքնձպինն, մեղրով վարդմարապայ, և մազտաքէ, և բադրիանի ջուր, և ղափթի կուրմն, և զոր ինչ նման են սոցա՝ 'ի բանի պահէ. օգտակար է թէ ա՛ծ կամի.

Սհրիժենէփսան ասէ, եթէ այս ջերմն խիստ դողացնէ, և 'ի հետ իւր տաքութեն նշան չլինի, և 'ի վճար ջերմանն տաքութի երևնայ 'ի մարմինն : Իւր ստածումն այն դեղերն են՝ որ զգոմն յորդորեն, զերդ ղափտին կուրմն, որ է ղաֆէթին ջուրմն, և սրքնձպինն հնդանոք, և այլ զոր ինչ նման են սոցա. և կերակուր պակաս կերակրին. և սակաւ մի քրտնին. և յամենայն իրաց՝ որ սաւտայ և պալղամ ընծայեն՝ պատրաստ կենայ, որ զայս ցաւս յերկար չքաշէ. և զոզին յորդորելն իջուցանեն զհիւանդարար նիւթն, և կերակուր հաւձագ տուր՝ տաք և պարկեշտ համեմով եփած : Ապա թէ հիւանդին զօրութին տկար լինի, դառան միս տուր, կամ ուլոյ խորովեալ, և կամ մութանձանէ. օգտէ թէ ա՛ծ կամի :

# ԳԼՈՒԽ ԽԴ.

Պատմութիւն նախագիտութեան վասն մետասանօրեայ ջերմանն. և վասն մետասանօրեայ ջերմանն սատածումն և բժշկութեն:

Իսկ այս ջերմն յամ մետասան օր ապա բերէ զիւր նոպայն. և իւր պատճառն սաւտային նիւթին հաստութին լինի, որ քան զսպաքմն աւելի հաստ լինի և պինդ. զի քանի նիւթն հաստ լինի՝ նա իւր նոպայն յուշ գայ: Իսկ քան զամ ջերմերոյն այս ջերմանս նիւթն այլ հաստ լինի և այլ պինդ. վասն այնոր յերկար քաշէ, և իւր նոպայն այլ յուշ գայ: Իսկ երբ ջերմն ուժով լինի, նա իւր նիւթն շատ լինի 'ի մարմինն. և երբ ջերմն վատուժ լինի, նա իւր նիւթն սակաւ լինի 'ի մարմինն:

Այլ բժշկապետն Ապուճարէհն ասէ, եթէ ամ բժշկական վարդապետացն ուրդեցաւ, որ վասն ջերմերոյն կարգին չաքան չերևացաւ. և իւր պատճառն այն է՝ որ ած ամենակալն զջերմերն պատճառ արար վասն մահուան մարդկան. զի շատն այն է 'ի մարդկանէ՝ որ 'ի ջերմերոյն մեռանին: Վասն այտոր է՝ որ ջերման կարգին չաքան առ բազում՝ դասս մարդկան ծածկած է. այլ իմաստասիրական վարդապետքն ամէն մէկ գիրք մի արարին, և քննեցին, և պատմեցին վասն ջերմերոյն վարդապետութի, և սատածումն ըստ իւրեանց իմաստութեն:

# ԳԼՈՒԽ ԽԵ.

Վասն առածմանն և բժշկութեան մետասանօրեայ ջերմանն։

ՊԱՏԵՀ է 'ի հիւանդութեան յառաջքն որ զմնուհին կակղացնեա, և տաս ափիթիմօնն ջրով եփած, կամ պամիտղր ջրով եփած. և զայդ տուր հետ մի քանի։ Ապա թէ ջերմն հին լինի, և իւր դողալն և ցրտանալն պակաս լինի, տուր զդեղերն՝ որ քրտինք բերեն, զերդ զպղպեղով ձուարիշն, և անկժատի ձուարիշն, և զոր ինչ նման են սոցա։ Այլ ևս քարոզնիճ, և թուրքք եղևին, որ է բարձունենեկ, և ջրով եփէ աղէկ. և զայն ջուրն յերկու տաշտ ած. զմէկն առջև հիւանդին դիր, և զմէկայլն յետևն. և զհիւանդն ծածկէ և զջուրն, որ 'ի ջրին շոգւոյն և 'ի տաքութէն մարմինն շողանայ շուտ և քրտնի. և հետ այնոր յամ երկաւ որ 'ի բաղնիս մտր. այլ 'ի նոպայէն օրն թող զբաղնիսն, զի ահոկէ։

Այլ բժշկապետն Իսահակ ասէ, եթէ հետ այս ջերմանս զաղայն չլինի, և ջերմն խիստ լինի, 'ի բառիկինկէն երակ առ, կամ 'ի սափն։ Ապա թէ հետ այս ջերմանս 'ի մարմինն տաքութիւն լինի, և 'ի նոպայէն օրն բերանն փրփուր գայ, տուր զանզժատի մաձունն։ Ապա թէ այդ նշաննիդ չլինի՝ զոր ասացաք, և այս ջերմն 'ի տաք հիւանդութենէ 'ի վերջքն լինի ընծայել, իւր թապորն այն է՝ որ 'ի յար զմնութին լուծանես դեղերովն, որ զաւատայն քիստակեն 'ի մարմնոյն. և պատրաստեցա 'ի յամ ցեղ կերակրէ՝ որ սառնայ ընծայեն։

Մահմատի Զաքարիայն ասէ, եթէ ջերմերոյն կարգեն չաքսն յերևան չէն. վասն այսոր պիտի՝ որ մարդիկ չվստահնան 'ի դեղերն միայն, այլ պարտ է՝ որ յուղեն և պէտ այլմեն զիրուկն, որ խափանութով օգտեն, այն օրինակաւն՝ որ 'ի չորեքօրեայ ջերմանն 'ի սառածումն 'ի վերջքն յիշեցաք. օգտակար է թէ ած կամի։ Խասիեթ զիւրակամ և զաւանձին գործէ է 'ի աակէ, զոր անուանեն յատուկ։

Ըմպուճնշրիճն տուր 'ի նոյն պատճառս, և 'ի նոյն նշանս. կարգով օգտեն, օգնութեամբ այ :

## ԳԼՈՒԽ ԽԶ.

Ցուցմունք նախագիտութեան վասն չորից ժամանակացն. որով յառաջագէտ լինի բժիշկն զմահուն և զկենացն յամ ցեղ հիւանդութեանց :

Զամ ցեղ հիւանդութեան՝ թէ սուր լինի, թէ յերկարօրեայ, չորս ժամանակս ունին, և չորս սահմանս : Իսկ պարտ է բժշկին անճարակ՝ որ գիտենայ զչորս ժամանակսն 'ի յամ ցեղ հիւանդութեանս, զի իւրոյն լինի յառաջագիտութիւն կենացն և մահուն : Նոյնպէս և իւրոյն գիտենայ զհիւանդութիւնն՝ որ սուր լինի, և զայն՝ որ յերկարօրեայ. և զնիւթին զեփիլն, և զչեփեղն, որ է գլուխքն և նիւթն հիւանդութեան :

Արդ առաջին ժամանակն այն է՝ որ սկիզբն լինի հիւանդութեան և առաջք. և իւր սահմանն այն է՝ որ հիւանդութեան ահողն 'ի բնութեան 'ի գործն հասանի. և բնութեան դեռ լինի սկսել զհիւանդութեան զգլուխքն 'ի յեփել :

Այլ ասէ Մարճուայն բժշկապետն, եթէ առաջին ժամանակն ընդ երեք բաժանի : Նա իւր առաջին բաժինն այն է, որ դեռ նշան և պատահումն չլինի երևեցել առ հիւանդն, և հիւանդն չզգայ և չիմանայ ոչ ինչ իրք զկատարեն : Նա երկրորդ բաժինն մինչև յերեք օրն լինի. և այս բաժինս անտիճելով և կողմելով չզգայ ըղորդ. զի դեռ հիւանդութիւն զինքն 'ի լման չլինի ցցուցել : Իսկ երրորդ բաժինն այն է, որ հիւանդն իւր մարմինն զգայ և իմանայ՝ որ փոխեցաւ 'ի յայլ իրք : Ապա անուանեցին առաջին ժամանակս՝ սկիզբն և առաջքն հիւանդութեան. զի իւր գործոյն առին և իւր զանուննն :

Իսկ երկրորդ ժամանակ հիւանդութեան այն է՝ որ

հիւանդութիւնն սկսանի յաւելուլ ։ Եւ իւր սահմանն այն է, որ հիւանդութիւն հետէն զօրանայ և աճէ, և բնութեանն զօրութիւն հետէն վատուժի և պակասի. և ուզէ՝ որ եփէ զհիւանդութիւն և արձակէ, բայց տկարանայ և ձանձրանայ, և չիկարէ 'ի լման եփել, զի հետէն աճի հիւանդութիւնն ։ Նշան իւր սկիզբանէն 'ի վեր բնութիւն առաջք այրնէ՝ եփել զհիւանդութիւն, բայց հիւանդութիւն հետէն զօրանայ և աճէ, և հիւանդին ուժն հետէն պակասի. մինչև դայ երրորդ ժամանակն, որ կատարի 'ի լման ։ Նոքա անուանեցին զայս ժամանակս 'ի յաւելուն. զի իւր գործոյն առին և իւր զանունն ։

Իսկ երրորդ ժամանակն հիւանդութեան այն է, որ հիւանդութիւն միացեալ դադարի, և այլ չաճէ, և նշաննին 'ի յերևան գան, որ բնութիւն հիւանդութեան յաղթեալ լինի, կամ հիւանդութիւն բնութեան ։ Իսկ զայս 'ի ժամանակս 'ի լման եփի հիւանդութիւն, զի դադարի միացեղ՝ և այլ չաւելնայ. և 'ի հոս ցուցանէ բնութիւն՝ զոր ինչ լինել կամի ։ Նոքա անուանեցին զայս ժամանակս 'ի լման և կատարելութեան ժամանակ. զի իւր գործոյն առին և զիւր զանունն ։

Իսկ չորրորդ ժամանակ հիւանդութեան այն է, որ հիւանդութիւն 'ի պակասիլ առնու. զի բնութիւն հետէն եփէ և հալէ, և սակաւ սակաւ արձակէ 'ի մարմնոյն ։ Եւ իւր սահմանն այն է, որ հիւանդութիւնն հետէն պակասի, և հիւանդին մարմինն հետէն թեթևութիւն և դիւրութիւն լինի ։ Եւ սկսանի այս ժամանակս երբ կատարի հիւանդութիւն, և երթայ մինչև 'ի վճարն. որ բնութիւն հիւանդութեան յաղթէ 'ի լման, և հիւանդն 'ի հիւանդութենէն բարով՝ 'ի դուրս գայ ։ Նոքա անուանեցին զայս ժամանակս 'ի պակասն. զի իւր գործոյն առին և զիւր զանունն ։

Եւ այլ պարտ է գիտենալ, որ իւրեանցն չափքն ըստ հիւանդութեան զօրութեան լինի, և ըստ նոպային որպիսութեան յառաջմէ մինչև 'ի վճարն ։ Իսկ բժշկին պարտ է քննել և իմանալ զհիւանդութեանցն զչորս ժամանակսն. զի անճարակ բժշկին կարէք ունի նոցա գիտութիւն վասն երկու պատճառանացն. մէկն՝ որ յառաջադէտ լինի զկենացն և զմահուն, զերդ որ այլ

բժշկին յառաջ քան զկատարելութեան ժամանակին ունէ զմահուն՝ ըստ հիւանդութեան և ըստ ուժոյն որպիսութեանն :

Այլ հիւանդին ՚ի հիւանդութեան ՚ի թպարիքն այսպէս պիտի որ լինի : Յորժամ հիւանդութիւն երրորդ ժամանակին և կատարեալ սահմանն հասանի, պարտ է հիւանդին պարկեշտ կերակուր տալ. զի թէ կերակուրն հաստ լինի, նա բնութիւն յայն հաստ կերակրոյն յեփելն զբաղի, և հիւանդութեան եփելոյն խափանի և ՚ի զատ կենայ : Ապա թէ գիտենայ բժիշկն՝ որ հիւանդութիւն յերկար կամի քաշել, պատեհ է որ զկերակուրն հաստ տայ, որ հիւանդին ուժն չգլորի և կորնչի. զի զհիւանդութիւն ուժովն կարեն մինչև ՚ի կատարելութեան սահմանն և ՚ի վճարն ՚ի ծարս տանել :

Այլ ասէ Գալիանոս վասն երեք ժամանակացն, որ են յաւելուածն, և ՚ի լման կատարումն, և ՚ի պակասիլ հիւանդութեանն, եթէ զայս երեք ժամանակս ցուցանեն երեք իրք. մէկն՝ հիւանդութեան բնութիւնն. և երկրորդ՝ պատահմունքն, որ զկնի հիւանդութեան լինին. և երրորդն՝ պատահմունքն նիւթին, որ զհիւանդութիւն արար՝ եփելն և չեփելն լինի, որ է նիւթն : Իսկ հիւանդութեան բնութիւն այն է, որ բժիշկն տեսանէ յայն իրուն, որ հիւանդութեան ժողովելն ՚ի նոցանէ լինի. և այն իրուն՝ պատահմունքն առանձինն են բնութեան, որ է իւրական, զոր խասիաթ ասեն, զերդ ՚ի ջերմերն՝ հազն, և շնչոյն նեղնալն : Իսկ երբ տեսանէ բժիշկն՝ որ այս պատահմունքս ՚ի հիւանդութեան սկիզբն են, և չեն ՚ի պակասիլ և ոչ ՚ի յաւելուածն, ապա գիտենայ՝ որ հիւանդութիւն դեռ ՚ի յառաջին ժամանակն է և ՚ի սկիզբն :

Ապա թէ տեսանէ բժիշկն՝ որ հիւանդութիւն հետէն յաւելնայ, ՚ի հիւանդին մարմինն ծանրութիւն անկանի, և հիւանդին զօրութիւն հետէն պակասի, գիտենայ որ հիւանդութիւն ՚ի յաւելուածոյ, և ՚ի յերկրորդ ժամանակն հասաւ : Ապա թէ տեսանէ բժիշկն, որ պատահմունքն իւրեանց զօրութիւն ՚ի լման կատարի, և միացեղ դադարի, գիտենայ որ հիւանդութիւն ՚ի լման և ՚ի կատարելութեան սահմանն և ՚ի յերրորդ ժամանակն հասաւ : Ապա թէ ՚ի յայն որպիսութեան՝

զինչ որ լինի՝ 'ի պակասուին արեան, և հիւանդն յիւր մարմնին հետէն թեթևութիւն և դալարութիւն իմանայ, գիտեսցես բժիշկն՝ որ հիւանդութիւն 'ի չորրորդ և 'ի պակասելոյ ժամանակին հասաւ, և 'ի պակասելն ելաւ:

Իսկ այն պատահմունքն՝ որ զկնի հիւանդութեանն լինին, զերդ որ ոմանց 'ի ջերմերն գլխացաւութիւն հանդիպի, և ոմանց խելքն աւերի, և ոմանց աչքունք հանդիպի, և ոմանց 'ի լեզուն սևութիւն անկանի, և այլ զոր ինչ նման են սոցա. իսկ յորժամ տեսանէ բժիշկն՝ որ այս պատահմունքս ուրեանց զօրութիւնն յաւելեալն, ապա գիտեսցի՝ որ հիւանդութիւնն յաւելնալոյ և 'ի յերկրորդ ժամանակին լինի: Իսկ յորժամ տեսանէ՝ որ այս պատահմունքս նոյն ուրեանց զօրութիւնն 'ի լման հասանին, միացեալ դադարին, և այլ չաւելնան, ապա գիտեսցէ բժիշկն՝ որ հիւանդութիւնն 'ի լման և 'ի կատարելութէ ժամանակին հասաւ, որ է երրորդն: Իսկ յորժամ տեսանէ բժիշկն՝ որ այս պատահմունքս 'ի պակասելն առնուն, և հիւանդութիւնն դէմն 'ի յաղէկն դնէ, ապա գիտեսցի որ հիւանդութիւնն 'ի պակասելոյ և 'ի չորրորդ ժամանակին հասաւ, և 'ի պակասելն ելաւ:

Ապա այն նշաններն՝ որ հիւանդութեան[1] եփելոյն և չեփելոյն լինի, այս են: Յորժամ տեսանէ բժիշկն 'ի կարուրայն, կամ 'ի ձեռնալուայն, կամ 'ի պաղղամն՝ որ 'ի կրծացն հազալով գայ, որ եփելոյն նշաններն չանին և չերևնան ընդ, ապա գիտեսցի բժիշկն՝ որ դեռ հիւանդութեան սկիզբն է և յառաջին ժամանակին: Իսկ յորժամ յեփելոյ նշանացն իրք մի սակաւ երևնայ, գիտեսցի բժիշկն՝ որ հիւանդութիւնն յերկրորդ և յաւելնալոյն ժամանակին հասաւ: Ապա թէ եփելոյն նշաններն աղէկ և 'ի լման երևնան, գիտեսցի բժիշկն՝ որ հիւանդութիւն 'ի յերրորդ և 'ի կատարեալ ժամանակին հասաւ, և 'ի պակասիլն կամի սկսանիլ: Իսկ իւր պակասելոյն նշաններն այն է՝ որ հիւանդն յիւր մարմնին թեթևութիւն իմանայ. ապա գիտեսցի բժիշկն՝ որ հիւանդութիւնն 'ի չորրորդ ժամանակին հասաւ, որ է 'ի պակասիլ հիւանդութեան:

[1] Ցորենակին նշանէն 'ի նոր հիւանդութենէն:

Ապա թէ հիւանդութիւն 'ի նոպայով ջերմերոյն լինի, պարտ է բժշկին՝ որ զայն նշաններն, և զպատահմունքդ՝ զոր այլ 'ի յառաջն ասացաք, 'ի նոպային ժամանակին յուզէ և տեսանէ։ Նոյնպէս և զյաւելնալոյն զչափն, և զերիելոյն. նոյնպէս և զերկարութիւն ջերմանն, և զկարճութիւն, և զթեթևութիւն հիւանդութեան հիւանդին, և զծանրութիւն. զայս զամենեսեան տեսանէ բժիշկն ուրիշ ուրիշ, և 'ի վերայ հասանէ գիտութեան։ Յորժամ տեսանէ զջերմն, որ իւր նոպային այլ 'ի յառաջ և այլ շուտ գայ քան զանցեալ նոպայն, գիտենայ որ ջերմն 'ի յերկրորդ ժամանակին հասաւ։ Ապա թէ տեսանէ՝ որ ջերմանն նոպային այլ 'ի յետ և այլ յուշ գայ քան զանցեալ նոպայն, գիտենայ որ ջերմն 'ի յետին չորրորդ ժամանակին հասաւ, որ է 'ի պակասիլն։ Ապա թէ տեսանէ բժիշկն՝ որ ջերմանն նոպայն օր մի քանի միացեղ դադարի, որ ոչ այլ 'ի յետ գայ և ոչ 'ի յառաջ՝ քան զանցեալ նոպայն, ոչ այլ աւելի և ոչ պակաս քաշէ, գիտենայ որ ջերմն 'ի կատարելութեան և յերրորդ ժամանակին հասաւ։ Ապա թէ տեսանէ՝ որ հիւանդին մարմինն թեթևութիւն և դուրութիւն և հանգիստ յաւելնայ, գիտենայ որ ջերմն 'ի չորրորդ ժամանակն հասաւ և 'ի յետին սահմանն։

Նոյն այլ տեսանէ զջերմանն նոպայն, եթէ յերկար քաշէ քան զանցեալ նոպայն, գիտենայ բժիշկն՝ որ ջերմն յաւելնալոյ և 'ի յերկրորդ ժամանակին հասաւ։ Ապա թէ ջերմանն նոպայն այլ կարճ քաշէ քան զանցեալ նոպայն, գիտենայ որ ջերմն 'ի պակասելոյ և 'ի չորրորդ ժամանակին հասաւ։ Ապա թէ տեսանէ զջերմանն ժամանակն՝ որ անցաւ, որ սակաւ լինի, և 'ի հիւանդին մարմինն չլինի թեթևութիւն, գիտենայ զջերմն՝ որ 'ի յերկրորդ ժամանակն է և 'ի յաւելն։ Ապա թէ տեսանէ՝ որ նոպային ժամանակն, և այն ժամանակն՝ որ անցանի նոպայն, և հաւասար լինին, և հիւանդին մարմինն սակաւ թեթևութիւն և հանգիստ լինի, գիտենայ որ ջերմն 'ի յերրորդ և 'ի կատարեալ ժամանակին հասաւ։

Նոյն այլ զայս գիտենալ պարտ է՝ որ ժամանակացն չափն ըստ հիւանդութեան յերկարութեան և ըստ կար-

ձուլթէն հետեւեն ։ Իսկ 'ի սուր հիւանդութեանն՝ չորս ժամանակին կարճ լինին ․ զի սուր հիւանդութեանն նիւթն , որ է խլտն , պարկեշտ լինի , նա տաքութիւն զօրաւոր լինի ․ վասն այդ պատճառանացդ շուտ եփի նիւթն , եւ շուտ արձակի հիւանդութիւն ։ Ապա այն հիւանդութիւնքն՝ որ յերկարօրեայ լինին , բաւ նոքին եւ նոցա չորս ժամանակին յերկար քաշեն ․ զի յերկարօրեայ հիւանդութեացն նիւթն հաստ լինի , եւ տաքութիւնն վատուժ ․ վասն այդ պատճառանացդ յուշ եփի , եւ յերկար քաշէ ։ Նոյնպէս եւ վասն այդ պատճառանացդ լինի՝ որ հիւանդութիւնքն 'ի յամարան աւուրքն շուտ արձակին , եւ չքաշեն յերկար ․ զի օդոյն տաքութիւն ընութեան օգնական լինի , եփէ եւ պարկեշտացնէ զնիւթն զայն՝ որ զտաքութիւն արար ։ Իսկ սուր հիւանդութիւնքն երբ ձմեռան աւուրքն ուրդին , յերկար քաշեն , եւ չարձակի շուտ ․ զի օդոյն հովութիւն զտաքութեան գլուխքն հով պահէ ․ վասն այդ պատճառանացդ իւր եփելն յերկար քաշէ , եւ հիւանդութիւնն յուշ արձակի ։ Ալ վկայէ այսոր չորեքօրեայ ջերմն , որ է տետարտէոսն , որ 'ի յամառան եղանակն՝ եւ 'ի տաք աւուրքն իւր նոպայքն ժամանակն կարճ լինի ․ իսկ 'ի յաշնան եղանակն՝ եւ 'ի ձմեռան , եւ 'ի հով աւուրքն , իւր նոպային ժամանակն այլ յերկար քաշէ ։

Ալ ասէ Գաղիանոս , եթէ նշաննին՝ որ ցուցանեն զսուր հիւանդութիւնքն եւ զերկարօրեայ , երկու իրք են ․ մէկն այն է՝ որ բժիշկն յառաջագէտ լինի զայն իրուէն՝ որ հիւանդութիւն եւ ողջնութիւն իւրօքն լինի ․ եւ մէկայլն այն է , որ գիտենայ զհիւանդին զկերակրոյն զչափն ։ Իսկ այն իրուէն եւ պատճառն՝ որ ողջնութիւն իւրօքն լինի՝ 'ի սուր հիւանդութիւնքն բուրհանն է ․ իսկ 'ի յայն հիւանդութիւնքն՝ որ յերկարօրեայ լինի , իւր ողջնութէ պատճառն եփիլն է խլտին , եւ արձակիլն ։ Ապա պարտ է՝ բժիշկն յառաջագէտ լինի եւ ասէ 'ի սուր հիւանդութիւնքն զկենացն , յորժամ բուրհանն ազէկ լինի ․ նոյնպէս եւ զմահուն ասէ , յորժամ բուրհանն գէշ լինի ։ Ապա 'ի յայն հիւանդութիւնքն՝ որ յերկարօրեայ են , ասէ զհիւանդին զերծանիլն եւ զառողջիլն , յորժամ եփի

հիւանդութիւնն, և արձակիլ առնու: Նոյնպէս և զմահուն իմաց առնէ, յորժամ չեփի հիւանդութիւնն և չարձակի, մանաւանդ երբ հիւանդին ուժն պակասի:

Ապա այն պատճառն՝ որ հիւանդին կերակրոյն չափքն լինի՝ այս է, որ սուր հիւանդութիւնն շուտ հասանի յերրորդ ժամանակն և 'ի կատարելութեան սահմանն. յայնժամ հիւանդին բնութիւն կարիք ունի 'ի պարկեշտ կերակուր, որ ուժ առնու և զհիւանդութիւնն եփէ և արձակէ: Ապա թէ կերակուրն հաստ լինի, նա բնութիւնն զբաղի 'ի հաստ կերակրոյն եփելն, և խափանի 'ի հիւանդութեան 'ի յեփելոյն դադարէ և 'ի զատ մնայ: Ապա այն հիւանդութիւքն՝ որ յերկարօրեայ լինին, կարիք ունի հիւանդին բնութիւն 'ի հաստ կերակուրն, որ 'ի յուժոյն չանկանի և տկարանայ. զի հաստ կերակուրն աւելի ուժ տայ քան զպարկեշտ կերակուրն. և վասն յերկարօրեայ հիւանդութեան և յերկար քաշելոյն, կարիք ունի հիւանդն ուժ առնուլն. զի ուժովն կարէ զհիւանդութիւնն 'ի գլուխ տանել՝ մինչև 'ի կատարելութեան ժամանակն և 'ի սահմանն: Ապա երբ այդ հիւանդութիւնդ 'ի կատարեալ ժամանակն և 'ի սահմանն հասանի, պարտ է որ բըժիշկն զկերակուրն պարկեշտ առնէ, որ բնութիւնն զհիւանդութիւնն շուտ եփէ, և արձակի 'ի մարմնոյն:

Այլ պարտ է գիտենալ՝ որ սուր հիւանդութիւքն այլ և այլ աստիճանք ունին. կան որ խիստ 'ի լման սուր լինին, և իւրեանց բուրհանն յերրորդ և 'ի չորրորդ օրն լինին. և այլ կան որ բուրհանն յեւթն օրն լինի. և այլ կայ որ յեւթնևտասան օրն լինի. և այլ կայ որ 'ի քսանևմի օրն լինի: Ապա հետ քսան աւուրն տկարանայ բնութիւնն, և չկարէ յամէն երեք օր ու կէս բուրհան առնել, այլ յամէն երեք օր ու կէս յիմաց առնէ. զի 'ի քսան օրէն 'ի վեր յամէն եւթն օր լինի բուրհանն մինչև 'ի քառասուն օրն: Այլ ամ հիւանդութիւն՝ որ ըստ քառասուն օրն անցանի, չանուանեն զայն սուր հիւանդութիւնք, այլ յերկարօրեայ անուանեն. և ամ հիւանդութիւն՝ որ յերկարօրեայ լինին, նոյնպէս և զիւր կատարելութեան սահմանն յերկար աւուրս քարշէ: Ապա այն ցեղ հիւան-

դութեանցն արձակիլն և ողջանալն բուրհանով չլինի, այլ եփելով լինի. զի հիւանդարար խլտն եփի, և սակաւ սակաւ արձակի 'ի մարմնոյն:

Ապա թէ այն ցեղ հիւանդութիւքն' որ յերկարօրեայ լինին, չեփին և չարձակին, և հիւանդին զօրութիւն պակասի, այն մահու նշան է, և զմահն ցուցանէ: Ապա զայն նշաններն' որ ցուցանեն զսուր հիւանդութիւքն և զերկարօրեայ, կարէ գիտենալ բժիշկն 'ի հիւանդութենէ 'ի ցեղէն, և 'ի հիւանդին շարժելոյն, և 'ի մաձասին երակէն, և 'ի կարուրայէն, և 'ի հիւանդին մարմնոյն և 'ի կերպէն. զայս զամենեսս կարէ ճանաչել բժիշկն և իմանալ զսուր հիւանդութիւն և զերկարօրեայ: Իսկ գիտենալն 'ի հիւանդութեանցն 'ի ցեղէն այն է' որ գիտենայ զսուր և զայրեցող ջերմերն, զերդ գշխատակ որ ընդ մէջ ջերմն, որ է տախտեան. և զայլ ամ այրեցող ջերմերն, որ 'ի մաղձին և յարեանն բորբոսելոյն լինի: Նոյնպէս և այսոցին' որ ցներքսէ մարմնոյն լինին, զերդ սարսամն, և կողացաւուին, և հեքն, որ պատճառնին 'ի թոքէն լինի, որ է ջղերոյն յերար գալն, և թաշանիշն, և պքթայն, և ամ սուր ջերմն' որ 'ի պալղամէն լինի, որ է ափխմեւքիւսան, և այն ջերմն' որ խմտախտէոս սան. զայս զամ, և զիւրեանց նմանիքն' սուր անուանեն. Թէպէտ և կայ 'ի նոցանէ' որ 'ի պալղամէ և 'ի սաւտայէ լինին: Իսկ բժշկապետքն զայս սուր անուանեն, վասն զի իւրեանց արձակիլն բուրհանով լինին. և զայս զամ ցեղ հիւանդութիւն' որ բուրհան չունին, յերկարօրեայ անուանեն:

Իսկ գիտենալն 'ի հիւանդին շարժելոյն այն է, յորժամ տեսանեն զհիւանդն' որ շուտ շուտ շարժի, և տաքութիւն ուժով լինի, և ցաւն խիստ լինի, նայդ ամէնտ ցուցանեն' որ հիւանդութիւն սուր լինի: Ապա թէ այդ ամ 'ի հակառակն լինի, որ հիւանդին շարժելն յոյլ լինի և յուշ, և տաքութիւնն պակաս, և ցաւերն կակուղ լինի և պակաս, և ամ նշաննիդ ցուցանեն' որ հիւանդութիւնն յերկարօրեայ լինի:

Ապա այն նշանն' զոր մաձասին երակն ցուցանէ, այն է' որ մաձասին երակն մեծ լինի և շոյտ, և իւր աթալն յար լինի և 'ի կից. իսկ այս ամ նշաններս ցու-

ցանեն՝ որ հիւանդութիւն սուր լինի ։ Ապա թէ մաճասին երակն փոքր լինի, և իւր շարժումն յուշ լինի և յոյլ, 'ի յար և 'ի կից լինի, այս ամ նշաննիս ցուցանեն՝ որ հիւանդութիւն յերկարօրեայ լինի ։

Իսկ այն նշաննին՝ որ հիւանդին մարմինն և կերպն ցուցանէ՝ այն է, որ հիւանդն ընդ յառաջքն նիհարանայ, և միսքն պակասին, և երեսացն գոյնն փոխի 'ի կարմիրն կամ 'ի դեղինն. այս ամ նշաննիս ցուցանեն՝ որ հիւանդութիւն սուր լինի ։ Ապա թէ հիւանդին մարմինն ընդ յառաջքն չնիհարանայ, և իւր միսքն չպակասին, և երեսաց գոյնն չփոխի, այս ամ նշաննիս ցուցանեն՝ որ հիւանդութիւն յերկարօրեայ լինի ։ Ապա թէ այն նշաննին՝ որ զսուրն ցուցանեն, և այն՝ որ զերկարօրեան, միջավայր ուրդին, և 'ի միջասահմանն լինին, նա ցուցանեն զհիւանդութիւն՝ որ ոչ սուր լինի և ոչ յերկարօրեայ, այլ միջավայր լինի, և զմիջասահմանն ունի ընդ սուրն և ընդ յերկարօրեան ։ Ապա պարտ է բժշկին՝ որ զայս նշաննիս զամէնս աղէկ իմանայ, որ չխալտի 'ի հիւանդին 'ի սառածումն և 'ի բժշկելն, և զհիւանդն վնասէ, և ինքն լինի պատճառ մահուան նորա, որպէս ասացին իմաստասէրքն ։

## ՍԱՍ ԵՐԷ ԺԱՄՆ ԳԻՏՕՔ ՃՈՐՆԻ ԲԺԻՇԿՆ ԶՀԻՒԱՆԴՆ ՏԱԾԵԼ Ս ԲԺՇԿԵԼ ։

Պարտ է բժշկին, որ զհիւանդն ծառայէ, որ ըղդէմն 'ի տասն իրք այրնէ. առաջինն դէմն, որ յուղէ զպատճառն ցաւոյն և զհիւանդութեէն. և երկրորդն՝ զպատահմունքն, որ զկնի հիւանդութեցն լինի. երրորդն՝ զխառնուածք մարմնոյն. չորրորդ՝ զկերպ մարմնոյն. հինգերորդ՝ զաւուրքն զհիւանդին. վեցերորդն՝ օդոյն զփոփոխութիւն և զերկիրն. եօթներորդ՝ զեղանակն 'ի չորից եղանակաց տարւոյն. ութերորդ՝ զաշխարհն իմանալ՝ ուստի հիւանդն է. իններորդ՝ զսովորութի հիւանդին. տասներորդ՝ զուժն և զօրութի հիւանդին ։

# ՆՈՒՍԽԱՅՔ

## ԶԱՆԱԶԱՆ՝ ՑԵՂ ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ ՏԵՂԵՐՈՑՆ

ՀԱՊ այարիճ՝ որ օգտէ գլխոյն և աչացն և ականջացն, և հանէ զաւելուածքն և զգիճութիւններն 'ի գլխոյն և 'ի յամ մարմնոյն : Առ. հինգ ազգ հալիլէ, սապր, ըռևանդ, կարմիր վարդ, ղարիկոն, թրպութ կէս կէս դրամ . շահմ խանզալ, սակամոնի, աֆթիմոն, հնդի աղ, քիթրէ, մուխլազզրախ, անիսոն մի մի տանկ . պալասանի փայտ, և պտուղ, ասարոն, սալիխայ, մազտաքէ, դարիսենի, սումպուլ, զաֆրան, օշինդր, հայ քար, ջհուտ քար, լաջուարդ քար, սուրինճան, պուզիտան, հասմիլ կէս կէս դանկ . լոսէ զամէնտ մանտր, և զսակամոնին խոշոր, և շաղէ սաթառճի ջրով, հապ արա :

Գաղիանոսի հապն խիստ աղէկ՝ որ իբրև զաւաջինս գործէ : Առ. սապր, սակամոնի, շահմի խանզալ, հնտի աղ, աֆտիմոն, ղարիկոն, սև հալիլէ, մազտաքէ, քիթրէ, մուխլազզրախ, անիսոն ռուպ ռուպ, լոսէ, և շաղէ հնտիպէի ջրով :

Հապտ հապ, որ կոչի ոսկի, որ հանէ զսաֆրան 'ի գլխոյն և 'ի մարմնոյն, և տանի զդեղնութիւն : Առ. սապր մի դրամ . դեղին հալիլէ կէս դրամ . կարմիր վարդ կէս դրամ . մազտաքէ, և քիթրէ, սակամոնի,

1 Յօրինակին պակասէր մակագիրս, և այս Նուսխայք միահետ կցեալ էին ընդ յառաջադրեալ բանին . զորոց գուցէ յիրաւի կասկածեսցէ ոք լինել հաւաքումն այլոյ ուրումն յետնագունի, և ոչ յոյժ հմտացելոյ 'ի բժշկականին, ըստ մատենագրիս ճարտարութեն :

զաֆրան, մուխլազրախ երկու երկու տանկ. լոսէ, և շաղւէ հնտխպէի ջրով:

Հապ գլխացաւի, երբ 'ի հովէ լինի, և աւուրք ցաւէ. և աչաց և ականջաց: Առ սապր մի դրամ. շահմ խանդալ ռուպ մի. սակամոնի, մռքլազրախ, ղարիղօն մի մի տանկ. լոսէ, և շաղւէ լռազխանի ջրով, հապ արա:

Այլ գլխացաւի, թէ 'ի հովէ լինի, թէ 'ի շողոյ: Առ սապր երկու դրամ. օշինդր մի դրամ. մազտաքէ, և կարմիր վարդ կէս կէս դրամ. լոսէ, և շաղւէ լռազխանի ջրով:

Որոյ բնութիւն հովէ, և ցաւէ ոսկերքն և գլուխն, ղուրս օգտակար է և գոված: Առ սպիտակ թրպութ լոսած մի դրամ. սուրինճան, և պուզխտան, մանիշակ, դեղին հալիլէ, ղարիղօն, աֆթիմոն կէս կէս դրամ. փեննատակ, զանճապիլ, անիսոն, խրընդատ, սակամոնի, հապնիլ, խարասանի՝ մի մի տանկ. լոսէ, և շաղւէ քարաւուզի ջրով, հապ արա կամ ղուրս:

Սուրինճանին հապն՝ որ օգտէ ոսկրցաւի խիստ աղէկ: Առ սուրինճան, պուզխտան, խրընդատ, մուղլազրախ, փեննատակ, սև հալիլէ, սապր, թրպութ կէս կէս դրամ. սակամոնի տանկ մի, և արա որպէս զայդ:

Հապ՝ որ հալէ զմեծ և զպինդ փայծաղն: Առ սապր և քապրենոյ տակի կեղև չորցուցած կէս կէս դրամ. սև պղպեղ, ասարօն, զռևանդ յերկայն, որ է սղընկան տակն, երիտա՝ որ է մրտենի տակն, սումպուլ տանկ տանկ. ու մուխլ տանկ մին. և տուր պղըլկատուճնի սրքնճպինով:

Լեղին ղուրսն, որ օգտէ լերդին, և կալուածոցն, և փայծղան, և յայտոցէն՝ որ լինի 'ի ստամոքսերանն, և 'ի լերդն 'ի հին տաքութենէն, 'ի յարծուեցն՝ որ կու չի մնի արծուիք, և յորդէջրհեղն: Առ լաք լնտրած,

և տորուն , և անիսոն , քարաւուզի հունդ , օշինդր , լեղի նուշ կեղևած , լեղի խուստ , չոր ռասան , դարիճենի , ըռևանդ յերկայն , ղաւեթի քամուքս , և կարմիր տակերն , աղա և մաղէ . և շաղւէ տաք ջրով , և արա ճճխի մթխալ մթխալ . առնելոյն չափն ճճու մի , տաք ջրով :

Ղաֆէթի ղաւրման , որ օգտէ 'ի հին տաքութէն , և 'ի յարականնէն , 'ի լերդին ցաւոյն , և 'ի կալուածոյն : Առ ղաֆէթի քամուքս վեց դրամ . կարմիր վարդ , սումպուլ երկու երկու . ըսխթար , թառանկոյն վեց դրամ . տապաշիր երեք դրամ . զթառանկոյն հալէ տաք ջրով , և զայլ դեղերս աղա և մաղէ , և 'ի ներս արկ և շաղւէ , և հապեր արա , և 'ի շուքն չորացո , և ած 'ի քո պէտք :

Աթխայ՝ որ տան ուժով մարդկաց , զի մեծ է և ուժով : Առ թառանկոյն տասն դրամ . խիարշամպէի միջ , թմրհնդի հանած 'ի կուտէն տասն տասն դրամ . սիրակ նուշ հինգ դրամ . զայսոնք դիր 'ի պտուկի մի , և ած 'ի վերայ ջուր՝ որ ծածկի , և դիր որ թրջի . և առ յունապ քսան հատ . սալորի չիր քսան հատ . սպստան երեսուն հատ . սպիտակ չամիչ քսան դրամ . պապայիճ քերած և ձարձատ պլրած երեք դրամ . աֆթիմոն երկու դրամ . հնդի աղ կէս դրամ . մանուշակ , և նոնոֆար , վարդ , ըռաղխանէ , անիսոն , հացհամեմի հունդ երկու երկու դրամ . զամենս դիր 'ի լոտիկ մի , և ած 'ի վերայ հալպայ լիտր մի ջուր , և եփէ մինչուր խրեքեն մեկն մնայ , և առ 'ի յետ՝ որ յեփչի . աճուէ և քամէ 'ի սուրբ քթեթ , այս ջրովս աղէկ աճուէ զթրջած դեղերս , քամէ ընդ ձառեմաղ 'ի վայր . ապա ձգէ 'ի ներքն աղցած թրպուլթ , և խարիկոն կէս կէս դրամ . սակամոնի , մազտաքէ , ըռևանդ , սէնի , մուխլազրախ տանկ տանկ , և ձգէ 'ի ներքն շաքար՝ որ քաղցրանայ , և լից 'ի վերայ երկու գդալ նշի ձէթ , և առ յանուն Յսի Քսի :

Աթխայ փոքր , որ տան վատուժ մարդոյ : Առ թառանկոյն , խիարշամպէի միջ տասն տասն դրամ . և

դիր 'ի Թրջոց. ա՛ռ պասպայիճ ծարծատ այրած տասն դրամ. սենեմաքի հինգ դրամ. ծարխատ, և Թորթ հինգ հինգ դրամ. սպիտակ չամիչ կալԹփած տասն դրամ. մանիշակ, նոնոֆար, կարմիր վարդ, բռա-գիանէ, հացհամեմի հունդ երկու երկու դրամ. յու-նապ հնգետասան հատ. սպոտան քսան հատ. սալոր-չիր քսան հատ. դիր զայսոնք 'ի կճիճ մի, և ա՛ծ 'ի վերայ երեք կարգ և կԹխայ ջուր, եփէ մինչոր մէկն մնայ, և ա՛ռ 'ի վար՝ որ յեփչի. աճռէ և քամէ ընդ սուրբ քԹեԹ 'ի վայր, և այդ ջրովդ աճռէ զԹրջոցն աղէկ, քամէ ընդ ծարէմաղի, լի՛ց 'ի վերայ երկու նուկի նշի ձէԹ, տուր յանուն Ա՛ծի :

Ա՛յլ ճամ՝ որ դեղ կամենայ առնուլ, պարտ է յայն ժամ առնուլ՝ որ չլինի աւելի շող կամ հով, յաշուն և 'ի գարուն. յառաջ պատրաստ կենայ. երեք օր խմէ մուխլ զայս : Ա՛ռ յունապ, սալորչիր տասն տասն հատ. սպիտակ չամիչ տասն դրամ. քերած պասպայիճ և ծարծատ արած երկու դրամ. բռապլինէ, հաց-համեմի հունդ երկու երկու դրամ. տուղտ, Թորթ, ծարխատ, մանիշակ, նոնոֆար, կարմիր վարդ մի մի դրամ. եփէ ու քամէ 'ի վերայ կոշկոռ մի շաքարի. և ա՛ծ 'ի վերայ դգալ մի նշի ձէԹ, և խմէ : Եւ ըղ-մարմինդ ջեր պահէ այդ երեք օրտ. և 'ի յամէն ա-հոկ կերակրոց պատրաստ կալ, 'ի ԹԹուէ, 'ի կծուէ և յաղի իրաց. հաւ եփած կամ խորված, չչկի միս, կամ գառան, կամ ուլոյ, զօմին և բանջար, և անա-րատ գինի. բայց պարկեշտ ուտել և խմել, և ոչ աւե-լի : Որ զդեղն առնուլ կամենայ՝ որովայնան սպրկիկ պիտի, որ հովուԹՆ չլինի յորովայնն, ո՛չ խացաուկ, ո՛չ մաղձշարժ, զի մահուչափ վնասէ՝ Թէ յառաջ յորովայնն արատ կենայ. և դեղըն հետ 'ի հովէ պա-րատ կենայ. և Թէ ժամն ջերմն լինի, զմարմինն ա-ւելի չպիտի խողհրել. և երեք օր զայդ պատրաստ կե-րակուրդ կեր հետ դեղըն, զատ 'ի բանջրեն. և ջեր կենալ :

Եւ Թէ դեղն փակուց այրնէ, նշանն այն է՝ որ փորն չկապի, և դեղըն համն 'ի ստամոքացն գայ. պարտ է մինչև սրբի դեղն 'ի ստամոքացն՝ 'ի կից կից

տաք ջուր խմել և շրջել՝ որ փակոյցն 'ի վեր գայ, և հետ շող ձուլապ խմէ, և պահ մի կենայ՝ որ փակոյցն 'ի վայր եղնէ ։ Իսկ թէ խստանակ ունենայ, առ հինգ դրամ մանիշակ, եռցո, և քամէ 'ի վերայ տասն դրամ շաքարի. և թէ լուծութի̃ ունենայ հետ խոցտուկին, դդալ մի պզրղատուն և ըռահնի հունդ բովհրէ, և հետ մանիշակ ձուլապին տուր որ խմէ ։ Իսկ թէ կապի կարիք չկայ, մանիշակ ձուլապդ մէն տուր, որ խմէ. և զուտքն եփած մախրըջուրն դնել՝ կապէ ։ Հաւկթի դեղնուցն, և 'ի ներքը սակաւ մի կիր, որ զերդ փաղաղ լինի, 'ի վերայ փորը փորոյն կապէ. և թէ հով դիպի, կամ խոցտուկ շարժի, կամ կրկնակի լուծումն լինի, զայդ կապերտ արա ։ Այլ յառաջ ջրէ պատրաստ կենայ պարտ է՝ որ չմնկի յայտ, զի մահօրն 'ի մօտ է ։

Շարապ և մաղձդեղ, որ քաղէ զսաֆրան և զդեղնութիւն ։ Առ երեք դրամ դարխանի, ջնջլխէ և ձգէ 'ի նուկրայն. և երեք դրամ անիսոն. սումպուլ, մազտաքէ երեք երեք դրամ. մուխլազրախ¹ երեք դրամ. աղա 'ի հաւանն ընդ իրար, և ձգէ 'ի նուկրայն, լից 'ի վերայ երկու հարիւր դրամ ջուր, և եփէ որ երեքէն մէկն մնայ. առ 'ի յետ և դիր 'ի զատ, և քամէ, և խառնէ յայդ ջուրտ հարիւր չորս դրամ սերկեւիլի ջուր. և ձգէ 'ի ներքը երկու հարիւր դրամ շաքար, և եփէ՝ զերդ որ այլ շարապի ռասմ է, մինչ մնայ ամէնտ երկու հարիւր դրամ. և ապա ձգէ 'ի ներքը քսան դրամ վարդէջուր, և առ 'ի զատ՝ որ հովանայ. և ձգէ 'ի ներքը տասն դրամ սակամոնի. ռանեւլոյն տասն դրամ ։

Նշանք լուծման մաձունի այս է, որ օգտէ կոլընջի, և ամ̃ ցեղ մաղձոյ ։ Առ սերկեւիլ կամ խնձոր, կտրէ և եփէ գինւով. ծեծէ՝ որ ընդ մաղն 'ի վայր եղնէ, դրամանկշեռ երեք հարիւր. առ մեղր և եփէ, և զուփըն առ վեցհարիւր դրամանկշիռ. առ թըրպութ, հալիլէ քապուլի և դեղլին, և պալիլաձ 'ի

1 Յօրինակին մուխլա՛խոր ։

կոճէն համած, սև հալիլայ, շիրամլաճ, մանիշակ, յամէն մէկէ քսան դրամ. աֆթիմոն տասն դրամ. անիսոն, մազտաքէ, զանճապիլ, քիթրէ հինգ հինգ դրամ:

Այս ուրիշ է: Առ սումպուլ, խարանֆուլ մի մի դրամ. դարաֆուլ, որ է դարապղպեղ, երեք դրամ ըռաւպ. ալոուս հինգ դրամ. պասպայիճ քսան դրամ. սուրինճան տասն դրամ. պուզիտան տասն դրամ. զարիղօն քսան դրամ. փէննայ հինգ դրամ. զաֆրան մի դրամ. պղպեղ երեք դրամ. դարիսեն հինգ դրամ. աղա և մաղէ. և եփէ զմեղըն և զխնծորն ընդ իրար, մինչև 'ի թանձրութին դառնայ, և առ դիր 'ի հովն. և նշի ձիթով մշխէ զայս լոսած դեղերս, և 'ի ներս լից, և խառնէ ինչոր հովնայ, որ չկուտկտի դեղերս. և տուր ամէն կարեց վեց դրամէն մինչև 'ի տասն՝ ըստ ուժոյն. ապա այլ աւելի մի տար:

Սան մաճունի՝ որ լուծումն առնէ, և հանէ ըղքամիս յաղեցն, և սրբէ զստամոքսն 'ի պաղղամէ, և օգտէ կոլընջի, և հալածէ զթուխմայն, և զբորբոսն՝ որ լինի 'ի ստամոքացն 'ի բերանն, և 'ի պաղղամէ սըրբէ: Առ ամրաւ ընտրած վաթսուն դրամ. դիր 'ի ամանն, և լից 'ի վերայ բարկ քացախ գինւոյ վաթսուն դրամ. և դիր օր մի և գիշեր մի 'ի թրջոց. և ձեռօքդ աճռէ, և ընդ խոշոր մաղ 'ի վայր անցո. և քանի զիր չաքր՝ սպիտակ մեղր առ 'ի յինքն խառնէ, և զանճապիլ, դարիսէն, պղպեղ երեք երեք դրամ. սատափի տերև չորս դրամ. նուշ կեղևած չորս դրամ. սակամոնի երկու դրամ և կէս, սպիտակ թրպութ՝ քերած զդըրուցի կեղևն, երկու դրամ. զայս դեղերս ծեծէ և զնուշն՝ ուրիշ ուրիշ, և յայտ մեղրտ և ամրաւդ խառնէ, և շաղէ՝ որ միաւորի, և յաման դիր. երբ 'ի պէտս անկանի ոք յայս ցաւերս, առցէ 'ի սմանէ ըստ ուժոյն, թէ պիտի լուծման՝ առնու ուժով, հինգ դրամ, և ոմանք չորս. և թէ կոլընջն ուժով լինի, դու եօթն դրամ առ. օգտէ աստուծով:

Սփուփ վասն արեան և խիստ լուծման ։ Առ. քահ-րուպար, և յաստպէ, ձուլինար, և աղբրաց արիւն, գղթոր, քաղցր նռան քիթ, սև չամչի կուտ կամ խաղողի, աղընծէ զինքս, և լեսէ խիստ մանտր. և եթէ ոք յայս ցաւերս անկանի, դու տուր զինքս թերխարով հաւկթով, կամ խնծորի շարապով, կամ հապալասի. և թէ հետ կերակրոյ կարես տալ՝ զինչ և իցէ կերակուրն, երկու կամ երեք տարպայ. թէ չօգտէ, դու այլ մի տար հիւանդին ։

